ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1959 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Տասը տարի է գոյություն ունի և հաջողությամբ զարգանում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Այդ տարիներին Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող բազմամիլիոն չին ժողովուրդը անցել է փառապանծ ուղի, իր երկիրը իմպերիալիզմի կիսագաղութից դարձնելով հզոր տերություն։*

*1949 թվականի հոկտեմբերի 1-ին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակումը ավարտուն իրադարձություն էր՝ ներքին ու արտաքին հակառևոլյուցիայի դեմ, բազմաթիվ թշնամիների՝ իմպերիալիստների, կալվածատեր-ֆեոդալների և միջազգային իմպերիալիզմի մոտ ծառայության մեջ գտնվող կոմպրադորական բուրժուազիայի դեմ չին ժողովրդի երկարատև ու համառ պայքարում։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի առաջացումը չին ժողովրդի կյանքում պատմական սահմանագիծ է, որը նշանակում է դեմոկրատական ռևոլյուցիայի ավարտում և սոցիալիստական ռևոլյուցիայի սկիզբ։ Այսպիսով, ՉԺՌ-ի ծնունդը չին ժողովրդի կյանքում հանդիսացավ նոր դարաշրջանի, երկրի ազատության ու անկախության, էկոնոմիկայի ծաղկման, ժողովրդական մասսաների բարեկեցության և կուլտուրայի աճման, սոցիալիստական հասարակարգի կառուցման դարաշրջանի սկիզբը։*

*Չինական ժողովրդական ռևոլյուցիան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շարունակությունն է, վիթխարի, հիրավի համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող իրադարձություն։*

*Չինաստանում ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ համաշխարհային սոցիալիստական լագերը դարձավ է՛լ ավելի ուժեղ և հզոր, իսկ միջազգային իմպերիալիզմը կրեց նոր, հսկայական կորուստ։ Այդ հաղթանակի ազդեցության տակ ուժեղացավ գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի թափը, արագացավ իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզման պրոցեսը։*

*Ընկեր Ն. Ս. Խրուշչովը Պեկինում, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հինգերորդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում նշելով չին ժողովրդի աչքի ընկնող նվաճումների նշանակությունը, ասել է. «Ռևոլյուցիայի հաղթանակը նոր դարաշրջան բաց արեց Չինաստանի պատմության մեջ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո չինական ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը համաշխարհային պատմության ամենաաչքի ընկնող իրադարձությունն է, որը նշանավորվեց համաշխարհային*

իմպերիալիստական ամբողջ սիստեմին հասցված նոր ուժեղագույն հարվածով»:

Ընթանալով առաջին անգամ Ռուսաստանի բանվոր դասակարգի կողմից հարթված ուղիով, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նշած ուղիով, չին ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո հասել է հիանալի հաջողությունների:

«Ժողովրդի դեմոկրատական դիկտատուրայի մասին» աշխատության մեջ ընկեր Մաո Ցզե-դունը գրել է. «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հրետանային համազարկերը մեզ հասցրին մարքսիզմ-լենինիզմը: Հոկտեմբերյան ռևոլյուցիան աշխարհի և Չինաստանի առաջադիմական տարրերին օգնեց պրոլետարական աշխարհայացքը կիրառելու երկրի բախտը որոշելու և իր սեփական պրոբլեմները վերանայելու համար: Գնալ ռուսների ճանապարհով՝ այսպիսին էր եզրակացությունը»:

Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակով Չինաստանի պատմության մեջ առաջին անգամ երկրի տերը դարձավ ինքը՝ ժողովուրդը: Երկրում հաստատված պետական և հասարակական նոր կարգը, ժողովրդական դեմոկրատիայի կարգը, պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկն է: Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կենսական հիմքը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է, բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի կողմից երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր ոլորտների ղեկավարումը: Բանվոր դասակարգի և նրա պարտիայի ղեկավարությունը, որը հիմնվում է մարքսիզմ-լենինիզմի տեսության վրա, նոր հասարակարգի կառուցման գործում չին ժողովրդի հաջողությունների կարևորագույն աղբյուրն է:

Չինաստանում բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանությունը նվաճելուց հետո կոնֆիսկացիայի ենթարկվեց օտարերկրյա կապիտալի և կոմպրադորական խոշոր բուրժուազիայի սեփականությունը, իրականացվեցին ռևոլյուցիոն ագրարային վերափոխումներ: Վերականգնելով քայքայված ժողովրդական տնտեսությունը, չին ժողովուրդը ձեռնամուխ եղավ սոցիալիստական էկոնոմիկայի պլանաչափ կառուցմանը:

Չինական առաջին հնգամյակի տարիներին (1953—1957) դրվեցին երկրի սոցիալիստական ինդուստրացման սկզբնական հիմքերը: Հենց այդ ժամանակ սոցիալիստական ռևոլյուցիան Չինաստանում վճռական հաղթանակ տարավ. կեսմիլիարդանոց չին գյուղացիությունը վճռականորեն կանգնեց սոցիալիստական զարգացման ուղու վրա, իսկ մասնավոր կապիտալիստական արդյունաբերական և առևտրական ձեռնարկությունները վերափոխվեցին սոցիալիստական պետության կողմից կառավարվող պետական-մասնավոր խառն ձեռնարկությունների: Պետական և կոոպերատիվ սեփականության ձևով հանրային սոցիալիստական սեփականությունը երկրում դարձավ տիրապետող: Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակը ճանապարհ բացեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ վերելքի համար:

Դրանից անմիջապես հետո, 1957 թվականին, Չինաստանում ծավալվեց սոցիալիստական ռևոլյուցիա՝ գաղափարախոսության և քաղաքականության ճակատում, որի ընթացքում ջախջախվեցին չինական ազգային բուրժուազիայի աջ թևի ներկայացուցիչները, որոնք փորձում էին արգելք հանդիսանալ սոցիալիստական ուղիով Չինաստանի զարգացմանը:



Այսպես դրվեց Չինաստանում սոցիալիստական շինարարության տեմպերն արագացնելու հաստատուն հիմքը, որն իր արտահայտությունն է գտել 1958 թվականի մայիսին ՉԿՊ VIII համագումարի 2-րդ սեսիայի առաջ քաշած գլխավոր գծի մեջ. «Լարելով բոլոր ուժերը, ձգտելով առաջ, սոցիալիզմը կառուցել՝ ավելի շատ, ավելի արագ, ավելի լավ և ավելի խնայողաբար սկզբունքով»:

Պատասխանելով պարտիայի այդ կոչին, չին ժողովուրդը ձեռնամուխ է եղել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում մեծ թռիչքի իրականացմանը: Երկրում քաղաքական և աշխատանքային հսկայական վերելք առաջացրեց «Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության մակարդակով 15 տարում կամ նույնիսկ ավելի կարճ ժամանակամիջոցում հասնել Անգլիային» լոզունգը:

Այդ լոզունգի ծնվելն իսկ և դրա կենսագործման համար մղվող հաջող պայքարը չին ժողովրդի կյանքում և գիտակցության մեջ կատարվող արմատական փոփոխությունների վառ վկայությունն է: Ի՞նչ էր Չինաստանը մինչև ժողովրդական ռևոլյուցիան. կիսագաղութ, ագրարային երկիր, որտեղ գրեթե չկար ժամանակակից արդյունաբերություն: Այդ հետամնացությունից հարստանում էին և այդ հետամնացությունը ճգնում էին ամեն կերպ հավերժացնել իմպերիալիստները: Նրանց գաղափարախոսներն այդ հետամնացությունը նույնիսկ ներկայացնում էին որպես Չինաստանի «բնական վիճակ», որին իբր խորթ է նոր տեխնիկան, որովհետև այն որպես թե կործանում է չինական «անշարժ» քաղաքակրթությունը:

Բայց պատմության ընթացքը հերքեց իմպերիալիստների այդ շահամոլական ցանկությունները: Չին ժողովուրդը 1949 թվականից իրականացրեց այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք քարը քարի վրա չթողեցին Չինաստանը հետամնացության դատապարտված լինելու մասին իմպերիալիզմի գաղափարախոսների և քաղաքագետների չարանենգ հերյուրանքներից:

Տեղին է հիշել, որ իր ժամանակին, երբ Սովետական Միության Կոմունիստական պարտիան առաջ քաշեց «Տնտեսական տեսակետից հասնել և անցնել կապիտալիստական առաջավոր երկրներից» լոզունգը, բուրժուական Արևմուտքում այն հանդիպեց ծաղրանքի: Լրագրողները, քաղաքագետները, ամեն տեսակ «Ռուսաստանի մասնագետները» այդ լոզունգը հայտարարեցին անիրագործելի: Կյանքը ծիծաղեց նրանց վրա: Պատմական կարճ ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ը դարձավ ինդուստրիալ հզոր տերություն և արդյունաբերական արտադրության մակարդակով գերազանցեց ինդուստրիալ տեսակետից Եվրոպայի ամենազարգացած կապիտալիստական երկրներին, իսկ այժմ հաջողությամբ լուծում է բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու խնդիրը:

Կյանքը կծիծաղի նաև բուրժուական այն «կանխատեսողների» վրա, որոնք կասկածի տակ են դնում «Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության մակարդակով 15 տարում կամ նույնիսկ ավելի կարճ ժամանակամիջոցում հասնել Անգլիային» չին ժողովրդի լոզունգի ռեալ լինելը: 1959 թվականի օգոստոսին կայացած ՉԿՊ ութերորդ գումարման VIII պլենումը նշեց, որ հնարավորություն կա այդ լոզունգը կատարել մոտավորապես 10 տարում:

Իրոք, զարգանալով սոցիալիստական ուղիով, Չինաստանն առաջ է ըն-

թանում յոթմղոնանոց քայլերով։ Միայն 1950-ից մինչև 1958 թվականն ընկած ժամանակաշրջանում ՉԺՌ-ի արդյունաբերական արտադրությունն ավելացել է մոտավորապես 10 անգամ։ 1949 թվականին երկրում արտադրվում էր ընդամենը միայն հարյուր հիսուն հազար տոննա պողպատ, իսկ 1958 թվականին ձուլվեց 8 միլիոն տոննա միայն լավորակ պողպատ։ ՉԺՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի մասին կարելի է դատել նաև ՉԿՊ Կենտկոմի VIII պլենումի որոշման մեջ բերված այս տարվա առաջին կիսամյակի ցուցանիշներով։ Այդ ժամանակաշրջանում ձուլվել է 9,5 միլիոն տոննա չուգուն, արդյունահանվել է 174 միլիոն տոննա ածուխ, բաց է թողնվել 45 հազար մետաղահատ հաստոց, այսինքն՝ արտադրանքի այդ տեսակների արտադրությունն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է ավելի քան 2 անգամ։ Ձուլվել է 5,3 միլիոն տոննա պողպատ (այստեղ չի մտնում պարզ եղանակով ձուլված պողպատը), որը անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ 66 տոկոսով ավելի է։ Արտադրվել է 4,147 մլն հակ բամբակե մանվածք և 780 հազար տոննա շաքար, այսինքն՝ արտադրանքի այդ երկու տեսակների թողարկումն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի դիմաց աճել է ավելի քան 40 տոկոսով։ Արդյունաբերության արտադրանքի համախառն ծավալը անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ մեծացել է 65 տոկոսով։

Հին Չինաստանում փաստորեն չկար մեքենաշինություն, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերությունն արտադրում է ժամանակակից հաստոցների բազմաթիվ տեսակներ, լեռնային և մետաղագործական սարքավորում, գեներատորներ, շոգեկաթսաներ, ավտոմեքենաներ, ռեակտիվ ինքնաթիռներ, ծովային խոշոր նավեր։ Սոցիալիստական վերափոխումները գյուղում և գյուղացիության անձնազոհ աշխատանքը թույլ են տալիս հասնելու գյուղատնտեսական արտադրության անընդհատ աճման։

Ռևոլյուցիայի հաղթանակով Չինաստանի բանվորներն ու գյուղացիները նոր եռանդ ստացան, ակտիվորեն ներգրավվելով սոցիալիստական շինարարության մեջ։ Միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ, որոնք դեռ ոչ վաղ անցյալում անգրագետ էին, հնարավորություն ստացան մտնելու կուլտուրայի հարստություններին, աշխատավորների երեխաները լցրեցին ամեն տեսակ դասընթացների, դպրոցների, բուհերի լսարանները։ Արմատախիլ են լինում տասնյակ միլիոնավոր մարդկանց համար դարերով չարիք հանդիսացող հիվանդությունները։ Ծաղկում է ժողովրդական արվեստը։

Սոցիալիզմի կառուցումը ոչ վաղուց այդքան հետամնաց երկրում, ինչպիսին անցյալում Չինաստանն էր, բնականաբար, կապված է դժվարությունների հետ։ Բայց այդ դժվարությունները հաջողությամբ հաղթահարվում են։ Չին ժողովրդի գլուխ կանգնած է մարքսիստական-լենինյան տեսությամբ զինված Կոմունիստական պարտիան։ Կոմպարտիայի կողմից ղեկավարվող չին ժողովուրդն ամենախոր հավատով է տոգորված սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ։

Կապիտալիզմի պաշտպանները չինական էկոնոմիկայի վերելքի մեջ սպառնալիք են տեսնում իրենց համար, երբ գրում են «արդյունաբերության հսկա կարմիր դրակոնի» մասին, որը «անզսպելիորեն սլանում է առաջ, վեր բարձրանալով երկինք»։ Անգլիական ժուռնալիստ Ռոբերտ Հիլլենը «600 միլիոն չինացիներ» գրքում ահազանգում է այն բանի առթիվ, որ «մարքսիստական բուլդոզերը անցել է հնադարյան Չինաստանով»։



Ըստ էության, իմպերիալիզմի ջատագովների ներկայիս խզբզոցներն իրենցից ներկայացնում են «դեղին վտանգի» վերաբերյալ հին զրպարտանքի նոր վարիանտը, զրպարտանք, որը տարածվում էր Չինաստանի բաժանման և հարյուր միլիոնավոր չինացիների անամոթ թալանի իմպերիալիստական քաղաքականությունը ծածկելու համար։ Իսկապես, ժողովրդական Չինաստանի տնտեսական արագ զարգացման և ամբողջ մարդկության գրեթե մեկ քառորդի կյանքի բարելավման շնորհիվ ո՞վ վնաս կրեց։ Ո՛չ թե աշխատասեր և տաղանդավոր չին ժողովուրդը, այլ մոնոպոլիստների և կոմպրադորների մի խումբ, որը մինչև չինական ռևոլյուցիայի հաղթանակը հարստանում էր երկրի շահագործումից և չի հրաժարվել Արևելքում իր տիրապետությունը վերականգնելու մտքից։ Բայց այն ժամանակները, երբ, չինացիների արտահայտությամբ, երկիրը «ավազի սկուտեղ» էր, որը հատիկ առ հատիկ հափշտակում էին կապիտալիստական գիշատիչները, ընդմիշտ անցել են անցյալի գիրկը։

Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը Չինաստանում խոշորագույն իրադարձություն է ո՛չ միայն չին ժողովրդի պատմության մեջ։ Իմպերիալիստական և ֆեոդալական-կոմպրադորական ճնշման վերացումը, իսկ անմիջապես դրա հետևից սոցիալիստական վերափոխությունների իրականացումը ՉԺՌ-ում հսկայական ազդեցություն են գործել և գործում են ամբողջ Արևելքի վրա։ Չին ժողովրդի ազատագրական պայքարը իմպերիալիզմի գաղութային սիստեմի կործանման պատմական պրոցեսի կարևորագույն բաղկացուցիչ մասն էր։

Իհարկե, անկախության նվաճումն ամենից առաջ այս կամ այն գաղութային երկրի բուն ժողովրդի ռևոլյուցիոն գործողությունների արդյունքն է։ Բայց միաժամանակ դա արդյունք է իմպերիալիզմի դեմ ժողովուրդների ընդհանուր պայքարի, մարդկության առաջադիմության և ազատության ուժերի օգտին աշխարհում ուժերի հարաբերակցության արմատական փոփոխման։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ տարած հաղթանակը, որի նվաճման գործում վճռական ավանդ մուծեց Սովետական Միությունը, բարենպաստ պայմաններ ստեղծեցին Չինաստանի, Կորեայի, Վիետնամի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Ցեյլոնի և մյուս երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի հաջող զարգացման համար։ Արևելքը կերպարանափոխվում է մեր աչքերի առջև։ Նա չի ցանկանում հանդուրժել օտարերկրյա ստրկացնողների ճնշումը։ Նա ամբողջովին ալեկոծվում է և փոթորկում, հիշեցնելով անզսպելի հեղեղը, որը նեղ քարե կիրճերից դուրս է եկել լայն, ընդարձակ հովիտը։

Արևելքի ժողովուրդները տեսնում են, թե բարգավաճման ճանապարհին ինչպիսի վիթխարի հաջողություններ է ձեռք բերում սոցիալիզմի և կոմունիզմի գաղափարներով ոգևորված չին ժողովուրդը։ Հենց դա էլ բուրժուական գաղափարախոսներին գցում է խուճապի մեջ։ Պատահական չէ, որ նշանավոր ամերիկյան «արտաքին գործերի էքսպերտ» Վերա Դինը «Ոչ-արևմտյան աշխարհի բնույթը» գրքում գրում է. «Եթե կոմունիստական Չինաստանին հաջողվի այդ պատմական անցումն իրականացնել համեմատաբար կարճ ժա-

մանակի ընթացքում, նրա փորձը է՛լ ավելի մեծ ազդեցություն կունենա ողջ աշխարհի վրա... Ատլանտյան օրբիտից դուրս գտնվող մյուս ժողովուրդները կասեն՝ «Ինչ կարող են անել չինացիները, կկարողանանք անել նաև մենք»։

Այն հեղինակությունը, որը սովետական հնգամյակների կատարման շնորհիվ ամբողջ աշխարհի ժողովրդական մասսաների աչքում ձեռք բերեց սոցիալիստական տնտեսության պլանային վարումը, է՛լ ավելի բարձրացավ այն բանից հետո, երբ չին ժողովուրդը և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդները գերակատարեցին իրենց առաջին ժողովրդատնտեսական պլանները։

Իր ժամանակ Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ իշխանությունը նվաճելուց հետո մեր երկրի բանվոր դասակարգը իր տնտեսական քաղաքականությամբ, իր տնտեսական հաջողություններով գնալով ավելի մեծ ազդեցություն կգործի համաշխարհային պատմության ընթացքի վրա։ Համաշխարհային պատմության ընթացքի վրա հաղթանակած պրոլետարիատի գնալով աճող ազդեցության վերաբերյալ լենինյան խոր միտքը պատմական նոր պայմաններում հաստատված է ո՛չ միայն Սովետական Միության, այլև ՉԺՌ-ի և սոցիալիստական սիստեմի մյուս երկրների փորձով։ Եվ իրոք, մի՞թե այն փաստը, որ Չինաստանը կարողացավ ձեռնամուխ լինել արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության մակարդակով Անգլիային հասնելու և անցնելու խնդրի լուծմանը, այն Անգլիային, որ երկար ժամանակ համարվում էր «աշխարհի արհեստանոց»,—մի՞թե միայն այդ փաստը Արևելքի ժողովուրդների համար չի հանդիսանում հրապուրիչ փաստարկ՝ հօգուտ սոցիալիզմի։

Վ. Ի. Լենինը, բացահայտելով սոցիալիզմի զարգացման հեռանկարները որպես մի հասարակարգ, որն անխուսափելիորեն պետք է փոխարինի կապիտալիզմին, «Լավ է քիչ, բայց լավ» իր վերջին հոդվածում գրում է. «Պայքարի ելքը, վերջին հաշվով, կախված է նրանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաստանը և այլն կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը։ Իսկ բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթացքում արտասովոր արագությամբ ներգրավվում է իր ազատագրման պայքարի մեջ, այնպես որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային պայքարը։ Այդ իմաստով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման» (Երկեր, հ. 33, էջ 597)։

Լենինի գիտական կանխատեսումը հաստատված է մարդկության հետագա ամբողջ պատմությամբ։ ՍՍՌՄ-ում պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդումը, սոցիալիզմի կառուցումը և կոմունիստական շինարարության հսկայական հաջողությունները, սոցիալիստական վերափոխումները Չինաստանում, հզոր և համախմբված համաշխարհային սոցիալիստական լագերի առաջացումն ու ամրապնդումը, այն հզոր հարվածները, որ իմպերիալիզմին հասցրել և շարունակում է հասցնել Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, այս ամենը սոցիալիզմի գործն ամբողջ աշխարհում դարձրել է անպարտելի։

Դեպի սոցիալիզմ մարդկության այդ առաջընթաց զարգացման մեջ վճռ-



ռական դեր է խաղում Սովետական Միության, Չինաստանի և սոցիալիստական մյուս բոլոր երկրների անխախտ բարեկամությունն ու միասնությունը։

Ընդգծելով այդ միտքը, ընկեր Ջժոու Էն-լայը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարում արտասանած ճառում ասել է. «Մարքսիզմ-լենինիզմը սերտորեն ի մի է համախմբում մեր երկու երկրները և սոցիալիստական բոլոր պետությունները։ Մեր երկու երկրների ժողովուրդներն ամենամոտիկ զինակիցներ են, որոնք անցել են երկարատև փորձությունների միջով։ Մեր ճակատագիրն ընդհանուր է, մեր շահերը միասնական են»։

Չին ժողովուրդը գիտե, որ նա ազատված է շատ դժվարություններ հաղթահարելու անհրաժեշտությունից, որովհետև նա հնարավորություն ունի դեպի սոցիալիզմ գնալ այն ուղիով, որը պատմության մեջ առաջին անգամ բաց է արել սովետական ժողովուրդը։ Այդ պատճառով էլ Չինաստանում այդքան մասսայական է «Սովորե՛լ Սովետական Միությունից» լոզունգը։ Չին ժողովուրդը Սովետական Միությունից ստանում է անշահախնդիր նյութական օգնություն։ Մեր երկիրը ժողովրդական Չինաստանին օգնում է կառուցել հարյուրավոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Սովետական գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվները, եղբայրական Չինաստանի համար կատարելով պատվերներ, գիտակցում են, որ դրանով նրանք ամրապնդում են սոցիալիզմի և կոմունիզմի ընդհանուր գործը։ Եղբայրական համերաշխության զգացումը առաջ է տանում սովետական այն մասնագետների աշխատանքը, որոնց մեր Հայրենիքը տվել է պատասխանատու և պատվավոր առաջադրանք՝ Չինաստանի կառույցներում չին բարեկամներին հաղորդել ինդուստրիայի, գիտության, տեխնիկայի բնագավառում ՍՍՌՄ-ի կուտակած փորձը։

«Սովետական Միությունը,— ՉԿՊ VIII համագումարում ասել է Լյու Շաո-ցին,— հսկայական օգնություն է ցույց տվել մեր երկրում սոցիալիստական շինարարության գործին, այդ ուղղությամբ մեծ օգնություն են ցույց տվել նաև Եվրոպայի ու Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Չին ժողովուրդը երբեք չի մոռանա եղբայրական երկրների այդ ընկերական օգնությունը»։

Սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցության, իրար անշահախնդիր կերպով աջակցելու, փոխըմբռնման և իրավահավասարության հարաբերությունները մարդկության պատմության մեջ նշանավորում են միջազգային հարաբերությունների նոր տիպ։ Այդ բնույթ հնարավոր չէ անհաշտելի հակասություններով բզկտվող կապիտալիզմի պայմաններում։ Այն առաջացել և զարգանում է միայն սոցիալիզմի աշխարհում։

Սոցիալիզմի կառուցման գործում օգնելով եղբայրական չին ժողովրդին ՍՍՌՄ-ի, ինչպես նաև սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների աշխատավորները ղեկավարվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ սկզբունքներով, նպատակների միասնության, խաղաղության ճակատագրի և մարդկության առաջադիմության համար համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների անխորտակելի միասնության նշանակության գիտակցումով։

Սովետական Միությունը և ժողովրդական Չինաստանը, 1950 թվականի փետրվարին կնքելով բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության

պայմանագիր, իմպերիալիստական ռազմական ավանտյուրաների սիրահարների ճանապարհին ստեղծեցին հզոր արգելապատ։ Հանրահայտ է, թե ինչպիսի նշանակություն ունեն և ունի Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կողմից խաղաղության գործի, Կորեայի, Վիետնամի, ինչպես նաև Կամբոջայի, Լաոսի, արաբական և այլ երկրների ազգային շահերի կայուն պաշտպանությունը։

Սոցիալիստական երկրների ժողովուրդների միաձույլ միասնությունը կատաղեցնում է իմպերիալիստներին, որոնք իրենց ագրեսիվ պլանների իրականացման գլխավոր խոչընդոտը տեսնում են դրա մեջ։ Իմպերիալիստներն ամեն կերպ ձգտում են քայքայել սովետա-չինական բարեկամությունը։ Բայց այդ ճիգերն ապարդյուն են։

ՍՄԿՊ XXI համագումարի զեկուցման մեջ ընկեր Խրուշչովն ասել է.

«Չինաստանի Կոմունիստական պարտիան հաստատ կանգնած է դասակարգային, մարքս-լենինյան դիրքերում։ Նա պայքար է մղում իմպերիալիստների, շահագործողների դեմ, պայքար՝ սոցիալիստական սկզբունքներով կյանքը վերակառուցելու համար, նա պահպանում է միջազգային պրոլետարական համերաշխության սկզբունքը, ղեկավարվում մարքս-լենինյան տեսությամբ»։

ՍՍՌՄ-ի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և սոցիալիստական մյուս երկրների փորձը ակնառու կերպով հաստատում է մարքսիստական-լենինյան այն դրույթի ճշտությունը, որ սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության պրոցեսները հիմնվում են այն գլխավոր օրինաչափությունների վրա, որոնք հատուկ են սոցիալիզմի ուղու վրա կանգնած բոլոր երկրներին։

Չին ժողովրդի հաջողությունների վճռական պայմանը Չինաստանի Կոմունիստական պարտիայի մարքսիստական-լենինյան ճիշտ ղեկավարումն է։ Որպես բանվոր դասակարգի մարտական պարտիա, նա իր շարքերն է ընդունել Չինաստանի լավագույն որդիներին ու դուստրերին, կայուն, անվեհեր, կամքի տեր մարդկանց, սոցիալիզմի համար պայքարող անձնվեր մարտիկների։ Աշխատավոր մասսաների ազատության ու երջանկության գործին իրենց նվիրվածությունը չինական կոմունիստներն ապացուցել են ռևոլյուցիայի բազմաթիվ թշնամիների դեմ բազմամյա ծանր զինված պայքարում։ Այդ պայքարում պարտիան ամրապնդվեց, առաջ քաշեց իր փորձված ղեկավար կորիզը ընկեր Մաո Ցզե-դունի գլխավորությամբ, ձեռք բերեց ժողովրդական մասսաներին ղեկավարելու թանկարժեք փորձ։

Չինական կոմունիստները հաստատուն կերպով հետևում են մարքսիզմ-լենինիզմի ընդհանուր ճշմարտությանը, վճռականորեն պայքարում են ռևիզիոնիզմի և դոգմատիզմի դեմ՝ մարքսիստական-լենինյան ուսմունքի անաղարտության համար։ Նրանք Չինաստանի կոնկրետ պայմաններում ստեղծագործաբար կիրառում են մարքսիզմ-լենինիզմը, իրենց ավանդը մուծելով գիտական կոմունիզմի գանձարանը, սոցիալիստական շինարարության պրակտիկայում։

Հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, սերտ կապը աշխատավորների հետ՝ ահա թե ինչն է հնարավորություն տալիս կոմունիստներին՝ հաջողությամբ լուծելու հասարակական զարգացման ընթացքի կողմից առաջադրված խնդիրները։



Ներկայումս, ինչպես սահմանեց ՉԿՊ Կենտկոմի VIII պլենումը, Չինաստանի Կոմունիստական պարտիայի և ժողովուրդների կենտրոնական խնդիրն է՝ խորությամբ ծավալել արտադրությունն ամեն կերպ ավելացնելու և խնայողության ռեժիմը խիստ պահպանելու համար մասսայական բուռն շարժումը, պայքարել արտադրական պլանը և 1959 թվականի շինարարության պլանը կատարելու ու գերակատարելու համար։

Պատմությունն ուսուցանում է, որ հասարակական կյանքում նորի, առաջավորի հաղթանակն անխուսափելի է, իսկ հինը, ռեակցիոնը դատապարտված է կործանման։ Այդ մասին է խոսում սոցիալիզմի համար պայքարի ամբողջ փորձը, սոցիալիստական շինարարության պրակտիկան այն երկրներում, որոնց բնակչությունը կազմում է մոտ մեկ միլիարդ մարդ։ Բնորոշ է, որ նույնիսկ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի ղեկավարները 1949 թվականին ստիպված էին ընդունել, թե այն միլիարդավոր դոլարները, որ ամերիկյան իմպերիալիստները ծախսել էին չին ժողովրդի դեմ պատերազմ մղելու համար Չան Կայ-շիին օգնելու վրա, գոմինդանական հակառևոլյուցիան չփրկեցին ջախջախումից։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակումից հետո միջազգային և ներքին ռեակցիան հույսը դնում էր այն բանի վրա, որ կոմունիստները չեն կարողանա կառավարել Չինաստանը, չեն կարողանա ղեկավարել տնտեսությունը, գիտությունը, կուլտուրան։ Բայց այդ հուսադրումն էլ փշրվեց։ Մեծ ռևոլյուցիայից արթնացած ժողովուրդը ոտքի կանգնեց՝ ստեղծելու նոր կյանք և առաջ քաշեց տնտեսական ու կուլտուրական շինարարության բազմաթիվ տաղանդավոր կազմակերպիչների։ Չինաստանի բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները վճռականորեն պաշտպանում են պարտիայի գլխավոր գիծը՝ «լարելով բոլոր ուժերը, ձգտելով առաջ, սոցիալիզմը կառուցել՝ ավելի շատ, ավելի արագ, ավելի լավ և ավելի խնայողաբար սկզբունքով»։ Ստեղծագործական խանդավառությամբ լի չին ժողովուրդը պայքարում է նոր, մեծ հաղթանակների համար, երկրորդ հնգամյա պլանի (1958—1962) հիմնական ցուցանիշները ժամկետից շուտ՝ երկու տարում կատարելու համար։

Սոցիալիզմի բոլոր երկրների աշխատավորները, ամբողջ միջազգային կոմունիստական շարժումը օրինական հպարտության զգացումով են հետևում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողություններին։ Ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը, աշխատավորները համոզված են, որ չին մեծ ժողովուրդը, որը ՉԺՌ-ի գոյության տասը տարվա ընթացքում սոցիալիզմի կառուցման գործում ձեռք է բերել պատմական հաղթանակներ, այսուհետև ևս իր փառապանծ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կգնա հաղթանակից հաղթանակ։

Журнал „В помощь политическому самообразованию", № 9, 1959 г.

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ԵՎ ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Մ. ԱԴՈՆՑ*

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը և պարտիայի XXI համագումարը որոշել են սոցիալիստական գյուղատնտեսության գլխավոր խնդիրներն առաջիկա յոթնամյակում և մշակել են այդ խնդիրների կենսագործման կոնկրետ ուղիները:*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն անդադրում զբաղվում է պարտիայի XXI համագումարի պատմական որոշումների իրականացման հարցերով: Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը քննարկեց ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի վերաբերյալ պարտիայի XXI համագումարի որոշումների իրագործման ընթացքը և կոնկրետ ու բազմակողմանի միջոցառումներ մշակեց այդ որոշումների կատարման համար: Կենտրոնական Կոմիտեի առաջիկա պլենումը քննարկելու է մեր երկրի գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի և պարտիայի XXI համագումարի որոշումների կատարման ընթացքը: Պլենումը լսելու է ՌՍՖՍՌ Մինիստրների Սովետի, Ուկրաինայի, Ղազախստանի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Տաջիկստանի և Ադրբեջանի կոմպարտիաների կենտկոմների զեկուցումները հողագործության վերելքի և հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բամբակի և այլ տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների, խաղողի և բուսաբուծության այլ կուլտուրաների, հասարակական անասնաբուծության զարգացման և մսի, կաթի, բրդի, ձվի և անասնաբուծության այլ մթերքների արտադրության ավելացման, կոլտնտեսությունների և սովխոզների հետագա ամրապնդման, գյուղատնտեսության մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսությունների հանրային տնտեսության ամրապնդման և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման մասին:*

*Սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները և ողջ սովետական ժողովուրդը մեծ գոհունակությամբ ընդունեցին Կենտկոմի առաջիկա պլենումի հրավիրման լուրը: Բոլոր կոլտնտեսություններում, սովխոզներում և ՄՏԿ-ներում բարձրացել է սոցիալիստական մրցության նոր ալիք. ամենուրեք սոցիալիստական նորանոր պարտավորություններ են վերցնում կոմունիզմի ծավալուն կառուցման յոթնամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար: Հրավիրվող պլենումը խոշոր դեր կխաղա գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի XXI համագումարի որոշումների իրականացման գործում: Այժմ պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ կազմակերպել ու գլխավորել կոլտնտեսային գյուղացիության, սովխոզների ու ՄՏԿ-ների բանվորների, մեխանիզատորների աշխատանքային ակտիվությունը, 1959 թվականի պլանները կատարելու և գերակատարելու համար, լրիվ օգտագործել գոյություն ունեցող բոլոր հնարավորությունները, Կենտկոմի առաջիկա պլենումը աշխատանքի լավագույն ցուցանիշներով դիմավորելու համար:*



## ԱՆԹԵՐԻ ԿԱՏԱՐԵԼ ՍՏԱՆՁՆԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մեր երկրի թևակոխումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը նշանավորվեց աշխատավորների ստեղծագործական ակտիվության նոր բարձրացմամբ, սոցիալիստական մրցության հուժկու ծավալումով:*

*Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները ևս պարտավորություն ստանձնեցին ժամկետից շուտ իրականացնել առաջիկա յոթնամյակի հոյակապ ծրագիրը և մոտակա տարիներին լիովին բավարարել բնակչության պարենամթերքների և արդյունաբերական հումքի պահանջմունքները: Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ևս իրենց ընդունած սոցիալիստական մրցման պայմանագրերում նախատեսել են ժամկետից շուտ կատարել յոթնամյակի բոլոր առաջադրանքները: Գյուղատնտեսության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունը գյուղատնտեսության բոլոր աշխատողների անունից սոցիալիստական պարտավորություն է ստանձնել յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի առաջադրանքները կատարել տեխնիկական կուլտուրաների արտադրանքի գծով՝ 2—3 տարում, խաղողի և պտուղների արտադրության գծով՝ 1964 թվականին, կաթի արտադրության գծով՝ 1962 թվականին, մսի և բրդի արտադրության գծով՝ 1963 թվականին: Զափազանց լուրջ պարտավորություններ են ընդունված նաև ընթացիկ տարվա համար: Այդ պարտավորությամբ՝ 1959 թվականին արտադրվելու է 35000 տոննա բամբակ, այնքան, որքան նախատեսված է 1965 թվականի համար, 100 հազար տոննա շաքարի ճակնդեղ, այնքան, որքան նախատեսված է 1965 թվականի համար, 10500 տոննա ծխախոտ, 100 հազար տոննա խաղող: Պարտավորություն է ստանձնված՝ 1959 թվականին (նախորդ տարվա համեմատությամբ), կաթի արտադրությունը կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելացնել 26 տոկոսով, մսի արտադրությունը՝ 30 տոկոսով, բրդի արտադրությունը՝ 15 տոկոսով:*

*Կոլտնտեսություններում և սովխոզներում ընդունված սոցիալիստական պարտավորություններն իրականացնելու համար մշակված են կոնկրետ միջոցառումներ: Շատ պարտիական կազմակերպություններ համառ պայքար են մղում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները անթերի կատարելու համար, ամենօրյա գործոն օգնություն են ցույց տալիս արտադրության աշխատողներին, սիստեմատիկաբար ստուգում են ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և միջոցների են դիմում սոցիալիստական մրցման բնագավառում եղած թերությունների վերացման համար:*

*ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումը քննարկեց սոցիալիստական պարտա-*

վորությունների կատարման հարցը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում։ Սույն թվականի հոկտեմբերի 12—13-ը կայացած ՀԿՊ Կենտկոմի պլենումը նորից քննարկեց սոցիալիստական մրցության ծավալման հարցը գյուղատնտեսության բնագավառում։ Պլենումը լսեց Արտաշատի, Մարտունու և Իջևանի պարտշրջկոմների քարտուղարների զեկուցումները թվարկված շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից վերցված սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ ՀԿՊ Կենտկոմի պլենումը նշեց, որ շնորհիվ ծավալված սոցիալիստական մրցության՝ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները որոշակի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Սակայն սոցիալիստական մրցության ընթացքն անցած ինն ամիսների ընթացքում դեռևս չի ապահովում ստանձնած պարտավորությունների ժամանակին և լրիվ կատարումը։ Պլենումը պարտավորեցրեց բոլոր կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներին, պարտիական կազմակերպություններին է՛լ ավելի լայն ծավալել սոցիալիստական մրցությունը գյուղատնտեսության աշխատողների շրջանում և ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը դիմավորել ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարմամբ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները նկատելի հաջողությունների են հասել բուսաբուծության գծով վերցրած սոցիալիստական պարտավորությունների կատարման բնագավառում։

Չնայած նրան, որ ռեսպուբլիկայի մի շարք շրջանների ցանքերը զգալի չափերով տուժեցին ամառվա կարկտահարությունների և վաղ աշնան ձյան տեղումների հետևանքով, բայց և այնպես նախնական տվյալները ցույց են տալիս, որ հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման գծով ընդունված պարտավորությունները կատարվում են։ Հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի միջին բերքը հասնում է մոտ 10,5 ցենտների, անցյալ տարվա 9,6 ցենտների դիմաց։ Ռեսպուբլիկայի երկու խոշոր հացահատիկային շրջաններ՝ Բասարգեչարը և Ախուրյանը, ապահովել են հացահատիկային կուլտուրաների բարձր բերք։ Բասարգեչարի շրջանում մեկ հեկտարից ստացվել է 12,8 ցենտներ հացահատիկ, իսկ Ախուրյանի շրջանում՝ 13,6 ցենտներ։ Հացահատիկային կուլտուրաների բարձր բերք են ստացել նաև շատ ուրիշ շրջաններ։ Հոկտեմբերյանի շրջանում յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 26 ցենտներ հացահատիկ, Մարտունու շրջանում՝ 12,5 ցենտներ, Վեդու շրջանում՝ 20,3 ցենտներ, Էջմիածնի շրջանում՝ 24 ցենտներ, Նոյեմբերյանի շրջանում՝ 11,8 ցենտներ, անցյալ տարվա 3,8 ցենտների դիմաց, Աղինի շրջանում՝ 11,1 ցենտներ, անցյալ տարվա 6,6 ցենտների դիմաց։

Լավ բերք են աճեցրել ռեսպուբլիկայի ծխախոտագործները և ճակնդեղագործները։ Հոկտեմբերի 10-ին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեցին ծխախոտի տերևաքաղի տարեկան պլանը։ Անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ քաղված է քսան միլիոն թելամեր ավելի ծխախոտ։ Ծխախոտի տերևաքաղի տարեկան պլանները գերակատարել են Կրասնոսելսկի, Մարտունու, Եղեգնաձորի, Բասարգեչարի, Շամշադինի, Աշտարակի, Թալինի, Ազիզբեկովի, Վեդու շրջանները։

Սեպտեմբեր ամսին Մարտունու շրջանի ծխախոտագործները նվաճեցին ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի փոխանցիկ դրոշը։ Ծխախոտի հումքի հանձնման տարեկան պլանի կատարման մակարդակով առ



մեկը հոկտեմբերի դրությամբ Մարտունու ծխախոտագործները ռեսպուբլիկայում բռնում էին առաջին տեղը։ Առ տասը հոկտեմբերի դրությամբ, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, շրջանում հավաքված ծխախոտի ընդհանուր քանակությունն ավելացել է երեսունութ տոկոսով։ Այդ շրջանի ծխախոտագործները պարտավորություն են վերցրել ընթացիկ տարում ծխախոտի մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել 13,8 ցենտների, անցյալ տարվա 11,2 ցենտների դիմաց։ Մարտունեցիները ո՛չ միայն կապահովեն վերցրած պարտավորությունների կատարումը, այլև այն զգալիորեն կգերակատարեն, յուրաքանչյուր հեկտարից նրանք կստանան առնվազն 15 ցենտներ ծխախոտ։

Առ հոկտեմբերի տասի դրությամբ ծխախոտի տերևաքաղի տարվա պլանը չէին կատարել Ալավերդու, Իջևանի և մի քանի այլ շրջաններ։ Անցյալ տարի ևս այդ շրջանները չկատարեցին պետությանը ծխախոտի հումք վաճառելու առաջադրանքները։ Ծխախոտի արտադրության ու վաճառքի պլանների թերակատարման գլխավոր պատճառներն այդ շրջաններում ծխախոտի տերևաքաղի վատ կազմակերպումն է և չորանոցային տնտեսության անմխիթար վիճակը։ Աշխատանքի լավ կազմակերպման դեպքում այդ շրջաններին ևս կհաջողվի կատարել և նույնիսկ գերակատարել ծխախոտի արտադրության 1959 թ. պլանը։

Անցյալ տարվա համեմատությամբ բարձրացել է նաև շաքարի ճակնդեղի բերքատվությունը։ Հոկտեմբերի 10-ի դրությամբ հավաքված է շաքարի ճակընդեղի բերքի մոտ մեկ երրորդը։ Հավաքված տարածությունների յուրաքանչյուր հեկտարից ախուրյանցիները ստացել են 260 ցենտներ բերք, իսկ Սպիտակի ճակնդեղագործները՝ 278 ցենտներ։

Այս տարի ետ է մնում բամբակի հավաքման գործը։ Հոկտեմբերի 21-ի դրությամբ, ռեսպուբլիկան կատարել է բամբակի հումքի մթերման պլանի 28,24 տոկոսը։ Անցյալ տարվա համեմատ ետ ենք մնում։ Բամբակի հավաքման գործում հատկապես ետ են մնում Արտաշատի և Էջմիածնի շրջանները։

Այսօր Արարատյան դաշտի շրջանների ամենաառաջնահերթ խնդիրը բամբակի հավաքման պլանների կատարումն է։ Այդ շրջանների պարտիական կազմակերպությունները կոլտնտեսությունների աշխատանքային և այլ միջոցներ պետք է մոբիլիզացնեն բամբակի հավաքման պլանները կատարելու համար։ Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներին պատիվ չի բերում ռեսպուբլիկային Լենինի շքանշանով պարգևատրելուց հետո, թերակատարել այնպիսի կարևոր արտադրանքի պլանը, ինչպիսին բամբակն է։

Այս տարի առատ բերք են աճեցրել ռեսպուբլիկայի այգեգործները։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջաններում ստացվել է խաղողի և պտուղների ավելի շատ բերք։

Խաղողի բերքահավաքի գործը համարյա թե ավարտված է։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի այգեգործները պատվով կկատարեն իրենց խոստումը յուրաքանչյուր հեկտարից 70 ցենտներ խաղող ստանալու մասին։ Հավաքված տարածությունների հեկտարից Արտաշատի շրջանի կոլնտեսությունները ստացել են 102 ցենտներ խաղողի բերք, սոցմրցման պայմանագրով նախատեսված 100 ցենտների դիմաց, Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունները՝ 85 ցենտներ, պայմանագրով նախատեսված 75 ցենտների դիմաց, Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունները՝ 90 ցենտներ, պայմա-

*նագրով նախատեսված 80 ցենտների դիմաց, Վեդու շրջանի կոլտնտեսությունները՝ 83 ցենտներ, Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները՝ 80 ցենտներ, Աշտարակի շրջանի կոլտնտեսությունները՝ 60 ցենտներ։*

*Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի ավելացել է նաև բանջարեղենի արտադրությունը։ Անհրաժեշտ է նշել, որ այս տարի առևտրական և մթերող կազմակերպությունների անկազմակերպ աշխատանքի հետևանքով մեծ քանակությամբ պտուղների, բանջարեղենի և խաղողի կորուստ ունեցանք։ Չնայած առատ բերքին, առևտրի կազմակերպությունները չկատարեցին բնակչությանը խաղող, պտուղներ և բանջարեղեն վաճառելու պլանը։ Ժողտնտխորհի գինեգործական և կոնսերվի ձեռնարկությունները նախապատրաստված չէին մեծ քանակությամբ խաղող ու պտուղներ ընդունելու արդյունաբերական վերամշակման համար, որի պատճառով նրանք հրաժարվեցին կոլտնտեսություններից մաքսիմալ քանակով խաղող և պտուղներ ընդունել։ Ժողտնտխորհի ղեկավարությունը և Պետպլանը պարտավոր են այժմվանից միջոցառումներ մշակելու առաջիկա տարիներին գյուղատնտեսական հումք վերամշակող ձեռնարկությունների կարողությունները նշանակալի չափերով ավելացնելու վերաբերյալ, հակառակ դեպքում ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը կարգելակի գյուղատնտեսության վերելքը և ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի յոթնամյա պլանների կատարումը կդնի լուրջ վտանգի տակ։*

*Եթե բուսաբուծության համարյա թե բոլոր ճյուղերի գծով հաջողությամբ կատարվում են սոցիալիստական մրցության պայմանագրերով վերցրած պարտավորությունները, ապա նույնը չի կարելի ասել անասնաբուծության մասին։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների զգալի մասում անբավարար է ընթանում անասնաբուծության գծով վերցրած պարտավորությունների կատարումը։*

*Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճի գծով վերցրած պարտավորությունները չեն կատարել ռեսպուբլիկայի 9 շրջաններ։ Աղինի, Թալինի և Էջմիածնի շրջանները ոչ միայն չեն կատարել եղջերավոր անասունների գլխաքանակի աճի պարտավորությունները և հաստատված պլանները, այլ նույնիսկ նախորդ տարվա համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը պակասեցրել են։ Կովերի գլխաքանակի ավելացման պարտավորությունները չեն կատարել ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասը, հատկապես ետ են մնում Ալավերդու, Կոտայքի, Նոյեմբերյանի, Սիսիանի և Թալինի շրջանները։*

*Համեմատաբար հաջող է ընթանում մանր եղջերավոր անասունների, խոզերի և թռչունների գլխաքանակի ավելացման պարտավորությունների կատարումը. սակայն այդ բնագավառում ևս ամենուրեք չէ, որ բարեհաջող վիճակ գոյություն ունի։ Խիստ անբավարար է ընթանում կաթի ու մսի արտադրության ավելացման գծով սոցիալիստական մրցման պայմանագրերով վերցրած պարտավորությունների կատարումը։ Ինչպես նշեցինք, սոցիալիստական մրցման պայմանագրով նախատեսված է (1958 թվականի համեմատությամբ), 1959 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում կաթի արտադրությունն ավելացնել 26 տոկոսով, մսինը՝ 30 տոկոսով, բրդինը՝ 15 տոկոսով։ Այս տարվա անցած ինն ամիսների ընթացքում (նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ), կաթի արտադրությունը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելացել է միայն 7,3*



*տոկոսով, մսինը՝ 1,3, իսկ բրդինը՝ 2,9 տոկոսով։ Ինչպես երևում է, անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գծով վերցրած սոցիալիստական պարտավորությունների և անցած ինն ամիսների ընթացքում փաստացի կատարողականի միջև գոյություն ունի մեծ ճեղքվածք։ Այդ ճեղքվածքը կարճ ժամանակամիջոցում վերացնելու համար ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարությունը, անասնաբուծության բոլոր աշխատողները պետք է լարեն իրենց ուժերը և մինչև վերջ օգտագործեն գոյություն ունեցող ռեզերվներն ու հնարավորությունները։*

*Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման պարտավորությունները հաջող են կատարում Սպիտակի, Կիրովականի, Վեդու, Եղեգնաձորի, Հոկտեմբերյանի, Մարտունու, Ազիզբեկովի, Արթիկի շրջանները։ Ետ մնացողների թվին են պատկանում Ղափանի, Սևանի, Աղինի և Թալինի շրջանները։ Վերջին երկու շրջանները ո՛չ միայն չեն կատարել կաթի արտադրության ավելացման գծով իրենց վերցրած պարտավորությունները, այլև անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի կաթի համախառն արտադրանքը պակասեցրել են։*

*Ռեսպուբլիկայի անասնաբուծության աշխատողները պետք է պայքարեն ո՛չ միայն ընթացիկ տարվա ստանձնած սոցիալիստական պարտավորությունները լրիվ կատարելու համար, այլ նաև նախապայմաններ ստեղծեն հաջորդ տարվա անասնաբուծության զարգացման ծրագրի կենսագործման համար։*

*Հայտնի է, որ անասնագլխաքանակի ավելացման և անասնաբուծության մթերատվության բարձրացման կարևորագույն պայմաններից մեկը պահանջվող քանակի անասնակերի առկայությունն է։ Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները կուտակել են իրոք մեծ քանակի կեր։ Առ 10-ը հոկտեմբերի դրությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները կուտակել են 533 հազար տոննա խոտ և 565 հազար տոննա սիլոս (անցյալ տարվա 395 հազար տոննա խոտի և 448 հազար տոննա սիլոսի դիմաց)։ Այսպիսով, այս տարի 1958 թվականի համեմատությամբ ավելի է կուտակվել 138 հազար տոննա խոտ և 117 հազար տոննա սիլոս։ Միայն եգիպտացորենի սիլոսի կուտակված քանակությունը հասնում է 194,2 հազար տոննայի։ Այս տարի (անցյալ տարվա համեմատությամբ), կուտակված է նաև մոտ մեկ ու կես անգամ ավելի հացահատիկային անասնակեր։ Անասնակերի կուտակման պլանները խոշոր չափով գերակատարել են Գորիսի, Ազիզբեկովի, Ղափանի, Կրասնոսելսկի, Մարտունու շրջանները։*

*Մեծ քանակությամբ անասնակերի կուտակումը հնարավորություն կտա ո՛չ միայն բարելավելու կթու կովերի խնամքը, այլև բտման տակ դնելու և գիրացնելու մեծ քանակությամբ անասուններ, որը կնպաստի անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը։*

*Կոլտնտեսությունների և սովխոզների, ինչպես նաև շրջանների պարտիական և սովետական օրգանների շատ ղեկավար աշխատողներ հաճախ բավականանում են նրանով, որ ապահովում են գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման պլանների կատարումը և նախորդ տարվա դիմաց որոշ աճ են ունենում. նրանք քիչ են հետաքրքրվում սոցիալիստական մրցման պայմանագրերում ընդունված պարտավորությունների կատարման հարցով։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները պետք է պայքարեն նման*

հանդստացուցիչ և վնասակար տրամադրությունների դեմ: Սոցիալիստական
պարտավորությունների ընդունումը դատարկ հայտարարություն չէ, այդ պար-
տավորությունների կատարումը նույնչափ կարևոր ու պարտադիր է, ինչ չափ
որ պետական պլանների կատարումն է պարտադիր ու կարևոր:

Գյուղատնտեսության բոլոր աշխատողների պայքարը, պարտիական կազ-
մակերպությունների ղեկավարությամբ, պետք է ուղղված լինի բոլոր պլան-
ների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անթերի կա-
տարման նպատակին:

## ԱՄԵՆՈՒՐԵՔ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Պարտիայի XXI համագումարի նախագծած գյուղատնտեսության զարգաց-
ման հոյակապ ծրագրի իրականացման վճռական պայմաններից մեկը հողա-
գործության կուլտուրայի բարձրացումն է:

Այժմ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գլխա-
վոր ուղին ոչ թե ցանքատարածությունների ընդարձակումն է, այլ բերքատվու-
թյան բարձրացումը: Բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքա-
տվությունը և անասնաբուծության մթերատվությունն առանց հողագործության
կուլտուրայի վճռական բարձրացման՝ անհնարին է:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվական-
ների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի
զեկուցման թեզիսներում ասված է. «Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների
կայուն բարձր բերքի ստացումը, համախառն բերքը նախատեսվող չափերին
հասցնելը պետք է իրագործվի երկրագործության գիտականորեն հիմնավորված
սիստեմի արմատավորման հիման վրա, ըստ երկրի առանձին տնտեսական գո-
տիների ու յուրաքանչյուր տնտեսության պայմանների: Գյուղատնտեսական
արտադրության հետագա մասնագիտացման ու տեղաբաշխման բարելավման,
գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն օգտագործման հիման
վրա»:

Հողագործության վարման սիստեմի կարևորագույն բաղկացուցիչ մասը և
նրա կուլտուրայի բարձրացման վճռական պայմաններից մեկը գիտականորեն
հիմնավորված ցանքաշրջանառության արմատավորումն է, որը որոշում է ար-
տադրության ճյուղերի ուղղությունը և նրանց ռացիոնալ զարգացումը (հողը
և գյուղատնտեսական արտադրության մյուս միջոցները ամենաարդյունավետ
կերպով օգտագործելու համար):

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի
որոշումներով նախատեսված է առաջիկա 2—3 տարիների ընթացքում բոլոր
կոլտնտեսություններում ու սովխոզներում մտցնել ճիշտ ցանքաշրջանառու-
թյուն: Դեկտեմբերյան պլենումի այդ կարևոր որոշումը մեր ռեսպուբլիկայում
չափազանց դանդաղ է իրականացվում:

Առ 1959 թվականի հուլիսի մեկի դրությամբ ռեսպուբլիկայի 588 կոլտն-
տեսություններում կազմված է, կամ, ինչպես ասում են, անց է կացված 772
ցանքաշրջանառություն, որից՝ 737 դաշտային, 25 մասնագիտացված, 7 կերա-
յին և 3 բանջարանոցային ցանքաշրջանառություն: Ցանքաշրջանառություն է
անցկացված 311,5 հազար հեկտար հողատարածության վրա, որը կազմում է
կոլտնտեսությունների մշակելի հողերի 70,7 տոկոսը: Ցանքաշրջանառության



անցկացման աշխատանքները խիստ ետ են մնում Հոկտեմբերյանի, Արտաշա-
տի, Շահումյանի, Էջմիածնի, Մեղրու, Կոտայքի, Վեդու և Բասարգեչարի շրջան-
ներում: Ավելի անմխիթար վիճակում են գտնվում ցանքաշրջանառությունների
իրացման աշխատանքները: 311,5 հազար հեկտար վարելահողերի վրա ցանքա-
շրջանառություն անցկացված ընդհանուր տարածությունից իրացված է կամ
արմատավորված է ցանքաշրջանառությունը միայն 74,3 հազար հեկտար տարա-
ծության վրա, որը կազմում է անցկացված ցանքաշրջանառության ընդհանուր
տարածության 23,9 տոկոսը: Ղուկասյանի շրջանում իրացված է անցկացված
ցանքաշրջանառությունների 0,3 տոկոսը, Մարտունու շրջանում՝ 0,6 տոկոսը,
Նոյեմբերյանի շրջանում՝ 0,8 տոկոսը, Սիսիանի շրջանում՝ 4,9 տոկոսը, Իջևանի
շրջանում՝ 7,1 տոկոսը, Կիրովականի շրջանում՝ 7,6 տոկոսը, Ապարանի շըր-
ջանում՝ 7,3 տոկոսը, Եղեգնաձորի շրջանում՝ 9,3 տոկոսը:

Ցանքաշրջանառության արմատավորման գործի այդպիսի անմխիթար վի-
ճակի գլխավոր պատճառն այն է, որ պարտիական շրջանային կոմիտեները,
շրջսովետները, կոլտնտեսությունների վարչությունները և սովխոզների ղեկա-
վարությունն իրենց ուշադրությունից դուրս են թողել այդ կարևոր գործը: Ցան-
քաշրջանառության արմատավորման պատճառներից մեկն էլ խոտաբույսերի
սերմերի պակասն է: Խոտադաշտային ցանքաշրջանառություն անցկացնելու
դեպքում 2—3 դաշտ պետք է խոտաբույսեր ցանվեն, մինչդեռ խոտասերմերի
պակասության պատճառով այդ դաշտերում խոտաբույսեր չեն ցանվում, որի
հետևանքով ցանքաշրջանառության իրացման գործը ձախողվում է: Ռեսպուբ-
լիկայի կոլտնտեսությունները տարիներ շարունակ թերակատարել են կերային
կուլտուրաների ցանքի պլանները. այսպես, 1957 թվականի խոտաբույսերի
ենթացանքի պլանները կատարել են 63 տոկոսով, 1958 թվականին՝ 79 տոկո-
սով, իսկ 1959 թվականին՝ 68,5 տոկոսով:

Խոտադաշտային ցանքաշրջանառությունն արմատավորելու համար գյու-
ղատնտեսական օրգանները պետք է հոգ տանեն խոտաբույսերի սերմնաբուծու-
թյունը բարելավելու մասին: Կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավոր
են յուրաքանչյուր տարի առանձնացնել սերմադաշտեր, բարելավել նրանց
մշակությունը, որպեսզի ստանան պահանջվող քանակի խոտաբույսերի սերմեր:
Պարտիական շրջանային կոմիտեները և աշխատավորների դեպուտատների
շրջանային Սովետները պետք է պատասխանատվության ենթարկեն այն կոլ-
տնտեսությունների և սովխոզների ղեկավարներին, որոնք համառորեն դիմա-
դրում են ցանքաշրջանառությունների արմատավորմանը:

Ցանքաշրջանառության արմատավորումը սերտ կերպով կապված է գյու-
ղատնտեսության մասնագիտացման հետ: Յուրաքանչյուր շրջանում, ելնելով
տեղի հողա-կլիմայական պայմաններից և երկրի ժողովրդական տնտեսության
պահանջներից, պետք է տիրապետի գյուղատնտեսության որևէ ճյուղ, մնացած
ճյուղերը ենթակա և օժանդակ դեր պետք է կատարեն: Գյուղատնտեսության
մասնագիտացման դեպքում հողն ավելի արդյունավետ ձևով է օգտագործվում,
բարձրանում է տնտեսության ապրանքայնությունը և նշանակալի չափերով
ավելանում դրամական եկամուտները: Պարտիայի XXI համագումարի որոշում-
ներին համապատասխան, մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը մասնա-
գիտանում է անասնաբուծության ու այգեգործության ուղղությամբ: Միաժա-
մանակ պետք է ընդլայնվի ծխախոտի և մի շարք այլ տեխնիկական կուլտու-
րաների մշակությունը, իսկ քաղաքամերձ շրջաններում պետք է նշանակալի չա-

փերով ավելացնել բանջարեղենի արտադրությունը: Ռեսպուբլիկայի լեռնային
և նախալեռնային շրջանների մեծ մասը պետք է մասնագիտանա անասնաբու-
ծության ուղղությամբ: Այդ շրջաններում պետք է փոփոխվի ցանքային տարա-
ծությունների ստրուկտուրան, հօգուտ կերային կուլտուրաների ցանքատարա-
ծությունների տեսակարար կշռի բարձրացման: Անասնաբուծական շրջանների
ցանքային տարածությունների առնվազն մեկ երրորդը պետք է կազմեն կերա-
յին կուլտուրաները, իսկ վերջինների գերակշռող մասը պետք է կազմեն միամ-
յա և բազմամյա խոտաբույսերն ու եգիպտացորենը: Անասնաբուծական խոշոր
շրջաններից յուրաքանչյուրն ամեն տարի պետք է 1500—2000 հեկտար խոտա-
բույսերի ցանք ու ենթացանք կատարի: Խոտաբույսերի ցանքատարածություն-
ների այդպիսի նշանակալի ընդարձակումը պետք է կատարվի դուրս գրված հո-
ղերի օգտագործման և որոշ չափով էլ հացահատիկային կուլտուրաների ցան-
քատարածությունների կրճատման հաշվին:

Որոշ անասնաբուծական շրջաններում ցանքատարածությունների ստրուկ-
տուրայի փոփոխման ուղղությամբ վճռական քայլերի չեն դիմում, որի հետե-
վանքով չափազանց դանդաղ են ընդարձակվում կերային կուլտուրաների ցան-
քատարածությունները: Պետպլանի և Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մի-
նիստրությունը ևս պահանջվող վճռականություն չեն ցուցաբերում գյուղատըն-
տեսության մասնագիտացման գործում: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի և
Ախուրյանի շրջաններում նպաստավոր պայմաններ չկան մանր եղջերավոր ա-
նասունների գլխաքանակի ավելացման համար. այդ շրջաններում նպատակա-
հարմար է զարգացնել կաթնային անասնաբուծությունը: Այդ նպատակով հիշ-
ված շրջանների ղեկավար օրգանները և կոլտնտեսություններն ու սովխոզները
իրենց յոթնամյա պլանները կազմելիս նախատեսել են մանր եղջերավոր անա-
սունների գլխաքանակը որոշ չափով իջեցնել և համապատասխանորեն ավելաց-
նել կովերի գլխաքանակը: Գյուղատնտեսության պլանավորման գործում կա-
տարված այդպիսի համարձակ քայլը վախեցրեց Պետպլանի և Գյուղատնտե-
սության մինիստրության որոշ աշխատողների, որի հետևանքով այդ շրջանների
յոթնամյա պլանների քննարկման գործը երկար ժամանակ ձգձգվեց:

Պետպլանը և Գյուղատնտեսության մինիստրությունը, ինչպես նաև հա-
մապատասխան գիտա-հետազոտական ինստիտուտները պարտավոր են օգնել
շրջանների կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ ճշտել նրանց տնտեսա-
կան պրոֆիլը և մասնագիտացման ուղղությունը և այդ բոլորն իրենց արտացո-
լումը պիտի գտնեն յոթնամյա պլաններում:

Երկրագործության կուլտուրայի բարձրացման մյուս կարևոր պայմանը
ագրոտեխնիկական և կազմակերպական-տնտեսական կոմպլեքս միջոցառում-
ների կիրառումն է, գյուղատնտեսական գիտությունների նվաճումների և առա-
ջավոր փորձի լայն օգտագործումը բերքատվության և աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման նպատակով: Գյուղատնտեսական կուլտուրաների
բերքատվության բարձրացման համար անցկացվող միջոցառումները պետք
է սկսել հողի նախապատրաստումից, նրա նախացանքային մշակությունից:

Առաջավոր ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսում չափազանց
մեծ է ցելի դերը: Գյուղատնտեսության բազմամյա փորձը ցույց է տվել, որ
ցելը նպաստում է հողի մեջ խոնավության կուտակմանը, օգնում է հողը մոլա-
խոտերից և գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուներից մաքրելուն,
բարձրացնում է հողի մեջ ներդրվող օրգանական և հանքային պարարտանյու-



թերի էֆեկտիվությունը: Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության
բարձրացման համար ցելի բացառիկ նշանակությունը ոչ ոք չի ժխտում, սա-
կայն շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ իրենց պրակ-
տիկ գործունեությամբ թերագնահատում են ցելի այդ կարևոր դերը: Ռեսպուբ-
լիկայի շրջանների մի մասում վաղ ցելի բացակայության պատճառով աշնա-
նացանի 45—50 տոկոսը կատարում են խոզանի վրա: Այդպիսի պայմաններում
ևս աշնանացանից կարելի կլիներ բարձր բերք ստանալ, եթե հնձից անմիջա-
պես հետո դաշտերը մաքրվեին խոզանի մնացորդներից, վարվեին ու պարար-
տացվեին:

Չափազանց դանդաղ են ընթանում նաև ցրտավարի աշխատանքները: Հոկ-
տեմբերի 15-ի դրությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ցրտավարի
պլանը կատարել են միայն 23,80 տոկոսով: Ղափանի, Մեղրու, Կիրովականի և
Ալավերդու շրջանները մինչև հոկտեմբերի 5-ը ոչ մի հեկտար ցրտավար չեն
կատարել: Թալինի շրջանը ցրտավարի պլանը կատարել է 6,9 տոկոսով, Նո-
յեմբերյանի շրջանը՝ 33 տոկոսով, Կալինինոյի շրջանը՝ 6,3 տոկոսով, Կրասնո-
սելսկի շրջանը՝ 11,1 տոկոսով, Սևանի շրջանը՝ 4,9 տոկոսով: Պարտիական
կազմակերպությունները և կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար-
ները լուրջ միջոցների պետք է դիմեն ցրտավարի աշխատանքներն արագաց-
նելու համար: Ցրտավարի պլանների կատարումը կկրճատի գարնանացանի
աշխատանքների ժամկետները և կնպաստի բարձր բերքի ստացմանը:

Բերքատվության բարձրացման համար խոշոր նշանակություն ունի նաև
լավորակ սերմացուների առկայությունը: Այս տարի առանձին շրջաններ աշ-
նանացանի մի մասը կատարեցին ոչ կոնդենցիոն սերմերով: Որպեսզի նման
երևույթներ չկրկնվեն, պետք է որ յուրաքանչյուր կոլտնտեսություն ստեղծի
անհրաժեշտ քանակի սորտային սերմերի փոխանցիկ ֆոնդ: Դրա հետ միաժա-
մանակ գյուղատնտեսական օրգանները պետք է ընդլայնեն սերմնաբուծու-
թյան գծով տարվող աշխատանքները:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության մակարդակը կախ-
ված է նաև նրանից, թե ինչ եղանակով է կատարվում ցանքը: Ստուգված է,
որ հացահատիկային կուլտուրաների ցանքը խաչաձև և նեղշար եղանակով կա-
տարելու դեպքում բերքատվությունը 20—25 տոկոսով բարձրանում է: Եգիպ-
տացորենի և տեխնիկական կուլտուրաների ցանքը քառակուսի բնային եղա-
նակով կատարելիս միաժամանակ բարձրանում է թե՛ բերքատվությունը և թե
աշխատանքի արտադրողականությունը:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները լայնորեն պետք է
կիրառեն ցանքի առաջավոր եղանակները: Որոշ շրջաններում թերագնահատ-
վում է նաև պարարտանյութերի դերը բերքատվության բարձրացման գործում:
Վերջին երեք տարիների ընթացքում դաշտ փոխադրվող պարարտանյութի քա-
նակը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում աճել է չնչին չափերով: Պարար-
տանյութերի պակասը խոշոր բացասական ազդեցություն է ունենում բերքա-
տվության բարձրացման վրա: Օրինակ, քիչ չէ այն կոլտնտեսությունների թիվը,
որոնք եգիպտացորեն կամ գյուղատնտեսական այլ կուլտուրաներ ցանում են
չպարարտացված հողերում, ցանքերին սնուցում չեն տալիս, որի հետևանքով
ստանում են ցածր բերք: Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզ-
ներում յուրաքանչյուր տարի անօգտագործելի է մնում ու փչանում տասնյակ
հազարավոր տոննաներով գոմաղբ: Պարտիական կազմակերպությունները և

կոլտնտեսությունների վարչությունները գործն այնպես պետք է կազմակերպեն, որպեսզի եղած ամբողջ գոմաղբը և այլ տեղական պարարտանյութեր ժամանակին դաշտ տեղափոխվեն։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է լավ կազմակերպել նաև ցանքերի մշակությունը և բերքահավաքը կատարել սեղմ ժամկետներում։

Վերջին տարիներին որոշ աշխատանք է կատարված այգեգործության կուլտուրայի բարձրացման ուղղությամբ։ Այգեփորի զգալի մասը մեքենայացված է. լավ է անցկացվում պայքարը գյուղատնտեսական վնասատուների և հիվանդությունների դեմ. կազմակերպվում է խաղողի այգիների սնուցումը և այլն։ Սակայն այդ բոլորով հանդերձ, այգեգործության կուլտուրան դեռ չափազանց ցածր է. այգեգործության մեջ դեռ գերիշխում է ձեռքի աշխատանքը, այգիների տնկիները պահանջվող խտություն չունեն, տնկիների տեսակների և սորտերի բարելավման գործը վատ է կազմակերպված և այլն։

Այգեգործության աշխատանքների մեքենայացումը պետք է սկսել այգետնկումների համար առանձնացված հողերի պլանավորումից, քարերից մաքրելուց և հարթեցումից։ Պետք է նշանակալի չափերով ընդլայնել նոր այգիները շպալերի վրա բարձրացնելու աշխատանքները։

Անհրաժեշտ է կարգավորել այգիների ոռոգման ռեժիմը և ագրոտեխնիկայի պահանջներին համապատասխան կատարել նրանց պարարտացումը։ Մեր որոշ կոլտնտեսություններում խաղողի բերքի կշիռն ավելացնելու նպատակով այգեկութից մի շաբաթ առաջ ջրում են խաղողի այգիները, որի հետևանքով սատրիկ իջնում է պետությանը վաճառվող խաղողի որակը և բերքի որոշ մասն էլ փչանում է։

Ընդհանրապես պետք է կարգավորել գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման աշխատանքները, հոգ տանել նրա մեքենայացման մասին։ Ոռոգելի ջրի խնայողության նպատակով պետք է ցեմենտ-բետոնի շերտով ծածկել ո՛չ միայն մագիստրալային, այլ նաև միջկոլտնտեսային առուներն ու ներքին ցանցը։ Ոռոգումը հիմնականում պետք է կատարել անձրևող հարմարանքների օգնությամբ։ Այժմ արդեն աշխատանքներ են սկսվել Կոտայքի ջրանցքի շրջանում 1961 թվականից 500 հեկտար հողատարածության վրա ոռոգումը անձրևող հարմարանքներով կատարելու համար։ Նույնպիսի աշխատանքներ պետք է կատարել նաև Արարատյան դաշտի շրջաններում։

Ռեսպուբլիկայի այգեգործների մարտական խնդիրներից մեկը՝ յոթնամյա պլանով նախատեսված 44 հազար հեկտար խաղողի և պտղատու այգիների տնկման աշխատանքների ժամանակին կատարումն է։ 1959 թվականի սոցիալիստական մրցման պայմանագրերով նախատեսված է 6000 հեկտար նոր այգիներ տնկել։ Գարնան ամիսներին կատարված է այդ աշխատանքների մոտ կեսը, իսկ հյուսիսային շրջաններում մոտ մեկ քառորդը։ Պարտիական կազմակերպությունները պետք է հետևեն, որպեսզի նոր այգետնկումների գծով վերցրած 1959 թվականի սոցիալիստական պարտավորությունները աշնան ամիսներին լրիվ կատարվեն։

Բարձր չէ նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության գլխավոր ճյուղերից մեկի՝ անասնաբուծության կուլտուրան։ Այստեղ ևս համարյա թե ամենուր գերիշխում է ձեռքի աշխատանքը, որի հետևանքով անասնաբուծական մթերքների ինքնարժեքը չափազանց բարձր է, իսկ աշխատանքի արտադրողականու-



թյունը՝ ցածր։ Բավական է միայն նշել, որ ռեսպուբլիկայի ոչ մի կոլտնտեսությունում և սովխոզում կովերի էլեկտրական կիթ չի կատարվում։ Ամենուրեք կովերի կիթը կատարվում է ձեռքով։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում էլեկտրական կիթն արմատավորելու դեպքում կթվորուհիների թիվը մոտ հինգ անգամ կկրճատվի, և նրանց աշխատանքը կհեշտանա։

Այս տարի Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունը և Արտաշատի շրջանի Բաղրամյանի սովխոզը սկսել են անասնաբուծության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը։ Անց է կացվում կովերի էլեկտրական կիթ, ավտոմատացնում են գոմաղբի մաքրման ու գոմից դուրս բերելու աշխատանքները, մեքենայացնում են անասնակերի պատրաստման ու բաշխման գործը։ Պարտիական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները այդ տնտեսությունների փորձը պետք է լայնորեն տարածեն ռեսպուբլիկայի անասնաբուծության մեջ։

Լուրջ աշխատանքներ պետք է տարվեն անասունների հոտի որակի բարելավման գծով։ Հոտի որակական կազմի բարելավումը և ընդհանրապես անասնաբուծության հետագա զարգացումը լուրջ դժվարությունների կհանդիպի, եթե լայնորեն չկիրառվի խոշոր եղջերավոր անասունների արհեստական սերմնավորումը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում այժմ պահում են մոտ 1350 ցուլ։ Եթե արհեստական սերմնավորումը լայն ծավալ ստանա, ցուլերի թիվը կարելի կլինի 6—7 անգամ կրճատել, որը հնարավորություն կտա կովերի թիվը լրացուցիչ կարգով, մոտ 2000 գլխով ավելացնելու։ Անասնաբուծական մթերքների հետագա արագ ավելացումը պահանջում է բարելավել հոտի կազմը և նրա վերարտադրությունը, նվազեցնել ստերջությունը և մատղաշի կորուստը, ընդլայնել անասունների բտման ու գիրացման աշխատանքները, գիտական հիմունքներով կազմակերպել ամառային արոտը։

Երկրագործության կուլտուրայի բարձրացման գործում մեծ անելիքներ ունեն գիտա-հետազոտական հաստատությունները։ Գյուղատնտեսական ուսումնական հաստատությունները, գիտա-հետազոտական ինստիտուտները, փորձակայանները իրենց աշխատանքները սերտորեն պետք է կապեն արտափորձակայանները ... գի-
դրության հետ, գյուղատնտեսության մեջ տարածեն ու արմատավորեն գի-
տության նվաճումները, առաջավոր փորձը և ժամանակակից տեխնիկան։

## ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ

Գյուղատնտեսության առաջ ծառացած կարևորագույն խնդիրների հաջող լուծումը խոշոր չափով կախված է պարտիայի կողմից տարվող կազմակերպչական աշխատանքների մակարդակից։ Պարտիան շարունակ խոշոր նշանակություն է տվել գյուղում տարվող կազմակերպական աշխատանքին։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ գյուղատնտեսության առաջ դրված են նոր, հոյակապ, միաժամանակ բարդ խնդիրներ, երբ ՄՏԿ-ների վերակազմման հետևանքով կոլտնտեսություններին են վաճառել տրակտորները, կոմբայնները և բազմաթիվ այլ մեքենաներ, և նրանք վերածվել են ավելի խոշոր մեքենայացված ձեռնարկությունների, կազմակերպական աշխատանքի դերն ու նշանակությունը գյուղում ավելի է մեծացել։

Կազմակերպական աշխատանքը՝ դա նախ և առաջ կենդանի, ստեղծագործական, մասսաների հետ տարվող աշխատանք է։ Ոմանք կարծում են, որ ներկա էտապում, երբ բարձրացել է աշխատավորների կոմունիստական գիտակցությունը, նրանց ստեղծագործական ակտիվությունը, բավական է միայն հայտարարություն անել պարտիայի քաղաքականության մասին, հուշակել նրա լոզունգները, և պարտիայի առաջադրած խնդիրների կենսագործումը կապահովվի։ Դա պասսիվ, հայեցողական մոտեցում է գործին և ոչինչ ընդհանուր չունի ակտիվ, կյանքը վերափոխող ստեղծագործական աշխատանքի հետ։

Կազմակերպական աշխատանքի ուղն ու ծուծը կադրերի ճիշտ ընտրությունը, դասավորումն ու օգտագործումն է։

Այժմ, երբ գյուղում աշխատում են բազմաթիվ մեխանիզատորներ, գյուղատնտեսության մասնագետներ, ինժեներներ, արտադրության առաջավորներ, միջնակարգ դպրոցներն ավարտած երիտասարդներ, գյուղատնտեսության բոլոր բնագավառները գործունյա ու կարող կադրերով ապահովելու հնարավորությունները անհամեմատ մեծացել են։ Համարձակ կերպով պետք է առաջ քաշել երիտասարդ, ընդունակ, պարտիայի գործին մինչև վերջ նվիրված երիտասարդ աշխատողների։ Չպետք է վախենալ տասնյակ տարիներով նույն պաշտոններում գտնվող, իրենց վաղուց սպառած կադրերը փոխարինելու երիտասարդ, թարմ աշխատողներով։

Կադրերի ընտրությունն ու դասավորումը չպետք է կատարել հապճեպ, առանց նախօրոք ուսումնասիրելու և ճիշտ գնահատելու տեղաշարժվող անձանց։ Դժբախտաբար որոշ դեպքերում կադրերին ուսումնասիրում ու ճանաչում են միայն նրանց նոր աշխատանքի նշանակվելուց հետո։ Հայտնի է, որ յուրաքանչյուր տնտեսական տարվա ավարտումից հետո անց է կացվում կոլտնտվարչությունների հաշվետվություններ, որի հետ միասին ընտրվում են կոլտնտեսությունների նոր նախագահներ, նշանակվում են բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ և այլն։ Հաճախ ընտրություններից մեկ երկու ամիս հետո հարց են բարձրացնում փոխելու կոլտնտեսության նախագահին, ֆերմայի վարիչին կամ այլ ղեկավար աշխատողի։ Այդպիսի դեպքերը ցույց են տալիս, որ կադրերի ընտրությունը մտածված ձևով չի կատարվել։

Կադրերի ընտրության և դասավորման ժամանակ հատուկ ուշադրություն պետք է հատկացնել ետ մնացող տեղամասերը ուժեղ կադրերով ապահովելուն։ Ետ մնացող կոլտնտեսությունները, անասնապահական ֆերմաները, բրիգադաները որակյալ կադրերով ապահովելու նպատակով պարտիական կազմակերպությունները պետք է լայնորեն տարածեն Գագանովայի օրինակը։ Պետք է խոստովանել, որ Գագանովայի օրինակը մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների մեջ դեռևս մեծ տարածում չի ստացել։

Իջևանի շրջանի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը կոչ էր ընդունել շրջանի տնտեսապես թույլ կոլտնտեսությունների ետ մնալը վերացնելու մասին։ Պարտիական շրջանային կոմիտեն այդ գործը պետք է սկսեր թույլ կոլտնտեսությունները գործունյա ու փորձված ղեկավարներով ապահովելով, քանի որ կոլտնտվարչությունների նախախահների դերը կոլտնտեսությունների արտադրական-տնտեսական գործունեության մեջ մեծ է։ Մինչդեռ Իջևանի պարտշրջկոմը այդ գործում դեռևս վճռական քայլեր չի արել, և այդ է այն պատճառներից մեկը, որ շրջանի ետ մնացող կոլտնտեսությունների մեծ մասի վիճակում նշանակալի փոփոխություններ չեն կատարվել։



Աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն է՛լ ավելի բարձրացնելու համար պարտիական կազմակերպությունները պահանջվող օգնություն պետք է ցույց տան նորարարներին, արտադրության առաջավորներին, կոմունիստական աշխատանքի բրիգադաներին, պայքարելով ամեն տեսակ կոնսերվատիզմի և հնի կառչողների դեմ։ Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում սկիզբ առավ հարուստ հեկտարի բրիգադաների և լրիվ հեկտարի բրիգադաների շարժումը։ Հարուստ հեկտարի բրիգադաներն իրենց առաջ խնդիր են դնում պայքարել հեկտարից բարձր բերք ստանալու համար, իսկ լրիվ հեկտարի բրիգադաների խնդիրն է՝ լրիվ ու արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր հեկտար հողը։ Այդ նպատակով այդ բրիգադաները հողը մաքրում են քարակույտերից, վերացնում են միջնակները, օգտագործում են առուների, ճանապարհների եզրերը, իսկ տեխնիկական կուլտուրաներով զբաղեցրած հողամասերում, ինչպես նաև այգեգործության մեջ, ապահովում են բույսերի և տնկիների պահանջվող խտություն։

Ռեսպուբլիկայի խաղողի այգիների հեկտարում եղած վազերի փաստական քանակը ագրոտեխնիկայով պահանջվող քանակից մոտ 15—20 տոկոսով ցածր է, իսկ բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարում եղած բամբակենու բույսերի քանակը նորմայից 10—15 տոկոսով ցածր է։ Դա նշանակում է, որ բամբակի պլանտացիաներում և խաղողի այգիներում միայն լրացումների միջոցով բույսերի անհրաժեշտ խտությունն ապահովելով բերքատվությունը կարելի է 10—20 տոկոսով բարձրացնել։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում մեծ դեր ունեն աշխատանքի կոմպլեքսային մեքենայացման բրիգադաները։ Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի բամբակագործության և եգիպտացորենի մշակության ու բերքահավաքի մեջ անվանի մեխանիզատորներ Գիտալովի և Տյուպկոյի օրինակով գործում էին միայն 4 կոմպլեքսային մեքենայացման օղակներ։ Արտաշատի, Վեդու, Էջմիածնի և Հոկտեմբերյանի շրջաններում գործող այդ օղակների առաջին տարվա փորձը ցույց տվեց, որ աշխատանքի կոմպլեքսային մեքենայացումը ոչ միայն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, այլև զգալի չափով բարձրացնում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։

Պարտիական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունների վարչությունները պետք է պայքարեն գյուղատնտեսական արտադրության մեջ կոմպլեքսային մեքենայացման օղակների և բրիգադաների լայն տարածման, գյուղատնտեսության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման համար։

Գյուղում տարվող կազմակերպական աշխատանքի խնդիրներից մեկը յոթնամյա պլանի կատարման մեծ գործին ամբողջ աշխատունակ բնակչությունը մասնակից դարձնելն է, գիտակցական աշխատանքային կարգապահության և հատկապես, պետական կարգապահության ամրապնդումն է։ Մեր ոչ բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում է, որ աշխատանքային կարգապահությունը պահանջվող բարձրության է հասցված։ Դեռևս շատ կոլտնտեսականներ աշխօրերի մինիմումը չեն կատարում, իսկ ոմանք էլ ընդհանրապես կոլտնտեսությունների հանրային տնտեսության մեջ չեն աշխատում։

Արտաշատի շրջանում 1958 թվականին աշխօրերի մինիմումը չեն կատարել կոլտնտեսականների 33,8 տոկոսը, իսկ 1959 թվականի գյուղատնտեսական

աշխատանքների առաջին շրջանում՝ 31, 8 տոկոսը: Առանձին գյուղերում վի-
ճակն ավելի վատ է. օրինակ, Դալար գյուղի կոլտնտեսությունում 1958 թվա-
կանին աշխօրերի մինիմումը չեն կատարել կոլտնտեսականների 60,1 տոկոսը,
իսկ 1959 թվականի անցած ինն ամիսների ընթացքում մոտ 57 տոկոսը: Նույն-
պիսի օրինակներ կարելի է բերել նաև ռեսպուբլիկայի մնացած շրջաններից:

Կոլտնտեսություններում աշխատանքային կարգապահության թուլացման
պատճառներից մեկը կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսությունը
արտելի կանոնադրության սահմանած նորմաներից մեծացնելն է: Շատ կոլ-
տնտեսականներ այնքան են ընդլայնել իրենց օժանդակ տնտեսությունը, որ
այլևս ժամանակ չեն ունենում կոլտնտեսության հանրային տնտեսության աշ-
խատանքներին մասնակցելու: Կոլտնտեսությունների սկզբնական պարտիական
կազմակերպությունները կոլտնտվարչությունների հետ միասին ամեն կերպ
պետք է ձգտեն, որպեսզի կոլտնտեսականները չխախտեն կոլտնտեսության
կանոնադրությամբ սահմանված օժանդակ տնտեսությունների նորմաները:

Կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման գործոն մի-
ջոցներից մեկը պարտիական հասարակական վերահսկողության ուժեղացումն
է: Պարտիական ժողովներում պետք է լսել կոլտնտվարչությունների նախա-
գահների, անասնապահական ֆերմաների վարիչների, բրիգադավարների զե-
կուցումները, երևան հանել գոյություն ունեցող թերությունները և միջոցառում-
ներ մշակել նրանց վերացման համար: Պետք է սիստեմատիկ ձևով ստուգել
պարտիական և պետական որոշումների կատարման ընթացքը կոլտնտեսու-
թյուններում ու սովխոզներում: Հատուկ ուշադրություն պետք է դարձնել սո-
ցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքն ստուգելու աշ-
խատանքներին: Ստուգման աշխատանքներին պետք է մասնակից դարձնել
գյուղատնտեսության մասնագետներին, արտադրության առաջավորներին և
գյուղի երիտասարդությանը:

Պարտիական վերահսկողության ուժեղացումն էլ ավելի կամրապնդի
պարտիական ու պետական կարգապահությունը, կնպաստի սոցիալիստական
մրցության ծավալմանը և գոյություն ունեցող հնարավորությունների հայտա-
բերմանն ու լրիվ օգտագործմանը:

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողները, պարտիական կազ-
մակերպությունների ղեկավարությամբ, չեն խնայի իրենց ջանքերը հարազատ
պարտիայի Կենտրոնական Կոմիտեի առաջիկա պլենումը արժանավայել կեր-
պով դիմավորելու և դրանով իսկ վճռական քայլ կկատարեն կոմունիզմի
ծավալուն կառուցման յոթնամյա պլանի հաջող կատարումն ու գերակատա-
րումն ապահովելու գործում:

---

# ԼՈՒՐՋ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՄԵԾ ՋԱՆՔԵՐ

**Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ**

ՀԿՊ Արտաշատի շրջկոմի քարտուղար

Վերջին հինգ տարիների ընթացքում Արտաշատի շրջանում զգալի աշխա-
տանք է կատարվել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և
անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու բնագավառում: Չնա-
յած բամբակի ցանքատարածությունների կրճատման, 1958 թվականին 8 տո-
կոսով ավելի բամբակ է ստացվել, քան 1953 թվականին. յուրաքանչյուր հեկ-
տարից 1958 թվականին ստացվել է 29,2 ցենտներ միջին բերք՝ 1953 թվականի
17,6 ցենտների փոխարեն: Բանջարանոցային կուլտուրաների բերքատվու-
թյունն այդ նույն ժամանակաշրջանում ավելացել է 3,3 անգամ, խաղողի բեր-
քատվությունը հեկտարից ավելացել է 15 ցենտներով, կամ 30 տոկոսով, հա-
ցահատիկինը՝ 70 տոկոսով, որից եգիպտացորենինը՝ 4 անգամ և այլն:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և որոշ
կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման շնորհիվ կոլտնտե-
սությունները ավելացրել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը,
ինչպես նաև հանրային անասունների գլխաքանակը: Հողատարածության 100
հեկտարի դիմաց 1958 թվականին կոլտնտեսություններն ունեին 42 գլուխ խո-
շոր եղջերավոր անասուն, որը 30 տոկոսով ավելի է, քան 1953 թվականին ու-
նեցածը: Այդ նույն ժամանակաշրջանում կովերի գլխաքանակն ավելացել է 40
տոկոսով, խոզերինը՝ 1,5 անգամ և այլն:

Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1953 թվականի 837 կիլոգրա-
մից 1958 թվականին հասցվել է 1691 կիլոգրամի, մեկ ոչխարի բրդատվությու-
նը 1,9 կիլոգրամից՝ 2,7 կիլոգրամի: Անասունների գլխաքանակի ավելացման
և մթերատվության բարձրացման շնորհիվ 1959 թվականին, 1958 թվականի
համեմատությամբ, կաթի համախառն արտադրանքը ավելացել է 2,2 անգամ,
մսինը՝ 25, բրդինը՝ 42 տոկոսով, իսկ ձվինը՝ 2,6 անգամ: Հողատարածության
100 հեկտարի հաշվով 1958 թվականին արտադրվել է 244 ցենտներ կաթ, 56
ցենտներ միս (կենդանի քաշով), 3,2 ցենտներ բուրդ և 24,3 հազար հատ ձու:
Այս բոլորը կոլտնտեսություններին հնարավորություն են տվել պետությանը
վաճառելու ավելի շատ մթերքներ: Մսի վաճառքը 1953 թվականի 6793 ցենտ-
ներից 1958 թվականին հասցվել է 9497-ի, կաթինը 1621 տոննայից՝ 2954-ի,
բրդի վաճառքը ավելացել է 1,4 անգամ, ձվինը՝ 2,5 անգամ:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ
զգալիորեն բարձրացել են կոլտնտեսությունների դրամական եկամուտները:
1958 թվականին շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտները,
1953 թվականի համեմատությամբ, ավելացել են 2,2 անգամ, հասնելով 130
միլիոն ռուբլու:

Կոլտնտեսություններն ու սովխոզները, նրանց պարտիական կազմակեր-
պությունները լուրջ աշխատանք են կատարել աշխատանքի արտադրողականու-
թյունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու գործում։ 1953
թվականի համեմատությամբ, 1958 թվականին յուրաքանչյուր աշխատողի
աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2,2 անգամ։ Ավելացել է
նաև մեկ աշխատողին ընկնող համախառն արտադրանքը։ Եթե 1953 թվակա-
նին յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսականին ընկնում էր 3200 ռուբլու
արտադրանք, ապա 1958 թվականին այն հասել է մոտ 7000 ռուբլու։ 1958
թվականին, 1957 թվականի համեմատությամբ, բամբակի ինքնարժեքն իջեց-
վել է 43, բանջարեղենինը՝ 32, խաղողինը՝ 15, կաթինը՝ 9, մսինը՝ 25, ձվինը՝
42 տոկոսով և այլն։

Բարձրացել է հողամշակության կուլտուրան։ Ագրոմիջոցառումների ճիշտ
կիրառման շնորհիվ տարեցտարի ավելանում է հողատարածության յուրաքան-
չյուր հեկտարից ստացվող եկամուտը։ Եթե 1953 թվականին շրջանի կոլտնտե-
սությունները ամբողջ հողատարածության յուրաքանչյուր հեկտարից միջին
հաշվով ստացել են 2030 ռուբլու եկամուտ, ապա 1958 թվականին այն հասցը-
վել է 4600 ռուբլու, կամ ավելացել է 2,3 անգամ։

Գործարար սոցիալիստական մրցություն ծավալելով եղբայրական Ուկրա-
ինական ՍՍՌ-ի Խերսոնի մարզի Վիսոկոպոլյեի և Ռոստովի մարզի Մյասնիկ-
յանի շրջանի աշխատավորների հետ, ինչպես նաև ծավալելով միջկոլտնտեսա-
յին, բրիգադային, օղակային և անհատական սոցիալիստական մրցություն,
1959 թվականին շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները ժամանակին ու
բարձր որակով կատարեցին ու գերակատարեցին գարնանացան և աշնանացան
կուլտուրաների ցանքերի պլանները։ Այս տարի առանձնակի ուշադրություն է
հատկացվել եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակմանը։ 1958
թվականի համեմատությամբ եգիպտացորենի ցանքատարածություններն ավե-
լացել են 19 տոկոսով։

Ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու, հեկ-
տարից 27 ցենտներ բամբակ, 290 ցենտներ բանջարեղեն, 100 ցենտներ խա-
ղող, 60 ցենտներ միրգ, 35 ցենտներ եգիպտացորենի չոր հատիկ և 500 ցենտ-
ներ ցողուն (կանաչ մասսա) ստանալու համար կոլտնտեսությունները ժամա-
նակին և ագրոկանոններին համապատասխան կատարել են գյուղատնտեսական
բոլոր կուլտուրաների ցանքն ու մշակության աշխատանքները։ Բամբակենու
պլանտացիաների վրա կատարվել է 4,7 անգամ մշակություն, 2 անգամ սնուց-
ման աշխատանքներ։ Ժամանակին կազմակերպվել է պայքար բամբակենու
«ցեց» և այլ վնասատուների դեմ։ Արդեն բոլոր կոլտնտեսություններում սկսվել
է բամբակի բերքահավաքը և ամենայն հավանականությամբ շրջանի աշխա-
տավորները կգերակատարեն իրենց ստանձնած պարտավորությունները։

Լուրջ ուշադրություն է հատկացվել նաև խաղողի այգիների բերքատվու-
թյան բարձրացմանը։ Կոլտնտեսությունները սահմանված ժամանակին փո-
րեցին 4242 հեկտար խաղողի այգիները, որից 2086 հեկտարը պարարտացված
է հանքային և տեղական պարարտանյութերով։ Խաղողի այգիների լիարժեքու-
թյունն ապահովելու նպատակով կոլտնտեսությունները միայն գարնանը ար-
մատակալների ու անդալիսի միջոցով կատարել են 121 հազար հատ բաց վա-
զերի լրացում։

Բոլոր կոլտնտեսություններն սկսել են խաղողի բերքահավաքը և անտա-



րակույս կկատարեն իրենց պարտավորությունները։ Նրանք յուրաքանչյուր
հեկտարից կստանան 107 ցենտներից ոչ պակաս խաղող։ Պետությանը կհան-
ձնվի մոտ 35 հազար տոննա խաղող, կամ այնքան, որքան պլանավորվել է
ստանալ 1963 թվականին։

Բանջարանոցային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից հավաքված
է ոչ պակաս, քան 300 ցենտներ միջին բերք, իսկ բանջարեղենի առանձին տե-
սակներից, օրինակ՝ սոխի յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսություններն
ստացել են 300—500 ցենտներ միջին բերք։ Այդ նշանակում է, որ կան բոլոր
պայմանները ստանձնած պարտավորությունները կատարելու համար։

Պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 40 ցենտներից
ավելի միջին բերք, երբ դեռևս պտուղների զգալի մասը չի հավաքված և եթե
այն լրիվ հավաքվի, կոլտնտեսությունները կկատարեն նաև պտուղների ար-
տադրության բնագավառում ստանձնած պարտավորությունը։

Կոլտնտեսությունները զգալի աշխատանք են կատարել անասնակերի կու-
տակման ուղղությամբ։ Առ 10-ը հոկտեմբերի դրությամբ շրջանի կոլտնտե-
սությունները 19 հազար տոննա խոտի կուտակման պարտավորության դիմաց
կուտակել են 20 հազար տոննա, 20 հազար տոննա սիլոսի դիմաց՝ 15.500
տոննա և 5 հազար տոննա ծղոտի դիմաց՝ 4500 տոննա։ Կերի կուտակման
պարտավորությունն անպայման կկատարվի և նույնիսկ կգերակատարվի,
նկատի ունենալով, որ դեռևս առվույտի տարածություններից սպասվում է 1,5
հազար տոննա խոտ, եգիպտացորենի չհնձված մոտ 400 հեկտար տարածու-
թյան յուրաքանչյուր հեկտարից՝ 125 ցենտներ կանաչ մասսա, որը կլրացնի
5000 տոննա սիլոսի պակասը։

Զգալի նվաճումներ կան նաև անասնաբուծության զարգացման բնա-
գավառում։ Կատարվել և գերակատարվել են անասունների գլխաքանակի
ավելացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունները։

Շրջանի կոլտնտեսությունները 1958 թվականի նույն ժամանակաշրջանի
համեմատությամբ ընթացիկ տարում 300 գլխով ավելացրել են խոշոր եղջե-
րավոր անասունների, 404 գլխով կովերի, 1136 գլխով խոզերի, մոտ 10 հա-
զար գլխով ոչխարների և այծերի գլխաքանակը։

Լուրջ աշխատանք է տարվում անասնաբուծական մթերքների արտա-
դրությունն ավելացնելու ուղղությամբ։ Անցած 9 ամիսների ընթացքում կաթի
արտադրությունն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատու-
թյամբ ավելացել է 7,2 տոկոսով։ Հողատարածության 100 հեկտարի դիմաց
առ մեկը հոկտեմբերի դրությամբ արտադրել է 232 ցենտներ կաթ, տարե-
կան ստանձնած 280 ցենտներ պարտավորության դիմաց։

Առ մեկը հոկտեմբերի դրությամբ մսի արտադրության տարեկան պլանը
կատարվել է մոտ 55,4 տոկոսով. հողատարածության 100 հեկտարի դիմաց
արտադրվել է 37,6 ցենտներ միս՝ ստանձնած 70 ցենտներ պարտավորու-
թյան դիմաց։ Մսի արտադրության պարտավորության կատարման համար
մենք ունենք անհրաժեշտ հնարավորություններ, որոնց գործադրումով կկա-
րողանանք ժամանակին կատարել պետությանը վաճառքի պլանը։ Այդ ուղ-
ղությամբ քիչ գործ չի արված. առ տասը հոկտեմբերի շրջանը պետությանը
մսի վաճառքի պլանը կատարել է 92 տոկոսով։ Դրությունը վատ չէ նաև
մյուս մթերքների վաճառքի գործում։ Այսպես. կաթի վաճառքի տարեկան
պլանը կատարված է 100, ձվինը՝ 61, բրդինը՝ 53, բանջարեղենինը՝ 73,

ծառապտղինը՝ 78 տոկոսով: Կոլտնտեսություններն այս տարի 101 տոկոսով կատարեցին բոժոժի հանձնման տարեկան պլանը:

Այդ հաջողությունները ձեռք են բերվել պարտիական կազմակերպական աշխատանքի բարելավման, պարտիական կազմակերպությունների կողմից գյուղատնտեսության ավելի հետևողական, օպերատիվ ու կոնկրետ ղեկավարության, սոցիալիստական մրցության ծավալման, ստանձնած պարտավորությունների կատարման նկատմամբ գյուղատնտեսության բնագավառի աշխատողների պատասխանատվության բարձրացման միջոցով:

Կազմակերպչական աշխատանքի բարելավումը առաջին հերթին պայմանավորված է նրանով, թե որքանով են կոլտնտեսություններն ամրապնդվել ընդունակ ղեկավար կադրերով: Պարտիայի Արտաշատի շրջկոմը վերջին տարիներին որոշակի աշխատանք կատարեց կոլտնտեսային կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման ուղղությամբ: 43 կոլտնտեսությունների նախագահներից 29-ը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, 11-ը գյուղատնտեսության մասնագետներ են: 1958—1959 թվականների ընթացքում շրջանի 12 կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ փոխարինվել են նոր, փորձված մասնագետներով, պարտիական և սովետական ղեկավար աշխատողներով: 43 կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներից 21-ը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, 10-ը գյուղատնտեսության մասնագետներ են:

Բարելավվել է բրիգադավարների, ֆերմայի վարիչների կազմը. կոլտնտեսություններում աշխատող 347 բրիգադավարներից ու ֆերմայի վարիչներից 183-ը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, 157-ը գյուղատնտեսական բարձրագույն և միջնակարգ կրթություն: Բրիգադավարների և ֆերմայի վարիչների 72 տոկոսն ունի երեք և ավելի տարվա աշխատանքի փորձ:

Այժմ շրջանում աշխատում են 85 բարձրագույն կրթությամբ ագրոնոմներ, զոոտեխնիկներ, անասնաբույժներ: Կոլտնտեսային ղեկավար կադրերի որակավորման և նրանց քաղաքական մակարդակը բարձրացնելու նպատակով շրջանում կազմակերպվել է կոլտնտեսությունների վարչությունների նախագահների և պարտիական կազմակերպությունների քարտուղարների՝ գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինար:

Մեծ է կոլտնտեսության վարչության նախագահի կազմակերպչական աշխատանքի դերը: Քաղցրաշենի կոլտնտեսությունում շրջանային կոմիտեն 1956 թվականին վարչության նախագահ է երաշխավորել բարձրագույն կրթությամբ ագրոնոմ ընկ. Ա. Գրիգորյանին: Ահա թե ինչ արդյունքի է հասել այդ տնտեսությունը նրա աշխատած տարիներին:

| | 1953 թ. | 1958 թ. |
|---|---|---|
| Բամբակի միջին բերքատվ. հեկտարից | 23,8 ց. | 43,3 ց. |
| Խաղողի » » » | 67 ց. | 147 ց. |
| Բանջարեղենի » » | 93 ց. | 298 ց. |

Դալարի կոլտնտեսությունում աշխատանքի լավ կազմակերպման շնորհիվ հողատարածության 100 հեկտարի դիմաց 1958 թվականին ստացվել է 150 ցենտներ միս, կամ 1,7 անգամ ավելի, քան 1955 թվականին: Կաթի արտադրանքն ավելացել է 2,6, բրդի և ձվի արտադրանքը՝ 2—3,5 անգամ:

Նման օրինակներ կարելի է բերել նաև Ն. Ջրաշենի, Ծաղկաշենի և շատ ուրիշ կոլտնտեսություններից:



Պարտիայի շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը առանձնակի ուշադրություն են հատկացնում սոցիալիստական մրցության ծավալմանը և ստանձնած պարտավորությունների կատարմանը: Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում առաջավորներին խրախուսելու նպատակով շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը սահմանել են եգիպտացորենի, կերի կուտակման, խաղողի, բամբակի, կաթի և մսի արտադրության բնագավառում սոցիալիստական մրցության պայմաններ, որոնց կատարմամբ չափվում է ամեն մեկի աշխատանքը:

Շրջանային կոմիտեի բյուրոն յուրաքանչյուր ամիս քննության է առնում կաթի և մսի արտադրության, եգիպտացորենի մշակության և կերի կուտակման բնագավառում շրջանի կոլտնտեսությունների սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, առաջավորները ստանում են գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, նրանց անուն ազգանունները գրվում են «Արտաշատ» թերթի պատվո տախտակին, իսկ կոլտնտեսությունների վարչությունների նախագահների, պարտիական կազմակերպությունների բյուրոների քարտուղարների, ֆերմայի վարիչների, մասնագետների ու առաջավոր անասնապահների նկարները փակցվում են շրջանային պատվո տախտակին:

Շրջանային կոմիտեի պլենումում, պարտիական ակտիվի ժողովում, գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցություններում հաճախ քննության է առնվել սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը: Պարտիական ակտիվի ժողովում քննության են առնվել նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերը: Սոցիալիստական պարտավորությունների կատարմանը լուրջ ուշադրություն են հատկացնում նաև սկզբնական պարտիական կազմակերպությունները: Նրանց միջոցով բոլոր կոլտնտեսություններում, բրիգադներում, օղակներում ժամանակին ստուգվել և ամփոփվել է պարտավորությունների կատարման ընթացքը:

Շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպությունները առանձնակի ուշադրություն են դարձնում առաջավոր փորձի պրոպագանդմանը: 1959 թ. ընթացքում առաջավոր մեխանիզատորներ Մանուկովսկու և Գիտալովի օրինակով Այգեստանի կոլտնտեսությունում 25 հեկտար տարածության վրա կատարվեց եգիպտացորենի քառակուսի բնային ցանք և յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 520 ցենտներ կանաչ մասսա:

Շրջանի բոլոր կոլտնտեսությունները նախապատրաստվում են 1960 թվականին եգիպտացորենի ամբողջ ցանքսը կատարել այդ եղանակով, որը մի քանի անգամ կբարձրացնի բերքատվությունը և կկրճատի ծախսերը:

Լայնորեն պրոպագանդվում է շրջանի գյուղատնտեսության առաջավոր բամբակագործների, այգեգործների, բանջարաբույծների աշխատանքի փորձը: Առաջավոր փորձի տարածումը կատարվում է պրակտիկ կերպով՝ տեղում ուսումնասիրելու, ինչպես և թերթի ու բանավոր խոսքի միջոցով: Իհարկե, այդ բոլորը մեծ նշանակություն ունեն սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում:

Պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսությունների վարչությունների ուշադրության կենտրոնում է աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցը: Պարտիական կազմակերպությունները հետևողականորեն զբաղվում են կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության

բարձրացմամբ։ 1959 թվականին շրջանի բոլոր կոլտնտեսություններում վարչական սպասարկող անձնակազմի վարձատրությունը կատարվում է ըստ արտադրանքի, որը բարձրացնում է նրանց նյութական շահագրգռվածությունը։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում պատասխանատվության և նյութական շահագրգռվածության բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների զոո-անասնաբուժական աշխատողները զգալիորեն բարելավել են անասունների խնամքն ու բուժումը, խիստ կրճատել են անկումները։ 1959 թվականի անցած 9 ամիսների ընթացքում խոշոր եղջերավոր անասունների անկումները կազմում են հանրային հոտի 1,3 տոկոսը, 1958 թվականի նույն ժամանակաշրջանի 2,3 տոկոսի փոխարեն։ Խոզերի անկումները 16-ից իջել են 3 տոկոսի, մանր եղջերավոր անասուններինը՝ 4,3-ից 2,5 տոկոսի։

Պարտիական կազմակերպություններն ու կոլտնտեսությունները լուրջ ուշադրություն են հատկացնում նաև անասունների բտման գործին, որի շնորհիվ 1959 թվականին կոլտնտեսությունների կողմից պետությանը վաճառված մեկ գլուխ խոշոր եղջերավոր անասունի կենդանի քաշը 250 կգ է, խոզինը՝ 80, ոչխարինը՝ 40 կգ։

Անասունների ցեղը բարելավելու նպատակով վերջին հինգ տարիների ընթացքում գնվել է մոտ 800 գլուխ ցեղական կով, չնայած նրան, որ հանրային հոտը հիմնականում բարելավվում է սեփական միջոցներով։ Այսպես, շրջանի 15 կոլտնտեսություններում կազմակերպվել է խոշոր եղջերավոր անասունների և 33 կոլտնտեսություններում՝ ոչխարների արհեստական սերմնավորում. այս տարի նախատեսված է 11 կոլտնտեսություններում կիրառել խոշոր եղջերավոր անասունների արհեստական սերմնավորում, որի շնորհիվ առաջիկա 2—3 տարում կոլտնտեսությունների ամբողջ հոտը 100 տոկոսով ցեղական կդառնա։

Մսի արտադրության ավելացման գործում քիչ նշանակություն չունի նաև ճագարաբուծությունը։ Շրջանի 21 կոլտնտեսություններ այս տարի առաջին անգամ կազմակերպել են ճագարաբուծական ֆերմաներ, որտեղ կա ավելի քան 2500 գլուխ ճագար։ Ճագարաբուծական ֆերմաներ այսուհետև կկազմակերպվեն նաև շրջանի մնացած կոլտնտեսություններում։

Շրջանի կոլտնտեսությունները լուրջ ուշադրություն են նվիրում ջրովի տարածությունների ընդարձակմանը։ Կոլտնտեսությունների միջոցներով կառուցվում է Դվինի ջրանցքը, որը շահագործման կհանձնվի 1960 թվականին։ Դվինի ջրանցքի կառուցման ավարտումով կոլտնտեսությունները կստանան 700 հեկտար լրացուցիչ ջրովի տարածություն, որը հիմնականում օգտագործվելու է կերային կուլտուրաների, եգիպտացորենի ցանքսի և պտղատու այգիների տնկման համար։

Միսյանի, Շահումյանի, Դալարի, Աղամզալուի, Ջարաչալուի և շատ ուրիշ կոլտնտեսություններ լուրջ աշխատանք են կատարում աղակալած հողերի լվացման և բերրի դարձնելու համար. որոշ տարածությունների վրա կատարվում է բոստանային և կերային կուլտուրաների ցանք։ Ճիշտ է, այդ տարածություններն այժմ տալիս են շատ ցածր բերք, բայց ժամանակի ընթացքում կդառնան արգավանդ։

Սոցիալիստական պարտավորությունների կատարումը պահանջում է ավելի խելացի օգտագործել կոլտնտեսությունների դրամական եկամուտները։



Հաշվի առնելով արտադրական և կուլտուրական շինարարության ներկա պահանջները և այդ առումով ՀԿՊ Կենտկոմի ցուցումները, շրջանում զգալի բեկում է կատարված անբաժանելի ֆոնդերի աճման ուղղությամբ։ 1957 թվականի 10 տոկոսի փոխարեն, 1958 թվականին անբաժանելի ֆոնդերի դրամական եկամուտներից հատկացվել է 15,5 տոկոս, նախատեսվում է 1959 թվականին այն հասցնել 18 տոկոսի։ Այս միջոցառումը հնարավորություն է տալիս կատարելու պարտավորությունները արտադրական և կուլտուրական օբյեկտների շինարարության բնագավառում։

Զգալի աշխատանք է կատարվել նաև միջկոլտնտեսային օբյեկտների շինարարության բնագավառում։ Շրջանում կազմակերպվել է միջկոլտնտեսային սովետ, որի միջոցով նախատեսվում են առաջիկայում 10 միլիոն ռուբլու շինարարական աշխատանքներ։ Սկսված է և մինչև տարվա վերջը շահագործման կհանձնվի շրջանի երկրորդ հիվանդանոցի շենքի մի մասը և շրջկենտրոնի ֆիզկուլտ-ստադիոնը. սկսվել են հեղեղատար ջրանցքի կառուցման աշխատանքները։ Արդեն ավարտված են յոթնամյա պլանով նախատեսված ջերմատան, թռչնաբուծական, ինկուբատորային կայանի, կոլտնտեսականների հանգստյան տան, պիոներների պալատի և այլ օբյեկտների շինարարության նախագծերը։ Մի քանի կոլտնտեսությունների միջոցով արդեն ասֆալտապատվել են Բերքանուշ—Դվին և ասֆալտապատվում են Արտաշատ—Նորաշեն, Միսյան—Արևշատ տանող ճանապարհները։

Սակայն պետք է նշել, որ շրջանի գյուղատնտեսության բնագավառի հաջողություններն ավելի մեծ կլինեին և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ավելի լավ կկատարվեին, եթե պարտիական կազմակերպությունների աշխատանքում չլինեին մի շարք լուրջ թերություններ։

Պարտիական կազմակերպությունների, հատկապես պարտիայի շրջանային կոմիտեի, շրջսովետի գործկոմի աշխատանքի հիմնական թերություններից մեկն այն է, որ դեռևս շրջանում կան ետ մնացող կոլտնտեսություններ, որոնք իրենց մակարդակով ցածր են շրջանի միջինից։

Ինչպես վերը նշվեց, անցած գյուղատնտեսական տարում շրջանի կոլտնտեսությունները բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացան 29,2 ցենտներ միջին բերք, իսկ մի շարք առաջավոր կոլտնտեսություններ՝ Քաղցրաշեն, Այգեզարդ, Նորաշեն, Դվին, Շահումյան, Ծաղկաշեն և այլն, ամեն մի հեկտարից բամբակի բերքատվությունը հասցրին 35—44 ցենտների։ Բայց դրանց կողքին Աղամզալուի, Ջարաչալուի, Բաղրամյանի, Նովրոզլուի, Բուրաստանի, Ն. Ղամարլուի կոլտնտեսությունները յուրաքանչյուր հեկտարից ստացան ընդամենը 18—23 ցենտներ միջին բերք։

Չի կարելի հանդուրժել նաև այն, որ Արտաշատի շրջանի առանձին կոլտնտեսություններ խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանում են 30—40 ցենտներ միջին բերք այն դեպքում, երբ առաջավոր կոլտնտեսություններում այն հասնում է մինչև 147 ցենտների։

Պարտիայի շրջանային կոմիտեի կողմից առանձին կոլտնտեսությունների վարչությունների նախագահների, պարտիական կազմակերպությունների բյուրոների քարտուղարների աշխատանքի նկատմամբ դեռևս թույլ հսկողության ու անբավարար պահանջկոտության հետևանքով ավյալ կոլտնտեսություններում չի ապահովվում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավո-

րությունների կատարումը, հատկապես մսի և կաթի արտադրանքի գծով։ 1958 թվականին շրջանի կոլտնտեսությունների զգալի մասը ավելի քիչ միս և կաթ է արտադրել, քան շրջանի միջինն է՝ 100 հեկտար հողատարածության հաշվով։

Առաջիկա տարիների ընթացքում բոլոր հետ մնացող կոլտնտեսությունները պետք է հասցնել առաջավորների մակարդակին։ Եթե շրջանի բոլոր կոլտնտեսությունները մսի արտադրության մակարդակով հավասարվեն առաջավորներին, ապա մսի արտադրության գծով յոթնամյակի առաջադրանքը շրջանը կկատարի 1962—1963 թվականներին։

Շրջանում դեռևս կան շատ աշխատողներ, որոնք տարեսկզբին ստանձնում են բարձր պարտավորություններ, հպարտանում իրենց պարտավորություններով, իսկ տարեվերջին պարզվում է, որ դրանք չեն կատարել։ Դժբախտաբար պարտիայի շրջանային կոմիտեն այդպիսի դեպքերում նրանց պատասխանատվության չի ենթարկում։ Այդ մասին են վկայում անցած 9 ամիսների արդյունքները։ Շահումյանի անվան կոլտնտեսությունը 1959 թվականի գարնանը պարտավորվել էր հողատարածության 100 հեկտարի դիմաց արտադրել 110 ցենտներ միս. անցել է արդեն 9 ամիս և արտադրել է ընդամենը 48 ցենտներ։ Մրգաշատի կոլտնտեսությունը 71 ցենտների դիմաց արտադրել է 38 ցենտներ. Վերին Դվինի կոլտնտեսությունը պարտավորվել է հողատարածության 100 հեկտարի դիմաց արտադրել 211 ցենտներ կաթ (որը շրջանի միջինից ցածր է), անցած 9 ամիսների ընթացքում արտադրել է ընդամենը 180 ցենտներ։ Մրխչյանի կոլտնտեսությունը պարտավորվել է 416 ցենտներ, սակայն առ մեկը հոկտեմբերի արտադրել է 303 ցենտներ կաթ։

Շահումյանի անվան, Մխչյանի, Մրգաշատի և մի շարք այլ կոլտնտեսություններում վիճակը այդպիսին չէր լինի, եթե ամուր հիմքերի վրա դրված լիներ պարտիական-կազմակերպական աշխատանքը և շրջանային կոմիտեն ամենօրյա հսկողություն և օգնություն ցույց տար այդ կոլտնտեսությունների պարտիական կազմակերպություններին։

Լուրջ թերություններ կան այգեգործության բնագավառում։ Կոլտնտեսությունների խաղողի այգիներում 10—25 տոկոսով պակաս են խաղողի վազերը։ Այդ տարածությունը շրջանում կազմում է մոտ 400 հեկտար։ Բազմիցս նշվել է, որ անհրաժեշտ է լրացնել խաղողի վազերի այդ պակասը, այգիները դարձնել լիարժեք, սակայն որոշ կոլտնտեսություններ, ինչպես և պարտիայի շրջկոմը միջոցառումներ չեն կիրառել այդ ուղղությամբ։

Անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում բերքատու այգիների մշակման աշխատանքներին. խաղողի այգիների 50 տոկոսից ավելին չի հենակավորված, որի հետևանքով զգալի բերք է կորչում։ Առանձին կոլտնտեսություններում ժամանակին չի կատարվում գայլուկի մաքրումը և այլն։

Կոլտնտեսություններն անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում գյուղատնտեսական կուլտուրաների մշակության աշխատանքների մեքենայացմանը։ 1958 թվականին 2065 հեկտար բամբակի պլանտացիաներից միայն 102 հեկտարի վրա է ցանքը կատարվել քառակուսի բնային եղանակով։

Լուրջ թերություններ կան նաև անասնաբուծության բնագավառում։ 1959 թվականի անցած 9 ամիսների ընթացքում առանձին պարտիական կազմակերպություններ, կոլտնտեսությունների վարչություններ բավարար չափով չզբաղվեցին անասնաբուծության մթերքների արտադրության սոցիալիստական պարտավորությունների կատարման գործով։ Վատ է հատկապես բրդի և մսի արտադրության վիճակը. առ 1-ը հոկտեմբերի դրությամբ շրջանի կոլտնտեսությունները բրդի արտադրության ստանձնած պարտավորությունները կատարել են 34,1 տոկոսով։



Հանրային հոտի գլխաքանակի աճը հիմնականում պայմանավորված է մատղաշների ստացումով, իսկ այդ գործը շրջանում 1959 թվականին անբավարար վիճակում է։

Պարտիական կազմակերպության շրջանային ակտիվի ժողովը սեպտեմբեր ամսին քննության առնելով սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, արձանագրեց անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում առանձին կոլտնտեսությունների անբավարար աշխատանքը։ Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն քննության է առել այդ հարցը և պարտիական կազմակերպությունների հետ միասին գործնական միջոցների դիմել այդ բնագավառում եղած թերությունները վերացնելու համար։

Մենք չենք կասկածում, որ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունները կկարողանան յոթնամյա պլանի առաջադրանքները կատարել հիմնականում վեց տարում՝ 1964 թվականին, իսկ առանձին մթերքների արտադրության գծով 5 տարում՝ 1963 թվականին։ Դրա գրավականը այն լուրջ պարտավորություններն են, որոնց կատարման համար մեծ ջանքեր են գործադրվում։

ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումի հրավիրման լուրը մեծ խանդավառություն է առաջ բերել նաև Արտաշատի գյուղատնտեսության աշխատողների շրջանում։ Այժմ արտաշատցիները պայքարում են բերքահավաքը սեղմ ժամկետում կատարելու, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը արժանավայել ու բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։

# ՄԵՐ ԽՈՍՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ


**Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

ՀԿՊ Վեդու շրջկոմի քարտուղար


*Ավելի քան չորս ամիս է, ինչ Վեդու շրջանի աշխատավորները ջանք չեն
խնայում ժամկետից շուտ կատարելու ստանձնած սոցիալիստական պարտավո-
րությունները և արժանավայել դիմավորելու հարազատ պարտիայի լենինյան
Կենտկոմի հերթական պլենումը։*

*Շրջանի բոլոր պարտիական կազմակերպությունները, սովետական օր-
գանները և գյուղատնտեսության բնագավառի աշխատողները կենսագործե-
լով ՍՄԿՊ Կենտկոմի և ՀԿՊ Կենտկոմի որոշումները, զգալի հաջողությունների
են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղ-
ղությամբ։*

*Կաթի համախառն արտադրանքը շրջանում 1958 թվականին, 1955 թվա-
կանի համեմատությամբ, աճել է 2,4 անգամ, մեկ ֆուրաժային կովի կաթ-
նատվությունը՝ 1,7 անգամ, խոզի մսի արտադրությունը՝ 3,2 անգամ, ձվի
արտադրությունը՝ մոտավորապես 3,5 անգամ։*

*Շրջանում լուրջ աշխատանք է կատարվել հացահատիկային կուլտուրա-
ների բերքատվության բարձրացման ուղղությամբ։ Եթե 1955 թվականին յու-
րաքանչյուր հեկտարից ստացվել է 11 ցենտներ բերք, ապա այս տարի
ստացվեց 20,3 ցենտներ։*

*Շրջանի պարտիական կազմակերպությունները անասնաբուծության հե-
տագա զարգացումն ապահովելու համար զգալի աշխատանք են կատարել կե-
րի կայուն բազա ստեղծելու ուղղությամբ։ Եթե 1955 թվականին շրջանում
ցանվել էր 250 հեկտար եգիպտացորեն, ապա այս տարի ցանվեց 781 հեկ-
տար (չհաշված եգիպտացորենի 470 հեկտար խոզանացանը)։ Դրա շնորհիվ
այս տարի արդեն կուտակվել է 16000 տոննա սիլոս, 1955 թվականի 4066
տոննայի փոխարեն։ Բազմամյա խոտաբույսերի տարածությունը 600 հեկտա-
րից հասցվեց 900 հեկտարի։*

*Եգիպտացորենի մշակության բնագավառում որոշ տեղեր գործադրվում
է անվանի մեխանիզատորներ Մանուկովսկու և Գիտալովի փորձը։ Այս տարի
Շիրազլուի կոլտնտեսությունում տրակտորիստ Մուրթազովի նախաձեռնու-
թյամբ մշակվեց 40 հեկտար եգիպտացորեն, որի շնորհիվ մեծ չափով կրճատ-
վեց ձեռքի աշխատանքը և խիստ իջավ ստացվող մասսայի ինքնարժեքը։ Անա
կոլտնտեսության դաշտերից երկուսը, որոնցից առաջինում մշակությունը
կատարվել է Գիտալովի մեթոդով, իսկ երկրորդում՝ սովորական եղանակով։
Առաջին դեպքում 40 հեկտար եգիպտացորեն մշակելու համար ծախսվել է
188 մարդ-օր և 690 աշխօր, մեկ տոննա մասսայի արտադրության համար
ծախսվել է 0,15 մարդ-օր և 0,57 աշխօր, յուրաքանչյուր հեկտարից ստացվել*



*է 350 ցենտներ եգիպտացորենի մասսա, իսկ երկրորդի համար մեկ տոննա
մասսայի արտադրության վրա ծախսվել է 1,2 մարդ-օր և 2,2 աշխօր, յուրա-
քանչյուր հեկտարից ստացվել է 150 ցենտներ մասսա։*

*Վեդիի շրջանի բնակլիմայական պայմանները հնարավորություն են տա-
լիս մեծ չափով ընդարձակելու խաղողի և պտղատու այգիների տարածու-
թյունները։ Վերջին չորս տարում շրջանի կոլտնտեսություններում և սովխոզ-
ներում տնկվել է 1605 հեկտար խաղողի այգի և 1955 թվականի 1572 հեկ-
տարի դիմաց այժմ կա 3177 հեկտար խաղողի այգի։*

*Շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները ընթացիկ տարվա սկզբին
կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին գյուղատնտեսության բնագա-
վառում բարձր ցուցանիշների հասնելու համար։ Օրինակ, նրանք պարտա-
վորվեցին այս տարի հացահատիկային կուլտուրաների ցանքատարածու-
թյունների յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 17 ցենտների
դիմաց ստանալ 20 ցենտներ բերք։ Այդ պարտավորությունը նրանք պատ-
վով կատարեցին և յուրաքանչյուր հեկտարից ստացան 20,3 ցենտներ բերք։
Իսկ Այգավանի և Թայթանի կոլտնտեսականների անխոնջ աշխատանքի շնոր-
հիվ յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 30,2 ցենտներ հացահատիկ։ Բարձր
բերք (յուրաքանչյուր հեկտարից 24—27 ցենտներ) ստացան նաև Նոր կյանք,
Ք. Վեդու, Ավշարի, Ղարալարի, Ենգիջայի, Խալիսայի, Արարատի կոլտնտե-
սությունները։*

*Շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները լուրջ պարտավորություն-
ներ ստանձնեցին անասունների գլխաքանակի աճի և մթերատվության ավե-
լացման բնագավառում։ Առ 1-ը սեպտեմբերի դրությամբ կոլտնտեսություն-
ներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճի տարեկան պլանը
կատարվել է 116,2 տոկոսով, որից կովերինը՝ 90 տոկոսով, մանր եղջերա-
վոր անասուններինը՝ 126,9 տոկոսով, խոզերինը՝ 126,6 տոկոսով, թռչուննե-
րինը 138,5 տոկոսով։ 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատու-
թյամբ աճը կազմում է՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 104,6 տոկոս,
այդ թվում կովերինը՝ 108,5, մանր եղջերավոր անասուններինը՝ 114,5, թռ-
չուններինը՝ 242 տոկոս։*

*Շրջանը պարտավորվել է այս տարի կաթի համախառն արտադրանքը
հասցնել 6640 տոննայի։ Մինչև հոկտեմբերի մեկը կոլտնտեսությունները
կաթի արտադրության պլանը կատարել են 83 տոկոսով, իսկ պարտավորու-
թյունը՝ 78 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսությունները մսի
արտադրության պլանը կատարել են 69 տոկոսով, իսկ պարտավորությունը՝
61 տոկոսով։ Այս տարվա հունվար-օգոստոս ամիսներին, անցյալ տարվա
նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կաթի արտադրությունն աճել է
117 տոկոսով։ Այս բնագավառում առավել աչքի են ընկնում շատ կոլտնտե-
սություններ ու սովխոզներ։*

*Արմաշի սովխոզի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ե. Նի-
կողոսյան և սովխոզի դիրեկտոր ընկ. Վ. Ստեփանյան) աշխատավորության
հետ տարվող քաղաքական դաստիարակչական աշխատանքը բարելավելու,
նրանց ուժն ու եռանդը մոբիլիզացնելու և սովխոզի ռեզերվներն օգտագործե-
լու շնորհիվ այս տարվա առաջին 9 ամիսների ընթացքում, անցյալ տարվա
նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելաց-
րել է 141 տոկոսով, մեկ կովի կաթնատվությունը հասցնելով 1702 կգ։ Զորո-*

վանի կոլտնտեսությունը՝ կաթի արտադրության պլանը կատարել է 128 տոկոսով, Շիդլուինը՝ 124 տոկոսով:

Այս տարի շրջանի կոլտնտեսությունները զգալի աշխատանք կատարեցին խոզի մսի տեսակարար կշիռն ավելացնելու համար: Խալիսայի, Շաղափլուի, Նոր կյանքի, Թայթանի, Արարատի կոլտնտեսություններում այս գործն ավելի լավ հիմքերի վրա է դրված: Կարևորն այն է, որ պետությանը վաճառվում են միջակ ու միջակից բարձր գիրություն ունեցող խոզեր: Թայթանի կոլտնտեսությունում 100 մերունից ստացվել է 1800, Ղարալարի կոլտնտեսությունում՝ 1241, Նոր կյանքում՝ 905 խոճկոր:

Լուրջ հաջողություններ կան թռչնաբուծության բնագավառում: Պլանով տրված 16500 թև թռչունի դիմաց այժմ շրջանում կա 37451 թև թռչուն:

Շրջանի կոլտնտեսությունները խոստացել են այս տարի յուրաքանչյուր հեկտարից հավաքել 24 ցենտներ բամբակի բերք: Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն խնդիր է դնում բամբակագործության բնագավառում հասնել այն բանին, որ մեքենայացվեն բոլոր աշխատատար պրոցեսները և, հատկապես, բամբակի բերքահավաքը, արմատավորվի քառակուսի բնային ցանքը: Ընթացիկ տարում շրջանում քառակուսի բնային եղանակով ցանք կատարվեց 411 հեկտարի վրա. լավագույն ցուցանիշների հասան, հատկապես, Ղարալարի, Նոր կյանք և Ք. Վեդու կոլտնտեսությունները, որոնք քառակուսի բնային ցանքի շնորհիվ կրճատեցին ձեռքի աշխատանքը և իջեցրին արտադրվող հումքի ինքնարժեքը: Այսպես, օրինակ, Ղարալարի կոլտնտեսությունը քառակուսի բնային եղանակով ցանեց և մշակեց 72 հեկտար բամբակ: Ընթացիկ տարում այդ 72 հեկտարի վրա կատարված աշխատանքները կազմում են 1931 մարդ-օր և ծախսվել է 3349 աշխօր, բայց սովորական եղանակով ցանված 72 հեկտարի վրա կատարված աշխատանքն այդ նույն կոլտնտեսությունում կազմում է 2485 մարդ-օր և ծախսվել է 4208 աշխօր: Քառակուսի բնային եղանակով կատարված ցանքի շնորհիվ կոլտնտեսությունը տնտեսել է 554 մարդ-օր և 859 աշխօր և այդ դաշտերը խոստանում են բարձր բերք:

Բամբակենու վիճակը ցույց է տալիս, որ ստանձնած պարտավորությունը ոչ միայն կկատարվի, այլև մեծ չափով կգերակատարվի: Առ 21-ը հոկտեմբերի բամբակի հումքի հանձնման տարեկան պլանը կատարված է 43,5 տոկոսով:

Խաղողի այգիներն ընդարձակելու հետ միասին Վեդիի այգեգործները մեծ ջանքեր են գործադրում նրանց բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Այս տարի այգիները ժամանակին բացելու, էտելու, փորելու, սնուցելու և բուժելու շնորհիվ ստացվեց լավ բերք: Շրջանի սովխոզները պարտավորվել էին հեկտարից ստանալ 98 ցենտներ, իսկ կոլտնտեսությունները՝ 70 ցենտներ խաղող: Այդ պարտավորություններն արդեն գերակատարված են:

Շրջանի տնտեսական հաջողությունները բացատրվում են նրանով, որ պարտիայի շրջանային կոմիտեն վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարել կոլտնտեսային և սովխոզային կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, արտադրությունը գործիմաց ու փորձված ղեկավարներով ապահովելու ուղղությամբ: Շրջանի կոլտնտեսությունների 15 նախագահներից 7-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, 7-ը՝ միջնակարգ և միջնակարգ մասնագիտական կրթություն, 15 կոլտնտեսությունների նախագահներից 7 հոգի գյուղատնտեսության մասնագետներ են: Սովխոզների 7 դիրեկտորներից 5-ը ունեն գյուղատնտեսական բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն: Կոլտնտեսությունների վարչությունների նախագահներից և սովխոզների դիրեկտորներից 10-ից ավելին ունեն 10—15 և ավելի տարիների աշխատանքային փորձ:



Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են 53 բարձրագույն կրթությամբ ագրոնոմներ, զոոտեխնիկներ, անասնաբույժներ և ինժեներ մեխանիկներ: Շրջանում աշխատում են 298 մեխանիզատորներ:

Վերջին տարիներին շրջանային կոմիտեն ամրապնդեց մի շարք կոլտնտեսությունների ղեկավարությունը: Շիրազլուի կոլտնտեսությունը ետ մնացողներից մեկն էր: Այդ կոլտնտեսության մասին պարտիայի շրջկոմն անվերջ որոշումներ էր ընդունում, բայց դրանք մնում էին թղթի վրա, կոլտնտեսությունը տեղից չէր շարժվում: 1956 թվականից, կոլտնտեսության և սկզբնական պարտիական կազմակերպության ղեկավարությունն ամրապնդելուց հետո, երբ այստեղ կոլտնտեսության վարչության նախագահ ընտրվեց Թալիբ Մուսաևը և սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Մահմուդ Յուսուբովը, վիճակը փոխվեց դեպի լավը: Կաթի համախառն արտադրությունը, 1955 թվականի համեմատությամբ, այստեղ աճել է 4,3 անգամ, մեկ կովի կաթնատվությունը՝ 3,2 անգամ, ձվի արտադրությունը՝ 4 անգամ, հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 10 ցենտներից հասել է 20 ցենտների: 1955 թվականին կուտակված 103 տոննա սիլոսի դիմաց այս տարի կուտակվելու է 2000 տոննա սիլոս, այգիների տարածությունը 80 հեկտարից հասցվել է 137 հեկտարի, դրամական եկամուտը 1955 թվականի 1,04 միլիոնից աճել և հասել է 3,6 միլիոնի, կամ 4 տարվա ընթացքում դրամական եկամուտն ավելացել է 3,4 անգամ:

Նոր կյանք կոլտնտեսության վարչության նախագահ ընտրվեց պարտիայի կոչով գյուղ եկած, երևանի հազարական Զաքար Պետրոսյանը, որը լինելով բիոլոգիական գիտությունների թեկնածու, մոտիկից հասկանալով գյուղատնտեսությունը, կարճ ժամանակամիջոցում փոխեց կոլտնտեսության վիճակը: Նոր կյանք կոլտնտեսությունը հաստատ կերպով բռնեց վերելքի ճանապարհը: Այստեղ չորս տարում կաթի համախառն արտադրությունն ավելացել է 3,7 անգամ, մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 1,8 անգամ, խոզի մսի արտադրությունը՝ 4,3 անգամ, ձվի արտադրությունը՝ 7,3 անգամ, հացահատիկի բերքատվությունը 15 ցենտներից հասել է 27 ցենտների. 1955 թվականի 74 տոննա սիլոսի դիմաց այս տարի պատրաստվել է 750 տոննա, խաղողի և պտղատու այգիների տարածությունը 44 հեկտարից հասցվել է 123 հեկտարի, դրամական եկամուտը 1955 թվականի 615 հազար ռուբլուց ավելացել հասցվել է մոտ երկու միլիոն ռուբլու, կամ աճել է 3,1 անգամ:

Վերջին տարիների ընթացքում զգալիորեն ամրապնդվեցին նաև սովխոզների ղեկավար կադրերը, առանձնապես Արմաշի, Սպանդարյանի, Արագածյանի և Զովաշենի սովխոզներում:

Առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների հետ մեկտեղ մենք ունենք տնտեսապես թույլ տնտեսություններ, որոնց ղեկավարները լրիվ չեն օգտագործում եղած ռեզերվներն ու հնարավորությունները: Ենգիջայի, Շիդլուի և Թայթանի կոլտնտեսությունները գտնվում են նույնանման հողակլիմա-

յական պայմաններում։ Սակայն դրանք ունեն տարբեր ցուցանիշներ, որը
պարզ երևում է հետևյալ աղյուսակից.

100 հեկտար հողատարածության հաշվով ունեն և արտադրում են

| Կոլտնտեսություններ | Խոշոր եղջ. անս. | որից կովեր | Խոզեր | Ոչխարներ | Թռչուններ | Արտադրվել է միս (ցենտ.) | Կաթ | Բուրդ (կգ) | Ձու. |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Թայթան | 61 | 18 | 50 | 542 | 1791 | 40 | 278,1 | 680 | 31,3 |
| Ենգիջա | 41 | 9 | 35 | 169 | 1239 | 9.7 | 131,8 | 113 | 6, 3 |
| Շիդլու | 26 | 8 | — | 134 | 235 | 16,8 | 77,5 | 68 | 3,2 |

Աղյուսակից երևում է, որ Թայթանի կոլտնտեսությունը մյուս երկու կոլ-
տնտեսությունների նկատմամբ զգալի չափով առաջ է անցել։ Այդ կարելի է
բացատրել ղեկավարման մակարդակով։ Ենգիջայի և Շիդլուի կոլտնտեսու-
թյունների բրիգադավարների ու ֆերմայի վարիչների մեծամասնությունն աշ-
խատանքում իրեն չի արդարացնում։ Պարտիական կազմակերպությունները
փոխանակ լրջորեն զբաղվելու երիտասարդ կադրերի աճեցման և ընդունակ
ընկերներին առաջ քաշելու հարցով, բռնել են դիմադրության թույլ և ոչ պար-
տիական ուղին՝ ընկերների խաթրին չկպչելու, հարաբերությունները չփչաց-
նելու ուղին։ Այս հարցում պակաս մեղք չունեն նաև շրջկոմը և նրա բյուրոն,
որ մոտիկից ու կոնկրետ չեն զբաղվում այդ տնտեսությունների բրիգադա-
վարների, ֆերմաների վարիչների ու մասնագետների և ընդհանուր առմամբ
ղեկավարների ընտրության հարցով։

Շրջանի որոշ կոլտնտեսություններ (Ղարալար, Ավշար) ու սովխոզներ
(Կիրովի անվան, Սպանդարյան) փոխանակ ավելացնելու կաթի և մսի արտա-
դրությունը, ընդհակառակն, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համե-
մատությամբ, խիստ իջեցրել են։

Առանձին կոլտնտեսություններում և սովխոզներում դեռևս վերջ չի տըր-
ված այն դատապարտելի պրակտիկային, երբ պետությանն են հանձնվում չգի-
րացված ու բտման տակ չդրված անասուններ։ Շրջանի կոլտնտեսություն-
ների կողմից պետությանը հանձնված խոշոր եղջերավոր անասունների միջին
քաշը կազմում է 230 կգ, սակայն առանձին կոլտնտեսություններ հանձնել
են խիստ ցածր քաշով անասուններ։ Եթե Շիրազլուի, Նոր կյանքի, Ենգիջայի
կոլտնտեսությունները պետությանը հանձնել են միջինը 270—290 կգ քաշ
ունեցող անասուններ, ապա Գորովանի կոլտնտեսությունը հանձնել է մի-
ջինը 183, Թայթանինը՝ 191 կգ, իսկ Շաղափլուի և Այգավանի կոլտնտեսու-
թյունները՝ 23—35 կգ կենդանի քաշ ունեցող ոչխարներ և այլն։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու կարևոր
պայմանը անասունների գլխաքանակի ավելացումն է՝ հանրային հոտի վերար-
տադրության միջոցով։ Վեդիի շրջանի պարտիական ու սովետական կազմա-
կերպությունները, ինչպես նաև կոլտնտեսությունների և սովխոզների ղեկա-
վարներն այս ուղղությամբ անբավարար են կատարում իրենց վերցրած պար-
տավորությունները։ Բավական է ասել, որ մինչև սեպտեմբերի 1-ը 100 կովից
ստացվել է 65 հորթ, իսկ 100 մայր ոչխարից կոլտնտեսություններում՝ 85,



սովխոզներում՝ 76 գառ։ Առանձին կոլտնտեսություններում և սովխոզներում
ավելի քիչ է ստացվել։

Շրջանի տնտեսության զարգացման այս ցուցանիշները խոսում են այն
մասին, որ առանձին կոլտնտեսությունների վարչությունները, սովխոզների դի-
րեկտորները և սկզբնական պարտիական կազմակերպությունները ինչպես հար-
կըն է չեն զբաղվում անասնաբուծության հարցերով։ Այն սովխոզներում ու
կոլտնտեսություններում, որտեղ ղեկավարները կոնկրետ, գործարար կերպով
զբաղվում են տնտեսության ղեկավարման հարցերով, ինչպես հարկն է ծավա-
լում են կազմակերպչական աշխատանք, հասնում են որոշակի հաջողություննե-
րի, իսկ այնտեղ, որտեղ աշխատավորների հետ տարվող քաղաքական դաս-
տիարակչական և կազմակերպական աշխատանքը փոխարինվել է ընդհանուր
կոչերով ու խոստումներով, այնտեղ վտանգի տակ է դրվել ինչպես պլանների,
այնպես էլ ստանձնած պարտավորությունների կատարումը (Գորովան, Խալե-
սա, Շիդլու, Բ. Վեդի)։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն պարտիական կազմակերպություն-
ների առջև մարտական խնդիր է դրել՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել ետ
մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու, առաջավոր կոլ-
տնտեսություններին հասցնելու համար։ Ելնելով Կենտրոնական Կոմիտեի
այդ պահանջից, պարտիայի Վեդու շրջանային կոմիտեն ձգտում է հասնել այն
բանին, որ շրջանում չլինեն ոչ մի ետ մնացող կոլտնտեսություն, սովխոզ,
բրիգադա, ֆերմա. այդ խնդրի կատարման համար պետք են գործունյա և
բանիմաց ղեկավարներ։ Անհրաժեշտ է կադրերի հարցում լրիվ կենսագործել
պարտիայի ցուցումը. երբ աշխատողն իրեն չի արդարացնում, առաջադրված
պլանների կատարումը չի ապահովում, գործի նկատմամբ ցուցաբերում է ան-
պատասխանատվություն, անհրաժեշտ է առանց վախենալու ազատվել նրանից
և նրա տեղը նշանակել ընդունակ, երիտասարդ ընկերոջ։

Վեդու շրջանի կոլտնտեսությունները լարելով իրենց ջանքերը, պետու-
թյանը կաթի վաճառքի ընթացիկ տարվա պլանը կատարել են 105, մսինը՝
114, որից խոզի մսինը՝ 129, բրդինը՝ 118,5, խաղողինը՝ 180 տոկոսով։
Չհանգստանալով ձեռք բերված հաջողություններով, նրանք պարտիական
կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ հետևողական աշ-
խատանք են ծավալում սոցիալիստական բոլոր պարտավորությունները ժամ-
կետից շուտ կատարելու և ՍՄԿՊ Կենտկոմի հերթական պլենումը գյուղա-
տնտեսական մթերքների արտադրության բնագավառում ձեռք բերած նորա-
նոր հաջողություններով դիմավորելու համար։

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ՋԱՏԱԳՈՎՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

Բ. ՄՆՋՐԱԲՅԱՆ

Մեր ժամանակը համաշխարհային պատմության մեջ կմտնի որպես մարդկության կյանքի ամենախոր փոփոխությունների դարաշրջան, որոնք առաջացել են կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի գոյացմամբ։ Այդ փոփոխությունների շարքում կարևոր տեղ է գրավում հասարակության կյանքից պատերազմը բացառելու ռեալ հնարավորության ստեղծումը, որն ուղեկցվում է պատերազմի ջատագովության սնանկացմամբ, իսկ խաղաղության գաղափարը դառնում է արդիականության տիրապետող գաղափարը։ Այդ պրոցեսում գործնական վիթխարի ներդրում էր Ն. Ս. Խրուշչովի միսիան Ամերիկայի Միացյալ Նահանգները, որ պատմական դեր խաղաց ընդհանուր խաղաղությունն ապահովելու գործում։

***

Եթե բուրժուական հասարակարգի հաղթանակը ուղեկցվում էր ֆեոդալական-միստիկական գաղափարների, քրիստոնեական-կրոնական դոգմաների դեմ կատարված գրոհով և «երեք աստվածուհիների»՝ «ազատության», «հավասարության» և «եղբայրության» պաշտպանությամբ մատերյալիստ մտածողների հիանալի պլեադայի հանդես գալով, ապա կապիտալի տիրապետության հաստատմամբ սկսվեց բուրժուազիայի գաղափարախոսների նահանջն անցյալի հումանիստական գաղափարներից։ Սկսվեց բռնության ու պատերազմի փառաբանումը։ Պատերազմին սկսեցին խունկ ծխել ու փառաբանել ո՛չ միայն կապիտալի սոցիոլոգները, այլև բուրժուական գիտության ու արվեստի, գրականության և կրոնի այն ներկայացուցիչները, որոնք իրենց նվիրել էին մոլեռանդ կերպով հասարակության անհավասարության սիստեմին ծառայելուն։

Կատարելով կապիտալի կամքը, որը պատերազմը դարձրել է իր տիրապետության կարևորագույն գործիքներից մեկը, բուրժուական հասարակական-քաղաքական միտքը մշակել է պատերազմների բազմաթիվ կոնցեպցիաներ։ Եվ դրանք բոլորն էլ, սկսած ամեն տեսակ նատուրալիստական, բիոլոգիական, ռասայական, դեմոգրաֆիական, աշխարհագրական կոնցեպցիաներից մինչև հոգեբանական, իդեոլոգիական, ռազմա-ստրատեգիական կոնցեպցիաները, որոնք զուրկ են գիտական որևէ արժեքից, քարոզվում էին հօգուտ բուրժուազիայի, որի շահերին էլ համապատասխանում էր պատերազմը։ Պատերազմի ջատագովությունը լայն թափ ստացավ XX դարում։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջացմամբ նա սկսեց գրավել կենտրոնական տեղերից մեկը իմպերիալիզմի քաղաքական գաղափարախոսության



մեջ։ Այն սկսեցին օգտագործել որպես իմպերիալիստական տերությունների ներքին և միջազգային քաղաքականության մեջ ուժի դերի աճը պաշտպանելու և արդարացնելու միջոց։ Ուժի և պատերազմի փառաբանումը դարձավ կապիտալիզմի սիստեմի հավերժացման և սոցիալիզմը խափանելու կարևոր գործիք։ Այն դարձավ երկրորդ համաշխարհային պատերազմի իդեոլոգիական նախապատրաստման և սանձազերծման գործիք միջազգային իմպերիալիզմի ծայրահեղ ռեակցիոն թևի՝ գերմանական ֆաշիզմի ձեռքում։

Պատերազմի ջատագովությունն իմպերիալիստական առաջատար տերությունների կիսապաշտոնական գաղափարախոսության աստիճանի բարձրացավ սկսած այն ժամանակից, երբ Միացյալ Նահանգների կառավարող շրջանները հայտարարեցին «գերիշխող ամերիկյան ազդեցության» դարի սկսվելու մասին։ Բուրժուական սոցիոլոգիան նոր եռանդով գլխավորեց պատերազմի փառաբանումը։ Պատերազմների մշտնջենականության գաղափարը և ժողովուրդներից պատերազմի իսկական պատճառները թաքցնելու ձգտումն առանձնահատուկ հոգատարության առարկա դարձան։

Պատերազմի ջատագովությունն իր գագաթնակետին հասավ այն ժամանակ, երբ իմպերիալիզմի գաղափարախոսները սկսեցին հաստատապես հավատալ ատոմային զենքի բացարձակ կործանիչ ուժին և այն բանին, թե այդ զենքին մոնոպոլ կերպով տիրապետում են ԱՄՆ-ը։ Այդ ժամանակ ընդլայնվեց պատերազմի հոգեբանական նախապատրաստման հետ կապված հարցերի շրջանը, որի մեջ մտցվեցին ո՛չ միայն պատերազմների մշտնջենականության և անխուսափելիության, նրանց «պրոգրեսիվ» դերի «ապացույցները», այլև պատերազմ վարելու նորագույն միջոցների՝ միջուկային զենքի արդարացումները։ Ատոմային ռումբը հռչակվեց որպես զենքի «իդեալական» տեսակ սոցիալիստական երկրների դեմ նախապատրաստվող պատերազմում։ Ամերիկյան սոցիոլոգներ Ջ. Բառնհեմը, Նորը, Բոդենը, Հեսսլերը և ուրիշներ քիչ ջանքեր չեն նվիրել մասսայական ոչնչացման զենքի կիրառման բարեբարությունն ապացուցելուն։ Ատոմային պսիխոզը հասավ այնպիսի ուժի, որ համակեց նաև բնախույզներին։ Ամերիկյան այնպիսի հայտնի ֆիզիկոսներ, ինչպիսիք են՝ Տելլերը, Բեչերը և ուրիշներ, փութաջանորեն արդարացնում էին ատոմային զենքը, հորինելով մի հակագիտական կոնցեպցիա, որը նրանք անվանել են «ատոմային ռումբի ստեղծման էթիկա»։

Միջուկային պատերազմից խուսափելու միակ ճանապարհը իմպերիալիզմի որոշ սոցիոլոգներ (Էմերի Ռևես, Կլոյդ Իգլտոն, Ջեյմս Քերր-Պոլլոկ և ուրիշներ) տեսնում էին համաշխարհային պետություն, համաշխարհային ֆեդերացիա, համաշխարհային կառավարություն ստեղծելու մեջ։ Ամերիկյան սոցիոլոգիան ձգտում էր ապացուցել, որ «ատոմի ճեղքման դարում» արմատական փոփոխությունների են ենթարկվում հասարակական զարգացման օրենքները՝ հասարակական կյանքը դառնում է ատոմային և ջրածնային «ամենազոր» էներգիայի ու ռումբի հավելուկ։ Առաջ քաշվեց վերսիա այն մասին, թե իբր ատոմային զենքի ստեղծմամբ խզում առաջացավ տեխնիկական զարգացման մակարդակի և մարդկության բարոյական, քաղաքական ու սոցիալական հասունության մակարդակի միջև, թե այդ խզումն է կատաստրոֆա սպառնում և այդ «խզումը» վերացնելու միակ միջոցը «համաշխարհային պետության», «համաշխարհային կառավարության» ստեղծումն է։ Այդ գաղափարը պաշտպանեցին նաև անգլիական սոցիոլոգները։ Անգլիական հայտնի պատ-

մաբան Առնոլդ Թոյնբին բազմիցս համոզմունք է հայտնել, թե «միայն համաշխարհային պետությունը կարող է կանխել ատոմային ռումբի գործողությունը»։ Այլ կերպ ասած, ֆետիշացնելով տեխնիկայի դերը, բուրժուական սոցիոլոգիան ֆիզիկական գիտության հաջողություններից քաղաքական աղճատված հետևություններ էր անում և դրանք օգտագործում իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների շահերի օգտին։

Պատերազմի իմպերիալիստական ջատագովության մեջ կարևոր տեղ գրավեց հակակոմունիզմի խրտվիլակը։ Կեղծելով պատմական իրադարձությունների իմաստը, իրենց հայտարարելով ազատության և դեմոկրատիայի կողմնակիցներ, իմպերիալիզմի գաղափարախոսները պատերազմի նախապատրաստումն ու նրա ջատագովումը բացատրում են որպես մի անհրաժեշտություն, որը թելադրվում է «կոմունիստական վտանգը» կանխելու ձգտումով։

Դրանով իսկ նրանք ուզում են թաքցնել մոնոպոլիաների շահերի օգտին հրահրվող ռազմական պսիխոզի իսկական պատճառները։ Նրանք թաքցնում են, որ պատերազմի նախապատրաստումը դարձել է կապիտալիստական աշխարհի տնտեսական և քաղաքական կյանքի հիմքերից մեկը։ «Սառը պատերազմը» դարձել է առևտրական մի վիթխարի ձեռնարկություն։ Զենքի նոր տեսակների պահանջարկը դարձել է խոշոր մոնոպոլիստական կորպորացիաների շահույթների մշտական աղբյուր։ Ավելին, սպառազինությունների մրցավազքի մեջ մոնոպոլիաները տեսնում են արտադրության բարձրագույն մակարդակը խթանելու և տնտեսական ցնցումներից խուսափելու միջոց։ Բայց իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները «սառը պատերազմը» օգտագործում են նաև քաղաքական նպատակներով։ Ռազմա-քաղաքական մեխանիզմը ռազմականացման արդյունք է, որի ուղղակի կոչումն է՝ հաստատել կապիտալի անսահման իշխանությունը երկրի ներսում և խեղդել դեմոկրատական շարժումներն ամբողջ աշխարհում։ Ահա ինչու, Կ. Մարքսի խոսքերով ասած, «ոտնահարելով մարդկային բոլոր օրենքները», կապիտալը խելահեղ կերպով վատնում է ուղղակի կամ անուղղակի կերպով պատերազմի նախապատրաստման մեջ ներգրավված 100 միլիոնից ավելի մեր ժամանակիցների ուժն ու էներգիան։ Իսկ կապիտալի ծայրահեղ ռեակցիոն թևը փառաբանում է ուժի և պատերազմի քաղաքականությունը։

Սակայն, ուժի և պատերազմի ջատագովությունը, որն առաջացել էր կապիտալիզմի զարգացման ամբողջ ընթացքով և իր գագաթնակետին էր հասել երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, չդիմացավ խաղաղության և միջազգային համագործակցության գաղափարների դեմ մղվող պայքարի փորձություններին։ Նա անկարող գտնվեց ստեղծելու նոր պատերազմի իդեոլոգիական հողը։ Նա չապահովեց մասսաների բարոյական նախապատրաստումը պատերազմի և պարտություն կրեց խաղաղության առաջընթաց շարժման կենսահաստատ գաղափարների դեմ մղվող պայքարում։ Այդ ուղղությամբ որոշիչ դեր խաղացին այն փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել պատերազմի և խաղաղության ուժերի հարաբերակցության մեջ։ Կարճատև ժամանակամիջոցում սոցիալիզմը դարձավ համաշխարհային անպարտելի մի սիստեմ։ Սա արդեն հասարակական զարգացման այն փուլն էր, երբ ուժերի փոխհարաբերությունն արմատապես փոխվեց հօգուտ սոցիալիզմի։ Վերջինիս արագընթաց զարգացման ու հզորության անկապտելի փաստը կապիտալիզմի



գաղափարախոսների շրջանում հարուցեց տարբեր սիստեմների փոխհարաբերությունների բնույթը փոխելու անհրաժեշտության պատկերացումը։

Պատերազմի և խաղաղության հարցերի վերաբերյալ ժամանակակից կապիտալիզմի քաղաքական գաղափարախոսության անկյունաքարային «արժեքների» վերագնահատմանը նպաստեց նաև Արևելքի ու Աֆրիկայի ժողովրդի քաղաքական զարթոնքը։ Նրանք, ովքեր երկար տարիներ ու դարեր աշխարհի բոլոր երկրներում եղել են միայն համաշխարհային քաղաքականության օբյեկտ, սկսել են դառնալ այդ քաղաքականության սուբյեկտ, իրենց բախտի ակտիվ կերտողներ։

Սակայն տիրապետող դասակարգի գաղափարախոսության հանգուցային դրույթների վերագնահատումը բարդ երևույթ է։ Հատկապես, երբ խոսքը պատմականորեն իր դարն ապրած, բայց աշխարհի մեծ մասում դեռ տիրապետող դասակարգի գաղափարախոսության մասին է։ Այս դեպքում որոշ շփոթ է առաջանում այդ գաղափարախոսությունն ստեղծողների շարքերում։ Այդ շփոթն արտահայտում է, նախ՝ բուրժուազիայի տարբեր շրջանների շահերի խորացող դիֆերենցիացիան, նրանց ոչ միատեսակ մոտեցումը կապիտալիզմի և սոցիալիզմի փոխհարաբերությունների պրոբլեմի լուծմանը և, երկրորդ, վկայում է այն մասին, թե իմպերիալիստական գաղափարախոսությունն ինչպես է հարմարվում նոր պայմաններին, կատարելով իր սպասարկուի դերը մոնոպոլիստական վերնախավերի նկատմամբ։ Իմպերիալիզմի գաղափարախոսների ծայրահեղ ռեակցիոն, առավել պահպանողական մասը շարունակում է կառչած մնալ հնացած հասկացողություններին։ Միևնույն ժամանակ նրա հեռատես գաղափարախոսները փորձում են ըմբռնել տեղի ունեցող փոփոխությունները և իրենց գործունեությունը համակերպել դրանց հետ։ Բայց այդ բանը նրանք անում են միայն իրենց դասակարգային շահի նկատառումով, աշխատում են շրջապատում տեղի ունեցող երևույթներին տալ այնպիսի մեկնաբանում, որը կարող է ծառայել իր սպասարկած դասակարգի շահերին։ Ուստի նույնիսկ կանգնելով իրականության գնահատման նկատմամբ իրենց վերաբերմունքը փոխելու անհրաժեշտության առաջ, նրանք անընդունակ են լինում հաղթահարելու հասարակական կյանքի երևույթների սուբյեկտիվիստական ընկալման նեղ շրջանակները։ Դասակարգային շահի սահմանները հնարավոր չեն դարձնում հասարակական զարգացման օբյեկտիվ գնահատումը։ Սա մի կողմից։ Իսկ մյուս կողմից, պատմության անողոք երթը իմպերիալիստների գաղափարախոսներին պարտավորեցնում է վերագնահատել հակադիր հասարակական սիստեմների ուժերի հարաբերակցության վերաբերյալ իրենց երբեմնի պատկերացումները։ Նրանք հարկադրված բռնում են իրականությունն ավելի ռեալիստորեն գնահատելու միակ ուղին, քանի որ խոսքն արդեն կապիտալիզմի՝ որպես սիստեմի բախտի մասին է։ Այդպիսի անհրաժեշտության ուղղակի հետևանքն է խաղաղ գոյակցության գաղափարի վերածումը կապիտալիզմի քաղաքական գաղափարախոսության նոր տենդենցի։

Դեռևս 1956 թվականին ամերիկյան հայտնի սոցիոլոգ Լյուիս Մեմֆորդը և անգլիական փիլիսոփա Բերտրան Ռասսելը, համոզվելով, որ վերացել է ատոմային զենքի ԱՄՆ-ի մոնոպոլիան, արտահայտվեցին պատերազմից՝ որպես միջազգային վիճելի պրոբլեմները լուծելու միջոցից հրաժարվելու օգտին։ «Իռացիոնալ տարրերն արվեստի քաղաքականության մեջ» հոդվածում Լ. Մեմֆորդը, ընդգծելով, որ ռազմական տեխնիկայի հաջողությունները մարդ-

կությանը կանգնեցրել են «ընդհանուր կործանման» սպառնալիքի առաջ, կոչ
էր անում հրաժարվել պատերազմի քաղաքականությունից, այն փոխարինել
համընդհանուր սիրով, այդ թվում և սիրով դեպի թշնամիները: Ուժի քաղաքա-
կանությունը մերձավորի նկատմամբ քրիստոնեական սիրով փոխարինելու
այսպիսի քարոզն անգամ էական տեղաշարժ էր Լ. Մեմֆորդի համար, որը
դեռ 1947 թվականին տարվել էր ՍՍՌՄ-ի դեմ ատոմային բլիցկրիգի պլան-
ներով և բազմիցս պահանջում էր «ուլտիմատում» ներկայացնել Սովետական
Ռուսաստանին: Ուժի քաղաքականությունը խաղաղ կարգավորման քաղաքա-
կանությամբ փոխարինելու գաղափարով հանդես եկավ նաև Բերտրան Ռաս-
սելը: Մի շարք հոդվածներում և Լոնդոնի ռադիոյով ունեցած ելույթներում
անգլիական փիլիսոփան արդեն 1954 թվականի վերջերից անց էր կացնում
այն միտքը, որ նոր պատերազմի, որպես միջազգային վեճերի կարգավորման
միջոցի մասին ամեն տեսակ խոսակցություններ պետք է մի կողմ շպրտվեն:
Նա կոչ էր անում «ամենաակտիվ միջոցները ձեռք առնել, որպեսզի երկու
կողմերին համոզել միաժամանակ հրաժարվելու պատերազմի՝ որպես քաղա-
քականության գործիքի սպառնալիքից»:

Ծագելով 1954 թվականին, որպես սոցիալիզմի և կապիտալիզմի ուժերի
հարաբերակցության նոր, ռեալիստական գնահատման արտահայտություն,
երկու սիստեմների խաղաղ գոյակցության անհրաժեշտությունը ճանաչելու
գաղափարը բուրժուական գաղափարախոսության մեջ տարածվում էր համաշ-
խարհային սոցիալիստական սիստեմի հաջողություններին և իմպերիալիզմի
ագրեսիվ քաղաքականությանը դիմադրող բոլոր ուժերի հաջողություններին
ուղիղ հարաբերականորեն: Իսկ այդ հաջողություններն իրենց արտահայտու-
թյունը գտան նաև այն բանում, որ ԱՄՆ-ի ատոմային մենաշնորհը վերանա-
լուց անմիջապես հետո հօդս ցնդեցին նաև միջուկային զենքի ասպարեզում
ամերիկյան գերազանցության վերաբերյալ պատրանքները: Այն ժամանակ
Արևմուտքում ավելի զգալի սկսեց հնչել անխուսափելի խաղաղ գոյակցու-
թյան գաղափարը: 1956 թվականին Բ. Ռասսելը գրում էր, որ «այժմ պատե-
րազմն այնքան զարհուրելի է դարձել, իսկ կոմունիզմն այնքան ուժեղ, որ ոչ
ոք չի կարող ասել թե ինչ կմնար համաշխարհային պատերազմից հետո...»,
«մենք կարող ենք կամ միասին ապրել, կամ միասին մեռնել»: 1956 թվակա-
նին նույն ոգով արտահայտվեց Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր, իրա-
վունքի դոկտոր Վ. Ֆրիդմանը: Նրա «Համաշխարհային քաղաքականության
ներածություն» աշխատության հիմնական գաղափարները հանգում էին այն
մտքի հաստատմանը, որ ջերմամիջուկային զենքի ներկա զարգացման պայ-
մաններում «մեծ» պատերազմը Եվրոպայում պատմության մեջ առաջին ան-
գամ դադարել է միջազգային քաղաքականության պիտանի միջոց լինելուց:
Նմանօրինակ մտքերով հանդես եկան նաև կանադական հայտնի փիլիսոփա,
պրոֆեսոր Մակգիլ Ջորջ Քեթլինը 1957 թվականին, Հանս Ռոտֆելսը Ֆեդերալ
Գերմանիայում և ժամանակակից կապիտալիզմի գաղափարախոսության ուրիշ
շատ ներկայացուցիչներ:

Հարկադրված լինելով ընդունել պատերազմից, որպես համաշխարհային
քաղաքականության վիճելի հարցերը լուծելու միջոցից հրաժարվելու անհրա-
ժեշտությունը, նրանք, սակայն, չեն ցանկանում բացահայտել իրենց հայացք-
ների էվոլյուցիայի պատճառները: Ընդհակառակը: Կապիտալիզմի գաղափա-
րախոսներից և քաղաքական գործիչներից ամենից ավելի վճռականներն ան-



գամ, որոնք ունեն «հակակոմունիզմի մեծ պատենտ», փութաջանորեն մաս-
սաների ուշադրությունը շեղում են պատմական օրինաչափությունը ըմբռ-
նելուց: Ջանասիրությամբ թաքցնելով համաշխարհային նոր պատերազմի դեպ-
քում կապիտալիզմի բախտի նկատմամբ իրենց շվարած վիճակը, նրանք
փորձում են պատերազմի և խաղաղության հարցերի վերաբերյալ իրենց հա-
յացքների փոփոխություններին տալ տեսական այնպիսի հիմնավորում, որը
թեկուզ արտաքուստ չհակասի իրենց գաղափարախոսության դոգմաներին:

Նշանակալի և բնորոշ կերպարանափոխություն. նրանք, ովքեր ատոմային
զենքի նկատմամբ ԱՄՆ-ի մոնոպոլիայի ժամանակաշրջանում անսահմանա-
փակ ատոմային պատերազմի կոչ էին անում ընդդեմ սոցիալիզմի, հենվելով
ատոմային ռումբի վիթխարի կործանիչ ուժի վրա, այժմ, երբ միջուկային զենք
ունի ՍՍՌՄ-ը ևս, նույն փաստարկն օգտագործում են տրամագծորեն հակա-
ռակ միտքն արդարացնելու համար: Հակառակ փաստարկումներով լի այդպի-
սի հակադիր դատողությունների մեջ հանդես է գալիս նրանց հավասարա-
պես գիտական և քաղաքական սնանկությունը:

***

Աբսոլյուտի աստիճանի բարձրացված բռնության հին դոգմաներին սո-
ցիալիզմը հակադրել է իր լուսաճաճանչ գաղափարները, որոնք լուսավորում
են ժամանակակից մարդկության ուղին: Հաղթական սոցիալիզմը հասարակ
մարդկանց սրտերը լցրել է պատերազմի և ավերածությունների դարավոր ու-
ժերի նկատմամբ բանականության հաղթանակի դարաշրջանի սկսվելու հավա-
տը: Համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմը ռեալ
հնարավորություններ ստեղծեց իրականություն դարձնելու երկրի վրա խաղաղ
կյանքով ապրելու մարդկանց դարավոր երազանքը: Նա մարդուն ստիպեց հա-
վատալ իր ստեղծագործ ուժերի վեհությանը և հումանիզմի գաղափարների
հաղթանակին: Եվ դրա մեջ է գիտական սոցիալիզմի անօրինակ ծառայու-
թյունը պատմության հանդեպ, մարդկության հանդեպ:

Ժողովրդական մասսաների մեծ զարթոնքը և նրանց ավելի ու ավելի ակ-
տիվ մասնակցությունն արդիականության արմատական պրոբլեմների լուծ-
մանը՝ դա ո՛չ միայն գիտական սոցիալիզմի գաղափարախոսության հսկայա-
կան ներգործության արդյունքն է, գաղափարախոսություն, որի բաղկացուցիչ
մասն են խաղաղության գաղափարները, այլև պատերազմը հասարակության
կյանքից վերացնելու պայմանը: Պատմական ստեղծագործության եկած մաս-
սաների մտքի ու սրտի մեջ խոր թափանցում են խաղաղության և ժողովուրդ-
ների բարեկամության հասարակ ու պարզ գաղափարները, որոնք ազատ են
մահացող կապիտալիզմի քաղաքական գաղափարախոսության ննենգությունն-
ներից: Ցանվելով մասսաների աճած քաղաքական գիտակցության պարարտ
հողում, դրանք դառնում են միջազգային հարաբերությունների բնույթը փո-
խող հզոր լծակ: Պերճախոս կերպով այդ են վկայում Ն. Ս. Խրուշչովի՝ Ամե-
րիկայի Միացյալ Նահանգները կատարած այցելության ընթացքն ու արդ-
յունքները:

Սովետական կառավարության ղեկավարի պատմական միսիան ԱՄՆ
մեր դարի խորհրդանշանն է: Այն հանդիսացավ սոցիալիզմի նոր ջանքերի
արտահայտությունը, որոնց նպատակն է՝ նպաստել ժողովուրդ-
գործնական

ների և պետությունների միջև այնպիսի բնույթի հարաբերությունների հաստատմանը, որոնք համապատասխանեն մեր դարի նվաճումներին։ Միացյալ Նահանգներից վերադառնալուց հետո հանդես գալով Մոսկվայի աշխատավորների միտինգում, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «XX դարը մարդու բանականության, տաղանդի մեծագույն ծաղկման դար է։ Մեր օրերին մարդիկ իրենց ձեռքերով իրականացնում են այն, ինչը դարեր շարունակ երազել է մարդկությունը, այդ երազանքները արտահայտելով անիրագործելի երևակայություն թվացող հեքիաթների ձևով... Եվ մի՞թե բնության գաղտնիքների մեջ թափանցող և նրա հզոր ուժերին տիրապետող մարդկային հանճարի ծաղկման այս ժամանակներում կարելի է հաշտվել մարդկանց նախնադարյան հարաբերությունները պահպանելու հետ, երբ մարդը գազան էր»։

Բարի կամքի միսիայով ԱՄՆ կատարած իր ուղևորությամբ Ն. Ս. Խրուշչովն ինքը պատասխանեց դրված հարցին։ Այդ պատմական ակտով Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարն ակնառու կերպով ապացուցեց, որ այժմ ոչ մի բանով չի կարելի արդարացնել այնպիսի հարաբերությունների պահպանումը, որոնք գոյություն են ունեցել նախնադարյան մարդկանց միջև։ Նա հաստատեց այն միտքը, որ «մեր ժամանակը կարող է և պետք է դառնա մեծ իդեալների իրականացման ժամանակ, խաղաղության և առաջադիմության ժամանակ»։ Այդ մտքի արդարացիության բնորոշ և համոզիչ իրեղեն ապացույցը սովետական լուսնային հրթիռի հաջող արձակումն էր, որը նշանակալի կերպով զուգադիպեց սովետական կառավարության ղեկավարի այցելությանը։

Ն. Ս. Խրուշչովի ուղևորությունն օվկիանոսից այն կողմ և հրթիռի արձակումը դեպի լուսին՝ դրանք սոցիալիզմի քաղաքական և գիտական խիզախումն են։ Դրանցից ամեն մեկը յուրովի է մարմնավորում դարաշրջանի պահանջը, ծառայում ամբողջ մարդկության շահերին։ Ահա ինչու այդ երկու իրադարձությունն այդքան լայն արձագանք գտան աշխարհի բոլոր երկրների բոլոր մարդկանց սրտերում։

Ն. Ս. Խրուշչովի այցելությունն ԱՄՆ՝ ժամանակակից կապիտալիզմի միջնաբերդը, խաղաղության մեծ միսիան էր։ Այդ միսիան չէր կարող բուռն ռեակցիա առաջ չբերել Միացյալ Նահանգների բնակչության բոլոր խավերի մտքերում։ Եվ, եթե խոսենք այդ այցելության ամենանշանակալի արդյունքի մասին, ապա հարկավոր է, ամենից առաջ, ընդգծել այն խոր ներգործությունը, որ ամերիկացիների վրա ունեցան Ն. Ս. Խրուշչովի հասարակ, պարզ և ժողովրդական իմաստությամբ լի խոսքերը խաղաղության, ժողովուրդների բերակամության մասին։

Կրքոտությամբ, դրա հետ մեկտեղ համբերությամբ Խրուշչովը բացատրում, համոզում և ձգտում էր, որ հասկանան իրերին ժամանակակցի աչքերով նայելու անհրաժեշտությունը, պատմական փաստերը ճանաչեն այնպես, ինչպես դրանք կան և իրենց մտքերն ու գործողությունները համակերպեն իրականությանը։ Անխոնջ կերպով բացատրելով մոլորվողներին, վճռականորեն հակահարված տալով չարամիտներին՝ նա քարոզում էր ամենահումանիստական գաղափարներ, ջախջախելով այն պատկերացումները, որոնք երկար տարիներ տարածում էր ռեակցիոն պրոպագանդան, ամերիկյան ժողովրդին պատվաստելով հակակոմունիզմի ոգին։ Ն. Ս. Խրուշչովին լսում էին, նրա ճառերն ամփոփում էին Ամերիկայի բանվորներն ու ֆերմերները, ուսանողներն ու տնտեսական տնտեսուհիները...



նային տնտեսուհիները, քաղաքական գործիչներն ու գործարար շրջանների ներկայացուցիչները։ Եվ թեպետ ռեակցիան բոլորի մոտ միատեսակ չէր, բայց այն կար բոլորի մոտ էլ։ Յուրաքանչյուր ամերիկացի առանձին վերցրած և շատ ամերիկացիներ միասին պետք է դարձյալ մտածեին իրենց բախտի մասին, մարդկության ներկայի ու ապագայի մասին։ Ն. Ս. Խրուշչովի ելույթները, ճառերը, զրույցները ամերիկյան հողի վրա անկասկած խարխլեցին պատերազմի ջատագովությունը, հնչեցին որպես աշխարհի ժողովուրդներին և նրանց կառավարություններին ուղղված կոչ՝ ընդդեմ պատերազմի, հանուն միջազգային համագործակցության։

Ն. Ս. Խրուշչովի այցելությունը Միացյալ Նահանգներ կարծես ֆոկուսի մեջ արտացոլեց այն խոր պրոցեսները, որոնք, փոխելով ժամանակակից աշխարհի դեմքը, պայմանավորում են փոփոխությունները ժամանակակից կապիտալիզմի գաղափարախոսների կոնցեպցիաներում և նրա պարագլուխների պրակտիկայում՝ մեր ժամանակի կենտրոնական պրոբլեմի՝ պատերազմի և խաղաղության պրոբլեմի, հասարակական տարբեր սիստեմների փոխհարաբերությունների պրոբլեմի վերաբերյալ։ Եվ բնավ պատահական չէ, որ Ֆրանսիայի ռեակցիոն փիլիսոփա Ռայմոն Արոնը ծայրահեղ աջ «Ֆիգարո» թերթում գրել է. «Խրուշչովի ուղևորությունը ո՛չ թե դիվանագիտական, այլ հասարակական, մարդկային իրադարձություն է, և դա լուսավորում է մեր դարաշրջանի որոշ կողմերը, օգնում է հասկանալու մեծ տերությունների և մրցակցող գաղափարախոսությունների միջև այսուհետև ծավալվող մրցության բնույթը... Այդ այցելությունները կմնան որպես այն դարաշրջանի խորհրդանշաններ, երբ ամենահզոր պետությունների ղեկավարները միմյանց ձեռք են սեղմում և սրտագին խոսքեր փոխանակում, քանի որ խաղաղությունը պահպանելու մեջ ընդհանուր շահագրգռվածությունն ավելի բարձր է կանգնած նրանց շահերի միջև եղած հակասություններից»։

Հենվելով սոցիալիզմի լագերի հզորության վրա, սովետական ժողովրդի, սոցիալիստական բոլոր երկրների ժողովուրդների և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկանց լիակատար վստահության և աջակցության վրա, կոմունիստների պարտիան մարդկային բանականության հաղթանակի հաստատ հավատով հետևողական պայքար է մղում պատերազմը հասարակության կյանքից վերացնելու և խաղաղության ու միջազգային համագործակցության գաղափարներն արդիականության տիրապետող գաղափարներ դարձնելու համար։ Նա ձգտում է, Լուի Արագոնի բառերով ասած՝ հումանիստական դարձնել ապագան, յուրաքանչյուր մարդու ապագան։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀՈՒՄԱՆԻԶՄԻ ԿԵՆԱՐԱՐ ՈՒԺԸ

**Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ**

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ներկա էտապում մեծ նշանակություն է ստանում սովետական մարդկանց բարոյական հասկացությունների և նրանց անկապտելի մասը հանդիսացող սոցիալիստական հումանիզմի հարցը։ Հումանիզմ լատիներեն բառ է, որ նշանակում է մարդկայնություն, մարդասիրություն, հարգանք դեպի մարդը և նրա արժանապատվությունը։ Հումանիստական գաղափարները պատմության անալներում հանդես են եկել որպես իդեալ, որպես մարդասիրության աղնվագույն գիծ, որպես արդարության գաղափար։ Մարդասիրության իդեալներն ու զգացումները եղել են արդարամիտ մտածողների կոչը, նրանց ձգտումն ու տենչանքը, նրանց ստեղծագործական մտքի անզոր ճիչը։

Պատմության հազարամյակների ընթացքում քանի եղել են ճնշողներ և կեղեքողներ, այնքան ավելի է ոտնահարվել մարդու արժանապատվությունը։ Չկար այն ուժը, որը կազմակերպված ու գաղափարապես մարտնչեր բռնադատված մարդու ազատության համար։

Հումանիզմը որպես գաղափարաբանություն առաջին անգամ դրսևորվեց վերածննդի (Ռենեսանս) դարաշրջանում, որն արտահայտում էր բուրժուազիայի վաղ շրջանի կուլտուրայի, արվեստի և գրականության առաջադեմ գաղափարները։ Ռենեսանսի հումանիզմը ազդարարեց անհատի ազատ և անկաշկանդ զարգացման սկզբունքները։

Վերածննդի դարաշրջանի հումանիզմի նպատակն էր մարդուն դուրս բերել այն նվաստացուցիչ վիճակից, որ ստեղծել էին նրա համար ֆեոդալական հասարակական հարաբերությունները, քրիստոնեական եկեղեցին ու կրոնը, ոտնահարելով մարդու աշխարհիկ էությունից բխող ամեն տեսակ ֆիզիկական ու հոգեկան պահանջմունքներ։ Հումանիզմի կրողներն էին՝ Պետրարկան և Բոկաչիոն, Էրազմ Ռոտերդամցին, Թոմաս Մորը և ուրիշներ։ Վերածննդի հումանիզմը, սակայն, հանդիսացավ համեմատաբար սահմանափակ թվով կրթված մարդկանց գաղափարախոսությունը։ Այն հետագայում վերածվեց մի կուլտուր-լուսավորական շարժման, որի նպատակն էր ուսումնասիրելով հին հունական և հռոմեական կլասիկ արվեստի և գրականության անթառամ հուշարձանները, ընդօրինակելով դրանք՝ կառուցել նորը։

Հումանիզմի գաղափարներն իրենց լայն արտահայտությունը գտան հանճարեղ Շեքսպիրի, Սերվանտեսի, Ռաբլեի և ուրիշների երկերում։ Վերածննդի դարաշրջանի արվեստի ստեղծագործություններում կարմիր թելի պես անցնում է մարդու արժանապատվության զգացման բարոյական բարձր պահանջը։ Սա, իհարկե, չի նշանակում թե մինչև վերածննդի դարաշրջանը հումանիստական զգացումներն ու գաղափարները մեռած են եղել հին ազգերի ու ժողովուրդների մոտ։ Ո՛չ երբեք։ Մարդու արժանապատվության զգացումները ծնվել են մարդու մեջ հենց այն օրվանից, երբ նա ճանաչել է «ինքն իրեն»։ Այդ զգացումն աճել ու առնացել է մարդու մտավոր և բարոյական էվոլյուցիային զուգընթաց, դառնալով նրա ինքնությունն արտահայտող և պահպանող բարոյական հզոր գործոններից, հասկացություններից մեկը։ Հետագայում, դասակարգային հասարակարգի առաջացման հետևանքով, երբ հանդես եկան տիրողներ ու ենթականեր, ահա այդ ժամանակաշրջանից էլ սկսվեց մարդու ինքնուրույնությունը կորցնելու, մարդը մարդուն ստրկացնելու, նրա ազատությունը և արժանապատվությունը խլելու և ոտնահարելու արգահատելի էրան։ Դրա հետ միասին սկսվում է մարդու կորսված արժանապատվությունը, իր ազատությունը վերականգնելու պայքարի շրջանը։ Այդ տեսակետից էլ պարզ է դառնում, որ ստրուկների, ճորտերի և պրոլետարների դասակարգային պայքարն իրենց ազատության համար հումանիստական պայքար է մարդկային իրավունքների և նրա կորսված արժանապատվությունը վերականգնելու համար։

Պատմությունից հայտնի է, որ նախնադարյան-տոհմատիրական հասարակության շրջանում մարդկանց մեջ չի եղել եսասիրության և անհատապաշտության զգացումը։ Այդ շրջանում զարգացած է եղել միայն կոլեկտիվիզմի գաղափարը, իր համայնքի և տոհմի հետ անհատի օրգանական միասնության զգացումը։ Այդ շրջանում մարդիկ չէին կարող մտածել ուրիշի աշխատանքը յուրացնելու, շահագործելու, կամ մեկը մյուսից բարձր դասվելու մասին։ Էգոիզմի ու փառամոլության զգացումը դեռևս չէր ծնվել մարդու հոգում։ Համայնքի մեջ իշխում էր մեկն ամենքի համար, ամենքը մեկի համար սկզբունքը։

Տնտեսական մի ֆորմացիայից մյուսին անցնելու ժամանակ փոխվում են մարդկանց համակեցության ձևերն ու նրանցից բխող հասկացողությունները, գիտակցության ձևերն ու հոգեբանությունը։ Համայնատիրական հասարակարգից ստրկատիրության անցնելու հետևանքով մարդկանց մեջ առաջացան գիտակցության նոր ձևեր, նոր հասկացողություններ ու հոգեբանություն։ Ծագեցին տիրողի և տիրվողի, «իմ» և «քո»-ի հասկացողությունները, տիրոջ և ստրուկի հոգեբանությունը, եսամոլության, անհատի փառասիրության և պաշտամունքի արգահատելի հոգեգծերը։ Անտիկ աշխարհի այնպիսի մեծ մտածողներ, ինչպիսիք էին Պլատոնն ու Արիստոտելը, հասարակությանը չէին պատկերացնում առանց ստրուկների։ Դա ոչ թե նրանից էր, որ նրանք հակահումանիստներ էին, կամ զուրկ էին խղճի ու կարեկցանքի զգացումից։ Ո՛չ, դա ժամանակի ըմբռնումն էր, տիրողների հոգեբանությունն էր այդպես։ Ժամանակները երբ փոխվեցին, ստրկությունը համարվեց հակամարդասիրական ինստիտուտ։ Նույնը կատարվեց և ճորտերի նկատմամբ, երբ ֆեոդալիզմին փոխարինելու եկավ կապիտալիզմը։ Այսօր առավել քան երբեք ստրկությունն ու ճորտությունը համարվում են հակամարդկային, անարդարացի և անբանական երևույթ։ Չնայած դրան, իմպերիալիստական գաղութարարները դեռևս մինչև մեր օրերը գաղութներում բռնի ուժով պահպանել և պահպանում են սոցիալական այդ չարիքը։

Իրենց բնույթով հումանիստական են եղել այն բոլոր ազգային ազատագրական պատերազմները, որ պատմության մեջ մղել են ճնշված, ստրկացված ժողովուրդները տիրապետողների գազանությունների դեմ հանուն ազատության և ազգային արժանապատվության։ Այս տեսակետից բնութագրական են

ճնշված ազգերի և ժողովուրդների ֆոլկլորն ու գրականությունը, որոնք տոգորված են ազատության հումանիստական տենչով։ Այդպիսին է, օրինակ, հայ ժողովրդի մեծ էպոսը՝ «Սասունցի Դավիթը»։ Այդ էպոսի գլխավոր հերոսը՝ Դավիթը, իր մեջ մարմնավորում է հայ ժողովրդի ազատասիրական, մարդասիրական վեհ զգացումներն ու գաղափարները։ Դավիթը էպոսում մեծահոգի է նույնիսկ թշնամու նկատմամբ, բարեսիրտ է դեպի այլազգին և այլն։

Պատմության ընթացքում հումանիզմի գաղափարն ապրել է իր էվոլյուցիան։ Ամեն մի ժողովրդի և ազգի համար հումանիզմի հասկացությունը պայմանավորված է եղել նրա սոցիալ-դասակարգային վիճակով, այն դրսևորվել է նրա մտավոր կուլտուրայի, հակապես արվեստի ստեղծագործություններում։

Ի տարբերություն շահագործվող նախորդ դասակարգերից, ստրուկներից և ճորտերից, միանգամայն նոր որակ է իրենից ներկայացնում այն հումանիզմը, որ իր հետ բերեց պրոլետարիատը, որը կոչված է ամենուր վերջ տալու մարդուն ստրկացնելու և կեղեքելու անարգ օրենքին, ստեղծելու իսկական մարդկային նոր հասարակարգ՝ կոմունիզմ, որն իր բոլոր գծերով բխում է մարդու էությունից, ստեղծում մարդու ֆիզիկական և մտավոր զարգացմանը նպաստող մաքսիմալ պայմանները։

Կորսված արդարության և ազատության, մարդու արժանապատվության ռեալ պաշտպանը հանդիսացավ պրոլետարիատը, որը կոմունիստների ղեկավարությամբ ռևոլյուցիա կատարեց և մարդկության մեկ երրորդին սնում է կոմունիստական հումանիզմով։ Պրոլետարիատի հումանիզմը բխում է նրա պատմական դերից և դասակարգային էությունից, հանդիսանալով նրա գաղափարների անկապտելի մասը, նրա իդեալների բնորոշ գիծը։ Հանճարեղ Գորկին իր «Հատակում» պիեսում Սատինի միջոցով արտահայտել է այդ իդեալը՝ «մարդը հպարտ է հնչում»։ Գորկին ասում է, որ ապագայում մարդը կգրվի մեծատառով։ Դա արդեն իրագործվել է սոցիալիզմի լագերի երկրներում, ուր վերացել է բուրժուական հասարակարգից եկող «մարդը մարդուն գայլ է» հասկացությունը, ուր իրագործվում է «մեկը բոլորի համար, բոլորը մեկի համար» կոմունիստական հանրակեցության սկզբունքը։

Դասակարգային հասարակության պայմաններում շահագործողների մորալը հակահումանիստական է։ Մարդուն շահագործող և հալածող դասակարգի ամեն մի ներկայացուցիչ իր էությամբ էգոիստ և միզանտրոպ (մարդատյաց) է։ Այդ բանը բխում է նրա սոցիալ-տնտեսական էությունից, որից նա չի կարող զերծ լինել։ Ավելին, շահագործող դասակարգերի հակահումանիզմը քողարկելու նպատակով նրա կրոնական և աշխարհիկ սպասարկուները ստեղծել են բազմապիսի խաբուսիկ ըմբռնումներ, կրոնական դավանանքներ, ինչպես, օրինակ՝ այս անցողիկ աշխարհում չարքաշ ապրողը, տանջվողն ու հալածվողը անդրշիրիմյան աշխարհում կստանա իր հանգստությունը և առոք-փառոք կապրի դրախտում։ Իսկ հարուստների, շվայտ ու շռայլ կյանք վարողների հոգին հավերժ այրվելու է դժոխքի կրակների մեջ և այլն։ Հար և նման կրոնական հորինվածքներով է, որ քողարկված է պորտաբույծների հակահումանիստական փարիսեցիական մորալը, որ քարոզում են հասարակ մարդկանց՝ չարքաշ կյանքի հետ հաշտվելու և տերերին հնազանդվելու համար։

Բանվոր դասակարգի հումանիստական գաղափարներն իմաստավորվեցին մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի և կապիտալիզմի ու շահագործման դեմ մղվող դասակարգային պայքարի հիման վրա։ Հետևաբար, պրոլետարիատի հումա-



նիզմն իր բնույթով դասակարգային է։ Բուրժուական ռեակցիոն սոցիոլոգներն ու փիլիսոփաները աշխատում են ցույց տալ, որ հումանիզմն ապադասակարգային, կամ վերդասակարգային զգացում կամ գաղափար է։ Սակայն բուրժուազիայի կեղծ հումանիզմը հանդես է գալիս ամեն քայլափոխին, սկսած շուկայից մինչև դատարանը, ընտանիքից մինչև պետությունը։ Բուրժուական հասարակության մարդատյաց բարքերը մերկացված են բոլոր ազգերի քննադատական ռեալիզմի արվեստի ու գրականության գործերում։ Դրա փայլուն օրինակը հանդիսանում են XIX և XX դարերի ռուսական և եվրոպական ռեալիստների՝ Գոգոլի, Սալտիկով-Շչեդրինի, Չեխովի, Գորկու, Մոլիերի, Բալզակի, Դրայզերի և մյուսների, հայ գրականությունից՝ անմահ Պարոնյանի, Սունդուկյանի, Շիրվանզադեի երկերը։ Խաբելը, գողելը, թալանելը, ուրիշին զրնելը. եղել է բուրժուական մորալի հիմնական գիծը, որին զոհ են գնացել հազարավոր անմեղ կյանքեր։ Բուրժուական աշխարհի այլանդակված հոգիների տիպարներ են եղել յագոները, շեյլոկները, տարտյուֆները, գոբսեկները, գիմգիմովները, ղամբախովները, էլիզբարովները և ուրիշներ։ Կապիտալիստների համար մարդու հոգին և սերը գնելն ու վաճառելը նույնպիսի երևույթ է, ինչպես ամեն տեսակ այլ ապրանքների վաճառքը։

Մարդկանց հումանիստական հասկացությունների հիմքում ընկած են նրանց բարոյական սկզբունքները։ Հետևաբար, հումանիզմը բարոյականության գծերից մեկն է, դուցե և ամենահիմնականը։ Քանի որ բարոյականությունը դասակարգային կատեգորիա է, հետևաբար նրա գիծը հանդիսացող հումանիստական հասկացողությունները էլ պայմանավորվում են դասակարգային գաղափարախոսությամբ և ըմբռնումներով։ Բարոյականությունն արտահայտում է մարդկանց հասարակական համակեցության կանոններն ու նորմաները։ Պատմական ամեն մի էտապում այդ կանոններն ունեցել են որոշակի ձև, որը համապատասխանել է մարդկանց արտադրողական ուժերի զարգացման որոշակի աստիճանին։ Պատմության հնագույն էտապներում, երբ մարդիկ խմբերով, հոտերով էին ապրում և վարում էին կիսաքաղց կյանք, որովհետև աշխատանքի գործիքներն ու զենքերը դեռևս թույլ էին զարգացած, երբ մարդը դեռևս կիսավայրենի վիճակում էր, մարդակերությունը սովորական երևույթ էր համարվում։ Մարդկային թափառական խմբերի թույլ անդամներին՝ ծերերին, հիվանդներին, երեխաներին սպանելն ու ուտելը հակաբարոյական ակտ չէր համարվում։

Հետագայում, երբ ավելի կատարելագործվեցին աշխատանքի գործիքները, և բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, ո՛չ միայն վերացավ մարդակերությունը, այլև առաջացան բարոյական նոր նորմաներ և հասկացություններ՝ ծերերին հարգելու, նրանց անձը և հիշատակը պաշտամունքի առարկա դարձնելու սովորությունը։ Հյուսիսային տունդրաների գոտու բնակիչների քոչվորական, թափառական կյանք վարող ցեղերի մեջ ծերերին ոչնչացնելու սովորությունը պահպանվել էր մինչև 20-րդ դարի սկզբները։ Այդ բանին վերջ տվեց միայն Սովետական իշխանությունը։ Այդ երևույթի նկարագրությունը կարելի է գտնել «Ալիտետը բարձրանում է լեռները» վեպում և այլ գրքերում։

Մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը բանվոր դասակարգի հումանիստական գաղափարները (պրոլետարական հումանիզմը) խարսխվում էին իրեն թշնամի դասակարգի ստրկությունից ազատագրվելու սկզբունքի վրա, բոլոր երկրների շահագործող մասսաների, ժո-

ղովուրդների և ազգերի եղբայրության ինտերնացիոնալ բարեկամությունը հաստատելու սկզբունքի վրա։ Սոցիալիստական կարգերի առաջացման հետ միասին որակական նոր բովանդակություն ստացավ պրոլետարական հումանիզմը, դառնալով սովետական սոցիալիստական նոր ազգերի և սոցիալիզմի լագերի բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցության գաղափարի հիմնական սկզբունքներից մեկը։ Պատմական բերումով սոցիալիզմի լագերի այս կամ այն ժողովրդի և ազգի տնտեսական ու կուլտուրական հարաբերական հետամնացությունը միասնական ջանքերով լիկվիդացնելը և դեպի կոմունիստական հասարակարգը կոլեկտիվ ուժերով ընթանալը դարձել է սոցիալիստական լագերի ժողովուրդների հումանիստական սկզբունքը։

Սոցիալիստական երկրների ժողովուրդների հումանիզմի արտահայտություններից մեկն էլ հանդիսացավ նախկին շահագործող դասակարգերի մնացուկներին սոցիալիզմի ոգով վերադաստիարակելու պրոցեսը։ Կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության ներկա էտապում է՛լ ավելի մեծ չափերով են դրսևորվում սովետական մարդկանց հումանիստական զգացումների և գաղափարների հարստությունն ու վեհությունը։ Դրա փայլուն օրինակն են ծառայում այն նոր միջոցառումները, որոնց նպատակն է ավելի շատ ուշադրություն հատկացնել դեռևս մնացած արատավոր վարք ու բարքի տեր մարդկանց, հակահասարակական տարրերի՝ գողերի, անբարոյականների, խուլիգանների և նմանների վերադաստիարակման խնդրին։ Երկրում գնալով նվազելու են պետության ռեպրեսիվ միջոցառումները նմանների նկատմամբ և ավելի կուժեղանան հասարակական ներգործության՝ ընկերական դատարանների և այլ կազմակերպությունների ֆունկցիաները։ Այս տեսակետից որքան ուսանելի է ընկ. Ն. Ս. Խրուշչովի այն հումանիստական քայլը, որ նա ցուցաբերեց նախկին քրեական հանցագործի նկատմամբ, որն զգալով իր հանցանքի ողջ ծանրությունն ու ընտանիքի ծանր վիճակը՝ դիմել է մեր պետության և պարտիայի ղեկավարի օգնությանը։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովը ելնելով ընկածին, դատապարտվածին օգնելու հումանիստական վեհ սկզբունքից, օգնության ձեռք մեկնեց՝ նրան վերադարձնելով կյանքի նորմալ հունը։

Սովետական Միության գրողների երրորդ համագումարում արտասանած իր ճառում բերված վերոհիշյալ օրինակում ընկ. Խրուշչովը ցույց է տալիս, թե որքան բարձր է կանգնած սովետական մարդն իր հումանիզմով, որը օրինակ պետք է ծառայի բոլորի համար և դառնա սոցիալիստական բովանդակությամբ զարգացող գեղարվեստական գրականության լեյտմոտիվը։ Այսօր ընկեր Խրուշչովի բերանով սոցիալիստական հումանիզմի լոզունգ է դառնում «ընկածին չեն խփում, այլ նրան օգնում են վեր բարձրանալու» խոսքը։ Սա հենց ազդարարում է սոցիալիստական հումանիզմի զարգացման նոր էտապը՝ կոմունիստական հումանիզմի էրան, երբ վերանում են մարդկանց թշնամական զգացումները և սկսում են զարգանալ և գերիշխել բարեկամական ու եղբայրական զգացումները։ Սա նշանակում է, որ մեր աչքի առաջ իրականանում է մեծ Գորկու երազանքը, որն իր հերոս Անդրեյ Նախոդկայի միջոցով ասում էր. «Ես գիտեմ, կգա ժամանակ, երբ մարդիկ կհիանան միմյանցով, երբ ամեն մեկը կշողա որպես աստղ մյուսի համար։ Երկրի վրա կքայլեն ազատ մարդիկ, մեծ՝ իրենց ազատությամբ, բոլորը կքայլեն բաց սրտով, ամեն մեկի սիրտը զերծ կլինի նախանձից և բարի կլինեն բոլորն էլ։ Այն ժամանակ մարդը կծառայի մարդուն, և նրա կերպարը կհառնի բարձր. ազատ մարդկանց համար



բոլոր բարձունքները մատչելի կլինեն։ Մարդիկ այն ժամանակ կապրեն ճշմարտության և ազատության մեջ գեղեցկության համար և լավագույնները կհամարվեն նրանք, որոնք սրտով ավելի լայնորեն կընդգրկեն աշխարհը, որոնք ավելի խոր կսիրեն այն, լավագույնները կլինեն ավելի ազատները, որոնցում ավելի շատ կլինի գեղեցկությունը»։

Կոմունիզմի հաղթանակով միայն մարդը թռիչք է գործում հին կյանքի եզրից դեպի ստեղծագործական և բարոյական ազատությունների նոր կյանքի եզրը։

Սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության հիմնական գործոնը հասարակական հանրօգուտ աշխատանքն է։ Հանրօգուտ աշխատանքը ձևավորում է մարդու ֆիզիկական և հոգեկան կերպարանքը։ Ավելին. մարդու հոգեկան զարգացման ողջ ընթացքը կախված է նրա զբաղմունքից, նրա արտադրական գործունեությունից, նրա աշխատանքի բնույթից։ Աշխատանքն է կատարելագործել ու ազնվացրել մարդու և՛ հոգեկան, և՛ մարմնական էությունը։ Հետևաբար, կոլեկտիվ աշխատանքն այն քուրան է, որտեղ թրծվում են կոմունիստական հասարակարգ կառուցող անհատների բարոյական գծերը։

Աշխատանքը, մի կողմից՝ մարդուն կապում է բնության, մյուս կողմից՝ հասարակության, կոլեկտիվի հետ։ Աշխատանքն այն պրոցեսն է, որ ազնվացնում է մարդուն, ազատում նրան իր զոոլոգիական բնազդներից և մղում, դարձնում ավելի ու ավելի մարդկային, այսինքն՝ նրա մեջ պատվաստում է մարդուն վայել հոգեգծեր, մարդու մեջ զարգացնում է մարդուն հարգելու, նրա արժանապատվությունն ըստ պատշաճի գնահատելու հումանիստական գծեր։

Սոցիալիստական հումանիզմը մեր օրերում առավել մեծ չափերով է առաջ քաշում մարդը մարդուն հարգելու գաղափարը՝ անդասակարգ սոցիալիստական հասարակարգի մարդկանց համակեցության գլխավոր պահանջը։ Մարդը մարդուն հարգելու զգացումը պետք է դառնա սովետական դաստիարակության անկյունաքարը։ Մարդու նկատմամբ հարգանքի բարձր զգացումը մարդկանց մեջ պետք է պատվաստվի մանկուց։ Երեխաների մեջ այդ զգացումը պետք է արթնացնեն ծնողները, ընտանիքը, այնուհետև դպրոցը և ուսուցիչները։

Մինչդեռ քիչ չեն դեպքեր, երբ ծնողները և դպրոցը աչքաթող են անում այս բնական պահանջը։

ՍՄԿՊ XXI համագումարում ընդունված ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա հոյակապ ծրագիրը սովետական ժողովրդի և ողջ առաջավոր մարդկության առջև բացում է դեպի կոմունիզմ ընթանալու լայն ու պայծառ հեռանկարներ։ Յոթնամյակի վիթխարի նախագծումների կենսագործման անմիջական նպատակն է՝ ավելի բարձրացնել սովետական ժողովրդի բարօրությունը, կենցաղը, ավելի երջանիկ կյանք ստեղծել նրա համար։

Մարդու կյանքի և աշխատանքի համար ստեղծել առավել բարեկեցիկ նյութական և հոգեկան պայմաններ. ահա այս հումանիստական գաղափարն է, որ կարմիր թելի պես անցնում է կոմունիստական շինարարության յոթնամյա պլանով։ Այս յոթնամյակի ընթացքում նյութական բարիքների արտադրության լիառատության հետ միասին է՛լ ավելի կընդարձակվեն և կխորանան սովետական մարդկանց հումանիստական ազնիվ գծերը, կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը, դեպի ընտանիքը, դեպի ողջ հասարակությունը և նրա անդամները։ «Մեր երկրի ամենամեծ հարստությունը հիանալի կադրերն են,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը։— Կոմունիստաբար աշխատելն ու ապրե-

լը, բոլոր ուժերն ու ընդունակությունները կոմունիզմի կառուցման գործին նվիրաբերելը դարձել է սովետական մարդու անկապտելի հատկությունը»։ Սա հենց վկայում է սոցիալիստական հումանիզմի հաղթանակը, նրա արմատավորումը ժողովրդական լայն զանգվածներում։ Սա հենց կոմունիստական հումանիզմի հաղթանակի մեծ գրավականն է։

Սովետական լայնածավալ երկրում ներկայումս արդյունաբերության բնագավառում սկիզբ է առել աշխատանքի կոմունիստական բրիգադաներ ստեղծելու շարժումը։ Կոմունիստաբար աշխատելը, ապրելն ու սովորելը դարձել են բազմամիլիոն աշխատավոր մասսաների օրվա պահանջը և կյանքի սկզբունքը։ Սա նշանակում է, որ սոցիալիզմի երկրի աշխատավորները գիտակցաբար ստեղծում են կյանքի այն պայմանները, որոնք նրանց մոտեցնում են կոմունիստական կենցաղին։ Կոմունիստական բարքերն ու սովորությունները, ծնվելով արտադրության և կոլեկտիվ աշխատանքի պայմաններից, դառնում են անհրաժեշտ սովորույթ։ Հասարակական և անձնական շահը զուգակցելու, անձնականը հասարակականին ենթարկելու կոմունիստական գիտակցության վառ օրինակ տվեց Կալինինի մարզի Վիշնեվոլոչանսկի բամբակյա գործվածքների կոմբինատի բրիգադավար Վալենտինա Գագանովան, որը թողնելով իր լավ աշխատանքը և բարձր աշխատավարձը, փոխադրվեց ետ մնացող բրիգադա, որպեսզի օգնի իր ընկերներին՝ վերացնելու ետ մնացող տեղամասը, այն հասցնի առաջավորներին։ Վալենտինա Գագանովայի հայրենասիրական քայլը դարձել է համաժողովրդական երևույթ և այն համակել է Սովետական Միության բազմահազար աշխատավորների սրտերը։ Այդ շարժման մեջ են մտել նաև Հայաստանի արտադրական ձեռնարկությունների բազմաթիվ բանվորներ ու բանվորուհիներ։

Սովետական քաղաքացու բարոյական հասկացողությունների հիմքում ընկած են պրոլետարիատի հումանիստական զգացումներն ու գաղափարները։ Հումանիզմի այդ սկզբունքներից է, որ ծնվելու են ապագա մարդկության բարոյական ըմբռնումները։ Սովետական սոցիալիստական հասարակարգի և նրա ամեն մի քաղաքացու բարոյական սկզբունքն է՝ գիտակցական վերաբերմունք ցուցաբերել աշխատանքային կոլեկտիվի, ընտանիքի, պետության հանդեպ։ Սովետական քաղաքացու բարոյական ըմբռնումները սովորեցնում են աշխատանքի ընկերոջ, ողջ կոլեկտիվի հանդեպ լինել ազնիվ և ընկերասեր, օգնել նրանց դժվար պայմաններում, ամենուրեք վստահել նրան և հավատարմորեն կատարել այն կոլեկտիվի հանձնարարությունները, որի անդամն ես հանդիսանում, չստել, չհարբել, չգողանալ և չարատավորել կոլեկտիվի պատիվն ու անունը։

Ժամանակակից բուրժուական բարոյախոսները զարգացնում են այն տեսակետը, ըստ որի մարդու, քաղաքացու բարոյական հասկացողությունները բխում են նրա սուբյեկտիվ զգացումներից և ցանկություններից, ճաշակից և քիմքից, նրա օգտակարությունից։ Մարդու վարմունքի գնահատականը նրանք հանգեցնում են սուբյեկտիվ չափանիշների։ Ըստ Կառնապի, Այերի, Ստիվենսոնի և ուրիշների, վարքի և նրա բարոյականի գնահատականը անձնական ճաշակի և շահի գործ է։ Ըստ այս տեսակետի կարելի է ամեն մի ամորալ և անբարոյական արարք արդարացնել, քանի որ որոշիչը սուբյեկտիվ ճաշակն է։

Բուրժուական մեկ ուրիշ երանգի բարոյախոսներ (Սարտր, Յասպերս) ա-



սում են, որ բարոյական արժեքները միանգամայն անկախ են հասարակությունից. նրանք գտնվում են անհատի զգացումների ոլորտում, նրա հոգու աշխարհում։ Անհատը ազատ է հասարակությունից, կոլեկտիվից և կարող է իր արարքների վճիռ ինքը կայացնել, որի ճիշտ կամ սխալ լինելը ինքն է որոշում, անկախ ամենքից։ Բացարձակ սուբյեկտիվիզմը այս կարգի մտածողների բարոյական ըմբռնումների ելակետն ու հիմքն է։

Հակառակ այս և նման ըմբռնումների, մարքսիզմը սովորեցնում է, որ մարդկանց վարք ու բարքը սուբյեկտիվ ցանկության արդյունք չէ, որ այն կոչված է կանոնավորելու անհատի և հասարակության միջև եղած փոխհարաբերությունները, որ բարոյական նորմաները նրա համար են, որպեսզի ներդաշնակություն ստեղծվի անհատի և հասարակարգի փոխհարաբերության մեջ։ Ավելին, անհատի վարքի նորմաները պետք է բխեն և պայմանավորվեն հասարակության պահանջներից ու էությունից։ Օրինակ, սովետական մարդու վարքի սկզբունքները բխում են մեր հասարակարգի հիմնական պահանջմունքներից, կոմունիզմի կառուցման խնդիրներից։

Սովետական բարոյականությունը հակադրվելով բուրժուական ինդիվիդուալիստական, էգոիստական ու հակահումանիստական բարոյական հասկացություններին և մերժելով դրանք՝ առաջադրեց կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության և հասարակության ամեն մի անհատի հանդեպ հոգատարություն ցուցաբերելու բարոյական նորմաները, որոնք իրենց մեջ կրում են կոմունիստական հումանիզմի սաղմերը, որոնք դառնալու են ապագա մարդկության համակեցության ընդհանրական կանոնները։

Սովետական քաղաքացին ստեղծել է կոմունիստական հասարակարգի համակեցության բարոյական այն ըմբռնումը, ըստ որի անձնական երջանկությունը պետք է փնտրել ոչ թե հասարակությունից դուրս, անձնական կրքերի ու ձգտումների ոլորտում, այլ ժողովրդի, հասարակության, կոլեկտիվի երջանկության մեջ. անձնական շահը բխեցնել ընդհանուրի շահից և ոչ թե հակառակը։ Այս նոր զգացումներն առլեցուն են հասարակական բովանդակությամբ և նոր իմաստ են հաղորդում մարդու էությանը, նրան վերջնականապես կտրելով «ինդիվիդուալիզմից», որն իր սուբյեկտիվ գոյությունից, սեփական անձից այն կողմ աշխարհ չի ճանաչում։

Կոմունիստական բարոյականությունը սովորեցնում է հարգել ո՛չ միայն սեփական ժողովրդին, այլև ուրիշ ազգերի, որոնք հանուր մարդկության հարազատ զավակներն են։ Այդ իմաստով էլ ինտերնացիոնալիզմը սոցիալիստական հասարակարգի քաղաքացիների անկապտելի գիծն ու զգացումն է, նրանց բարոյական ըմբռնումների ադամանդը։

Այսպիսով պարզ է դառնում, որ սովետական բարոյականությունից ծնվող կոմունիստական բարոյականությունն աստիճանաբար վեր է ածվում ընդհանուր մարդասիրության զգացման և գաղափարների։ Դրանից ելնելով էր, որ հանճարեղ Մարքսն ասում էր, որ կոմունիզմը հենց ռեալ հումանիզմն է, որը բխում և ծնվում է պրոլետարական բարոյականության սկզբունքներից, սոցիալիստական հումանիզմից։ Սոցիալիստական հումանիզմը պահանջում է հարգել մարդուն անկախ նրա ազգությունից, սեռից, ռասայից, մաշկի կամ մազերի գույնից։ Մարդուն դիտելով որպես բնության մեծագույն զարդը, հասարակության բոլոր արժանիքների արարիչը, բնության և հասարակության տարերային ուժերն ու օրենքները սանձող և իմաստավորող բնական էակը։

*Բուրժուազիայի ինդիվիդուալիստական, էգոիստական մորալը այլասերում է մարդուն, կործանում նրա հոգին, աղտոտում նրա ողջ էությունը։ Բուրժուական աշխարհի բարոյական կործանումը ստեղծում է պորտաբույծների, մարդասպանների բանակներ, որոնք զուրկ են մարդասիրության զգացումից, որոնց համար սպանելը, թալանելը, ցոփ ու շվայտ, անիմաստ և աննպատակ կյանք վարելը գերագույն նպատակ է։ Բուրժուական նեխված բարոյականությամբ համակված գաղափարազուրկ ամեն մի գայլուկ ընդունակ է մի կոպեկի համար վաճառել իր հոգին ու մարմինը, իր հարազատներին ու մերձավորներին, դավաճանել իր ազգին և հայրենիքին։ Անձնական շահը նրա համար վեր է ամեն մի սրբությունից։*

*Բուրժուական արվեստն ու գրականությունը, կինոն ու թատրոնը հազարավոր ձևերով նկարագրում ու պատկերում են ճարպիկ մարդասպանի, հնարագետ գողի և առասպելական ուժի անձնավորությունների տիպարներ, որոնք կարողանում են կապիտալիստական աշխարհի լաբիրինթոսից դուրս բերել և հասարակական ու պետական բարձր դիրքի արժանացնել բարոյալքված բիզնեսմեններին, սեփական արժանապատվությունից զուրկ հաճոյակատարին, պատահական թերուսին ու սրիկային։*

*Բարոյական անկման ֆենոմեններ էին հանդիսանում գերմանական ֆաշիստները, որոնք դարձել էին պրոֆեսիոնալ մարդասպաններ ու թալանչիներ, որոնց հրեշավոր գործերի մասին վկայում էին Բուխենվալդի, Օսվենցիմի և տասնյակ այլ վայրերի միլիոնավոր մարդկանց մոխիր դարձնող դժոխային վառարաններն ու ճամբարները։ Ժամանակակից անգլո-սաքս ռասիստները փորձում են քայլել հիտլերյան միզանտրոպների հետքերով, ցանկանում են պատերազմների, հրի ու սրի նոր դժոխքներ առաջացնել մարդկության համար, հատկապես սոցիալիստական ազատ ու երջանիկ կյանքի ուղիով ընթացող ժողովուրդների համար։ Սակայն այդ չի հաջողվի իմպերիալիստներին։ Այսօր, ավելի քան երբեք, աշխարհում մեծ ուժ է դարձել խաղաղության ու սոցիալիզմի լագերը, որն ավելի ուժեղ է, քան մահամերձ իմպերիալիզմը։ Խաղաղության լագերն ի վիճակի է իր բնում խեղդել պատերազմի հրձիգների բոլոր ոտնձգությունները։ Խաղաղության պաշտպանության գործն այսօր ամենամեծ հումանիստական ակտն է, որի նպատակն է մարդկությանը փրկել կործանումից ու ոչնչացումից, ստեղծել ողջ մարդկության, նրա բոլոր ազգերի և ժողովուրդների փոխադարձ վստահության և համերաշխության ընդհանուր գոտի, աստիճանաբար վերջ տալ չար ուժերին, ձգտել ու հասնել մարդկությանը երջանիկ կյանք բերող կատարյալ հասարակարգին՝ կոմունիզմին։*

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

*ՍՄԿԿ XXI համագումարի հաստատած ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը կոմունիզմի ծավալուն շինարարության հոյակապ ծրագիր է։ Յոթնամյա պլանում մարմնավորված է Կոմունիստական պարտիայի տնտեսական քաղաքականությունը՝ սովետական հասարակության կենսական հիմքը։*

*Յոթնամյա պլանը մշակված է սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջներին համապատասխան, և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման վեհ ծրագիրը զուգորդված է հասարակության պահանջմունքների ավելի լրիվ բավարարման հետ։*

*Անվիճելի է, որ հասարակության պահանջմունքների բավարարման գործում առաջնային նշանակություն ունեն շոշափելիորեն օգտակար իրերը, առարկաները, որոնք ծառայում են որպես սնունդ, հագուստ, բնակարան և այլն։ Սրանք, իհարկե, հասարակության գոյության գլխավոր պայմաններն են, սակայն դրանցից բացի հասարակությունն ունի բազմաթիվ այլ պահանջմունքներ, որոնց բավարարումը, մասնավորապես կոմունիստական հասարակության զարգացման ներկա էտապում և առավել ևս հետագայում, նույնպես կարևոր է, որքան և սնվելը, հագնվելը, բնակարան ունենալը և այլն։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում լրիվին հաշվի է առնված հասարակության պահանջմունքների ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ խումբը։ Դրան համապատասխան սոցիալիստական հասարակության աշխատանքային ռեսուրսները կամ աշխատանքային հասակ ունեցող բնակչությանը (16—59 տարեկան տղամարդիկ և 16—54 տարեկան կանայք) Սովետական պետությունը պլանաչափորեն բաշխում է ժողովրդական տնտեսության արտադրական և ոչ արտադրական ոլորտների միջև այնպիսի համամասնությամբ, որ նրանց աշխատանքի արդյունքները բավարարեն հասարակության միագումար պահանջմունքները։ Հասարակության տարբեր պահանջմունքները բավարարելու համար նրա անդամները կամ առանձին խմբերը գործունեության տարբեր տեսակների մեջ են հմտանում. դառնում են խառատ, փականագործ, մեքենավար, հացթուխ, կոշկակար, անասնապահ, ինժեներ, ագրոնոմ, ուսուցիչ, բժիշկ, հաշվապահ, պլանավիկ և այլն, և այլն։*

*Աշխատանքի հասարակական բաժանումն իբրև օբյեկտիվ անհրաժեշտություն հատուկ է բոլոր հասարակարգերին, սակայն տարբեր հասարակարգերում այն կատարվում է տարբեր կերպ և հասցնում հակադիր հետևանքների։ Այսպես, կապիտալիստական հասարակության մեջ աշխատանքի հասարակա-*

կան բաժանումը կատարվում է տարերայնորեն և ենթարկված է միլիոնավոր աշխատավորներին անզուսպ շահագործելու միջոցով հավելյալ արժեք կորզելու սկզբունքին։ Աշխատանքի հասարակական բաժանման պրոցեսը, որ կարգավորում է տարերայնորեն գործող արժեքի օրենքը, չի ստեղծում համապատասխանություն հասարակության կողմից ծախսվող աշխատանքի չափի և հասարակության պահանջմունքների չափերի միջև։ Տեղի է ունենում աշխատանքի և նրա արդյունքների հսկայական վատնում։

Կապիտալիզմին հակադիր՝ սոցիալիզմի ժամանակ հասարակության կողմից ծախսվող միագումար աշխատանքի քանակությունը որոշվում է հասարակության պահանջմունքներին համապատասխան, իսկ այդ աշխատանքն ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի և գործունեության տարբեր բնագավառների միջև բաշխելու օբյեկտիվ անհրաժեշտությունն իրականություն է դառնում պետական պլանավորման օգնությամբ և կարգավորվում է պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքով։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային և ընթացիկ պլաններով որոշվում է աշխատանքային ծախսումների չափը ըստ ժողտնտեսության ճյուղերի, աշխատանքի տարբեր տեսակների միջև անհրաժեշտ համամասնությունների, ինչպես և այդ ծախսումներից սպասվող արդյունքների չափի։ Արտադրության սոցիալիստական եղանակի պայմաններում ժամանակի տնտեսումը դառնում է հասարակական պահանջ և հասարակության նպատակներից մեկը շնորհիվ այն բանի, որ ժամանակի ամբողջ ֆոնդն իրեն՝ հասարակությանն է պատկանում։ Ահա թե ինչու ՍՄԿՊ-ի ծրագրային պահանջներից մեկն էլ եղել և մնում է աշխատանքային ռեսուրսները ըստ ժողտնտեսության ճյուղերի պլանաչափ բաշխումն ու օգտագործումը՝ որպես ամբողջ ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումն ապահովող պայմանի։

Մեր պարտիայի ծրագրում այդ առթիվ ասված է հետևյալը. «Ամբողջ ժողովրդական տնտեսությունը պլանաչափորեն զարգացնելու նպատակով պետության մեջ եղած աշխատուժի մաքսիմալ օգտագործումը, նրա բաշխումն ու վերաբաշխումը ինչպես տերիտորիալ տարբեր մարզերի, այնպես էլ ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև պետք է կազմի Սովետական իշխանության տնտեսական քաղաքականության մերձավոր խնդիրը»[1]։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր հնգամյա պլանները մշակելիս աշխատանքային ռեսուրսների բաշխման և օգտագործման ասպարեզում որպես ելակետ ծառայել է պարտիայի ծրագրի այս պահանջը։

***

Յոթնամյակի տարիներին ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության բուռն վերելքն իրենով կպայմանավորի նաև բնակչության և աշխատանքային ռեսուրսների նշանակալի աճ։ Այդ աճը որոշելու համար մենք վերցրել ենք Հայաստանի բնակչության շարժման վերաբերյալ վերջին տասը տարվա տվյալները։ Պարզվում է, որ 1950 թվականի սկզբից մինչև 1959 թվականի սկիզբը Հայաստանի բնակչությունն աճել է 28,3 տոկոսով։ Ըստ տարիների և ըստ քաղաքի ու գյուղի բնակչության շարժումը հետևյալ կերպ է ընթացել։ Յուրաքանչյուր տարվա հունվարի 1-ի դրությամբ։ 1950 թվականն ընդունում ենք 100։

| Տարիներ | Քաղաք | Գյուղ |
|---|---|---|
| 1950 | 100 | 100 |
| 1951 | 106,2 | 95,75 |
| 1952 | 112,65 | 98 |
| 1953 | 118,1 | 99 |
| 1954 | 125,2 | 99,33 |
| 1955 | 130,8 | 102,7 |
| 1956 | 137,1 | 106.6 |
| 1957 | 143.2 | 107.35 |
| 1958 | 147.7 | 110,3 |
| 1959 | 152,25 | 113,3 |

Հայկական ՍՍՌ-ի բնակչության շարժումը ցույց տվող այս թվաշարքի վերլուծությունը հնարավորություն է տալիս կատարել հետևյալ եզրակացությունները. 1950—1953 թվականների ընթացքում քաղաքային բնակչության բարձր աճի պայմաններում գյուղական բնակչությունը չի ավելացել, իսկ առանձին տարիներում նույնիսկ պակասել է։ Մինչև ՍՄԿՊ 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումը գյուղատնտեսության բարձիթողի վիճակը ստեղծել էր այնպիսի դրություն, որ գյուղից քաղաք էր անցնում ավելի մեծ թվով բնակչություն, քան գյուղական բնակչության բնական աճն էր։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան և հետագա պլենումների ու պարտիայի XX համագումարի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ, երբ գյուղատնտեսությունն սկսեց շեշտակի վերելք ապրել, արմատապես փոխվեց նաև գյուղական բնակչության շարժման տեմպը։ Արդեն 1956 թվականից սկսած քաղաքային և գյուղական բնակչության աճի տեմպերի միջև եղած սուր տարբերությունները զգալիորեն մեղմացել էին։ Այդ և հետագա տարիներին վերաբերող բնակչության աճի տվյալներն ըստ քաղաքի և գյուղի դրսևորում են միանգամայն նորմալ տենդենց, որը և հիմք է տալիս որոշելու բնակչության և աշխատանքային ռեսուրսների քանակությունը այս յոթնամյակի վերջին տարվա համար։

1959 թվականի մարդահամարի տվյալներով Հայկական ՍՍՌ բնակչությունը կազմել է 1768 հազար մարդ, այդ թվից 50 տոկոսը քաղաքային և 50 տոկոսը գյուղական բնակչություն։

Մեր հաշվարկումներով 1965 թվականի վերջին Հայաստանի բնակչության քանակությունը կկազմի կլոր հաշվով 2150 հազար մարդ։ Ինչ վերաբերում է բնակչության բաշխվածությանը ըստ քաղաքի և գյուղի, ապա պետք է նկատել հետևյալը։ Յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերության նոր տեղաբաշխման շնորհիվ ներկայիս գյուղական որոշ վայրեր կվերածվեն քաղաքների և բանվորական ավանների, հետևապես նրանց բնակչությունն էլ գյուղական բնակչությունից կվերածվի քաղաքային բնակչության։ Դրանց և քաղաքային բնակչության բնական աճի հաշվին 1965 թվականին ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության ընդհանուր թվաքանակը

[1] Директивы КПСС и Советского правительства по хозяйственным вопросам, том I, 1957, стр 122—123.

կկազմի 1140 հազար մարդ, իսկ գյուղական բնակչության թվաքանակը՝ 1010 հազար մարդ։ Ուրիշ խոսքով ասած, 1965 թվականին Հայաստանի բնակչության 53 տոկոսը կլինի քաղաքային, 47 տոկոսը՝ գյուղական բնակչություն։ Ռեսպուբլիկայի աշխատանքային հասակ ունեցող բնակչության ընդհանուր քանակը կկազմի ամբողջ բնակչության մոտավորապես 50 տոկոսը։

***

Սոցիալիզմի ժամանակ երկրի աշխատանքային ռեսուրսներն աճում են բարձր տեմպերով, բայց նյութական արտադրության զարգացման և կուլտուրական շինարարության տեմպերը գերազանցում են աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերին։ Աշխատանքային ռեսուրսների բարձր տեմպերով աճի պայմաններում այդ ռեսուրսները լիովին և ռացիոնալ ձևով օգտագործելու, բոլոր աշխատունակ մարդկանց լրիվ զբաղվածության ապահովումը կախված է տնտեսական մի շարք գործոններից, որոնցից են՝ ազգային եկամուտն ըստ սպառման և կուտակման բաշխելը, կուտակվող մասի հաշվին կատարվող կապիտալ շինարարության մասշտաբներն ու աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մասշտաբով կատարվող կապիտալ ներդրումները մեխանիկորեն չեն բաշխվում միութենական ռեսպուբլիկաների միջև։ Այդ ներդրումներն ըստ միութենական ռեսպուբլիկաների բաշխելիս վճռող սկզբունք է լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառումը։

Յոթնամյակի տարիներին Հայկական ՍՍՌ աշխատանքային ռեսուրսներն աճելու են բավական բարձր տեմպերով։ Այդ նշանակում է, որ ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության այնպիսի զարգացում պետք է լինի, որը հնարավորություն տա այդ աճող աշխատանքային ռեսուրսները լրիվ զբաղվածությամբ ապահովելու։

1958—1965 թվականներին Հայկական ՍՍՌ աշխատանքային ռեսուրսներն աճում են մոտ 11 տկոսով, մինչդեռ խոշոր կապիտալ ներդրումների շնորհիվ արդյունաբերության արտադրանքն ավելանում է 2,2 անգամ, գյուղատնտեսությանը՝ մոտ 2 անգամ։ Այդ նշանակում է, որ յոթնամյակում ո՛չ միայն հնարավոր է դառնում աշխատանքային աճած ռեսուրսները հանրօգուտ աշխատանքի մեջ լիովին ընդգրկելը, այլ կապիտալ ներդրումների արագ աճի համեմատ անհրաժեշտ է դառնում աշխատանքի արտադրողականության բարձրացում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Առանց աշխատանքի արտադրողականության լուրջ բարձրացման անհնարին կլիներ ժողովրդական տնտեսությունն աշխատուժով ապահովելը և չէր ապահովվի պլանի առաջադրանքների կատարումը։

Ըստ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի աշխատուժի լրացուցիչ պահանջը յոթնամյակում հետևյալ պատկերը կունենա։

Հայկական ՍՍՌ արդյունաբերության տարբեր ճյուղերն ըստ նրանցում զբաղված աշխատողների, 1958 թվականին հետևյալ պատկերն ունեին (տոկոսներով ընդհանուրի մեջ). էլեկտրակայանները և ցանցը՝ 0,8 տոկոս, մեքենաշինությունը և մետաղամշակումը՝ 18 տոկոս, մետաղաձուլումը և լեռնահանքային արդյունաբերությունը՝ 5,4 տոկոս, շինանյութերի արդյունաբերությունը՝ 9,9, անտառային և փայտամշակման արդյունաբերությունը՝ 4,0, թեթև արդյունաբերությունը՝ 35,5, սննդի արդյունաբերությունը՝ 19,4 տոկոս։



Բերված տվյալներից երևում է, որ արդյունաբերության աշխատողների մոտ 60 տոկոսը 1958 թվականին զբաղված էր սպառման առարկաներ արտադրող ճյուղերում, իսկ 40 տոկոսը՝ արտադրության միջոցներ արտադրող ճյուղերում։ Յոթնամյակի ընթացքում, քանի որ արդյունաբերության տարբեր ճյուղերը զարգանալու են տարբեր տեմպերով, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման տոկոսն էլ տարբեր է լինելու, այդ պատճառով էլ կփոխվեն աշխատուժի բաշխման պրոպորցիաները։ Արտադրության միջոցների արտադրության տեսակարար կշիռն արդյունաբերության մեջ զբաղվածների ընդհանուր թվաքանակի մեջ կբարձրանա։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության «Ա» խմբի մեջ թե՛ աշխատողների թվով և թե համախառն արտադրանքով ամենաբարձր տեսակարար կշիռը կունենա մեքենաշինությունը։ Յոթնամյակի տարիներին սրա համախառն արտադրանքը կաճի 3,5 անգամ։

Ռեսպուբլիկայի աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման տեսակետից բացառիկ է մեքենաշինության զարգացման նշանակությունը։ Նորն այս յոթնամյակում այն է, որ ստեղծվում են մեքենաշինության առավել աշխատատար ճյուղեր։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով մեքենաշինության նոր ճյուղերն ու ձեռնարկությունները ՍՍՌՄ տերիտորիայի վրա տեղաբաշխելիս բացի այլ պարագաներից հաշվի է առնված նաև այն, որ Հայկական ՍՍՌ-ն ունի բնակչության և աշխատանքային ռեսուրսների հարաբերականորեն բարձր խտություն։ Այդ ռեսուրսների մաքսիմալ օգտագործման անհրաժեշտությունից ելնելով ստեղծվում են մեքենաշինության առավել աշխատատար ճյուղեր։

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պահանջին են ենթարկված նաև Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության ճյուղային կառուցվածքում կատարվելիք փոփոխությունները (1959—65 թթ.)։ Այդ փոփոխության էությունն այն է, որ մինչև այժմ գոյություն ունեցող քիմիական արդյունաբերության էներգատար, բայց նվազ աշխատատար ճյուղերի ու ձեռնարկությունների փոխարեն ստեղծվում են հարաբերականորեն առավել աշխատատար ճյուղեր։ Ծանր արդյունաբերության համախառն արտադրանքի գերազանց աճը, նրա ճյուղային կառուցվածքում կատարվող փոփոխությունները և աշխատանքի արտադրողականությունն ավելի քան 61 տոկոսով բարձրացնելու պայմաններում աշխատուժի լրացուցիչ պահանջը կկազմի 54,4 հազար մարդ, կամ ռեսպուբլիկայում յոթնամյակի տարիներին աշխատանքային ռեսուրսների ողջ աճի մոտ 55 տոկոսը։ Ծանր արդյունաբերության գերազանց աճի հետ մեկտեղ յոթնամյակի տարիներին բարձր տեմպերով կաճի նաև ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Արդյունաբերության այդ խմբի համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 1,7 անգամ, դրան համապատասխան 1965 թվականին ամբողջ արդյունաբերության կողմից ներկայացվող աշխատուժի լրացուցիչ պահանջը կկազմի 67,5 հազար մարդ։ Այսպիսով, եթե նկատի ունենանք, որ յոթնամյակի ընթացքում աշխատանքային ռեսուրսները ռեսպուբ-

Լիկայում աճելու են մոտավորապես 100 հազար մարդով, ապա դրա 67,5 տոկոսը կներգրավվի արդյունաբերության մեջ։

Աշխատանքային ռեսուրսների օգտագործման խնդրում որոշակի դեր է խաղում շինարարությունը։ Լինելով նյութական արտադրության ճյուղերից մեկը, շինարարության ծավալն ու մասշտաբները մեծ չափով կանխորոշում են պլանի արտադրական ծրագրի մասշտաբները, արտադրական և ոչ արտադրական հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրության հնարավորությունները։ Դրա հետ միասին շինարարությունն ինքը նույնպես պահանջում է աշխատողների համապատասխան քանակություն և կարևոր դեր է խաղում բնակչության զբաղվածությունն ապահովելու գործում։

1959—65 թվականներին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարվող խոշոր ներդրումները պահանջում են, որ շինարարության մեջ նույնպես բարձրանա աշխատանքի արտադրողականությունը, հակառակ դեպքում շինարարությունն աշխատուժի լրացուցիչ մեծ պահանջ կներկայացնի։ Սակայն շինարարությունը նոր ինդուստրիալ մեթոդների փոխադրման և շինարարական աշխատանքների կազմակերպումը բարելավելու միջոցով հնարավոր է դառնում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 58 տոկոսով, որը և կարևոր գործոն է ծառայում մեղմացնելու աշխատանքի բալանսը ու աշխատուժի լրացուցիչ պահանջը սահմանափակում է 7 հազար մարդով։ Աշխատուժի լրացուցիչ պահանջը տրանսպորտում և կապում յոթնամյակի տարիներին կկազմի 6500—7000 մարդ։ Համեմատաբար մեծ պահանջ կներկայացնեն սովխոզները։

1959—65 թվականներին ծավալվող ոռոգման աշխատանքների շնորհիվ յուրացվող նոր հողերի զգալի մասի վրա կկազմակերպվեն սովխոզներ։ Հաշվի առնելով նաև աշխատանքի արտադրողականության բարձրացումը Հայաստանի սովխոզներում, բանվոր-ծառայողների քանակը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 80 տոկոսով և կհասնի 37 հազարի։ Նորոգման տեխնիկական կայանների հետ միասին պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների աշխատողների ընդհանուր թիվը 1965 թվականին կհասնի 41—42 հազար մարդու։

Ընդհանուր առմամբ Հայկական ՍՍՌ-ում բանվոր-ծառայողների թվաքանակը յոթնամյակի ընթացքում կավելանա 129 հազար մարդով, կամ 1958 թվականի համեմատությամբ կաճի 36 տոկոսով։ Հատկանշական է, որ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի աշխատանքային ռեսուրսներն ավելանում են ընդամենը 11—12 տոկոսով, ուստի աշխատուժի պահանջը միայն բանվոր-ծառայողների գծով գերազանցում է աշխատանքային ռեսուրսների ընդհանուր աճը 29 հազար մարդով։ Այստեղից էլ ահա ժողովրդական տնտեսությանը պահանջվող քանակի աշխատուժով ապահովելու համար անհրաժեշտ է երևան հանել լրացուցիչ ռեզերվներ և օգտագործել դրանք, մասնավորապես, պետական սոցիալիստական սեկտորում։ Պետք է ասել, որ այդպիսի ռեզերվներ գոյություն ունեն ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում։ Բավական է ասել, որ 1958 թվականին Հայկական ՍՍՌ աշխատանքային ռեսուրսների որոշ մասը զբաղված էր տնային և անձնական օժանդակ տնտեսության մեջ։ Դրա մի զգալի մասը յոթնամյակի վերջում ներգրավված կլինի սոցիալիստական տնտեսության և կուլտուրական շինարարության տարբեր ճյուղերում։



Յոթնամյակի վերջում Հայկական ՍՍՌ աշխատանքային ռեսուրսների բալանսը 1958 թվականի համեմատությամբ լուրջ փոփոխություններ կկրի, որը երևում է հետևյալ տվյալներից (տոկոսներով ընդհանուրի մեջ)։

| Աշխատանքային ռեսուրսներն ըստ բնակավայրերի | 1965 թ. | 1965 թ. տոկոսներով 1959 թ. նկատմամբ |
|---|---|---|
| I. Աշխատանքային ռեսուրսներ (16—59 տարեկան տղամարդիկ և 16—54 տարեկան կանայք, առանց հաշմանդամների) | 100 | 111 |
| II. Աշխատանքային ռեսուրսների բաշխումը այդ թվում՝ | | |
| 1. բանվոր-ծառայողներ | 48,6 | 136 |
| ա) արդյունաբերություն | 20 | 160 |
| բ) շինարարություն | 4,4 | 112 |
| գ) տրանսպորտ և կապ | 4,0 | 123 |
| դ) պետական գյուղատնտեսական ձեռնարկություն | 4,3 | 123 |
| ե) առևտուր և հասարակական սնունդ | 3,0 | 120 |
| զ) առողջապահություն | 3,1 | 130 |
| է) լուսավորություն, կուլտուրա, գիտություն և արվեստ | 6 | 129 |
| ը) պետական ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը (կոմունալ տնտեսություն, պետական կառավարման օրգաններ, վարկային հիմնարկներ և այլն) | 3,8 | 58 |
| 2. Արհեստագործական կոոպերացիայի արտելի անդամներ | 0,5 | 63 |
| 3. Հանրային տնտեսության մեջ աշխատող կոլտնտեսականներ (լրիվ աշխատողների հաշվով) | 22,5 | 98 |
| 4. 16 և ավելի բարձր տարիքի սովորողներ (արտադրությունից կտրված) | 10 | 116 |
| 5. Տնային և օժանդակ տնտեսությամբ զբաղվածներ | 18,4 | 82 |

Աշխատանքային ռեսուրսների այս բալանսը, որը հավակնություն չունի կատարյալ համարվելու, այնուհանդերձ հնարավորություն է տալիս կատարել մի քանի եզրակացություններ։ Նախ, բալանսից երևում է, որ պետական սոցիալիստական սեկտորում բանվոր-ծառայողների աճի տեմպերը գերազանցում են աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերը, որի հետևանքով աշխատունակ բնակչության ընդհանուր քանակի մեջ բանվոր-ծառայողների տեսակարար կշիռն անընդհատ բարձրանալու տենդենց է ցուցաբերում։

Չափազանց ուշագրավ փոփոխություններ են կատարվում բանվոր-ծառայողներին ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի բաշխման կառուցվածքում։ Այսպես, եթե բանվոր-ծառայողների ողջ քանակությունը բաժանենք երկու մեծ խմբերի, այն է՝ նյութական արտադրության ճյուղերում զբաղվածների և ոչ արտադրական ճյուղերում զբաղվածների, մենք կնկատենք հետևյալ երևույթները։ Յոթնամյակի ընթացքում աշխատունակ բնակչության ամբողջ աճը ծառայելու է նյութական արտադրության ճյուղերն աշխատուժով համալրելուն, որի հետևանքով վերջինիս տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի մեջ գնալով ավելի է բարձրանում։

Աշխատանքային ռեսուրսների և նրանց բաշխման բալանսում այն բնութագրվում է հետևյալ կերպ (տոկոսներով)։

| | 1958 թ. | 1965 թ. |
|---|---|---|
| Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված անձնակազմը այդ թվում՝ | 100 | 100 |
| Արտադրական ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը (տոկոսներով) | 78,9 | 82,9 |

Այս տվյալներից երևում է, որ յոթնամյակի վերջում արտադրական ոլորտում աշխատողների տեսակարար կշիռը բարձրանում է մինչև 82,9 տոկոսի։ Հարց է ծագում, կարո՞ղ է արդյոք զարգացման այդ տենդենցն օրենքի ուժ ձեռք բերել կոմունիստական շինարարության հետագա էտապներում։ Այդ հարցին պատասխանելու համար հարկ կա, որ, այսպես կոչված, ոչ արտադրական ոլորտի մեջ մտնող ճյուղերը նույնպես խմբավորվեն, հաշվի առնելով նրանցից յուրաքանչյուրի դերը հասարակության պահանջմունքների բավարարման ասպարեզում։ Ոչ արտադրական ոլորտը կարելի է բաժանել երկու ենթախմբերի։ Առաջինը պետական տնտեսական կառավարման ապարատն է, հասարակական կազմակերպությունները, վարկային և ապահովագրական հիմնարկները։ Երկրորդի մեջ պետք է հաշվել ժողովրդի առողջապահությունը, լուսավորությունը, կուլտուրան և արվեստը։ Կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում ոչ արտադրական ոլորտի առաջին ենթախմբի մեջ մտնող ճյուղերի շրջանակները գնալով պետք է նեղանան, իսկ նրանցում աշխատողների քանակը հարաբերականորեն, առանձին դեպքում նույնիսկ բացարձակորեն, պետք է պակասի։

Պետական կառավարման ապարատի բաժինն աշխատանքային ռեսուրսների ընդհանուր բալանսում պակասելու պրոցեսը ինտենսիվ կերպարանք ընդունեց մասնավորապես վերջին տարիներում և այն պետք է շարունակվի այսուհետև էլ։ Զարգացման տենդենցն այն է, որ պետական կառավարման ապարատը գնալով պետք է վերաճի տնտեսության կազմակերպման և պլանավորման ապարատի, ընդ որում, պլանավորման ու կազմակերպման ֆունկցիաների մի մասը կանցնի անմիջական արտադրողների կոլեկտիվներին։

Բոլորովին այլ հարաբերակցություններ են գոյանալու արտադրական ոլորտի և ոչ արտադրական ոլորտի երկրորդ ենթախմբի աշխատանքային ծախսումների միջև։ Քանի որ ոչ արտադրական ոլորտի մեջ են մտնում առողջապահությունը, կոմունալ տնտեսությունը, լուսավորությունը, գիտությունը, կուլտուրան և արվեստը, որոնք ունեն մի ընդհանուր նշանակություն, այն է՝ սպասարկել բնակչությանը, բավարարել նրանց պահանջմունքները։ Կոմունիզմի ծավալուն շինարարության էտապի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ գնալով ավելի ու ավելի են մեծանում հասարակության այն պահանջմունքները, որոնց բավարարումը կատարվում է հասարակական ֆոնդերի հաշվին, ինչպես, օրինակ, կրթության, առողջապահության, լուսավորության և այլն։ Այդ ֆոնդերի մեծացումը միաժամանակ նշանակում է



գործունեության այդ ոլորտը ներգրավել ավելի մեծ թվով աշխատողների։ Դրան համապատասխան պետք է մեծանա աշխատանքի ծախսումների բաժինը ոչ արտադրական ոլորտի այդ երկրորդ մարզում։ Այդ բաժնի մեծացումը պայմանավորված է նաև նրանով, որ աշխատանքի արտադրողականությունը (պայմանականորեն) այդ ոլորտում չի կարող բարձրանալ այնպիսի չափերով, որպիսի չափերով այն բարձրանում է նյութական արտադրության ճյուղերում։ Այդպես է, որովհետև ոչ արտադրական ոլորտի այդ մասի մի շարք ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը որոշվում է գլխավորապես իրենց՝ աշխատողների կարողությամբ ու հմտությամբ և ավելի քիչ չափով կախում ունի արտադրության տեխնիկայից։ Մանկավարժի, բժշկի, գիտական աշխատողի, գրականագետի և այլոց աշխատանքի արտադրողականությունը քիչ չափով է կախված արտադրության միջոցների կատարելագործումից։

Դրա հետ միասին կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության անցնելը հրամայաբար պահանջում է ավելի ու ավելի բարձրացնել հասարակության բոլոր անդամների կուլտուրական, առողջապահական, էսթետիկական պահանջմունքների բավարարման աստիճանը։ Այժմ ոչ արտադրական ոլորտը բաժանենք երկու խմբի և փորձենք ցույց տալ դրանցից յուրաքանչյուրում աշխատանքային ծախսումների զարգացման տենդենցը Հայաստանում։

| | 1940 թ. | 1950 թ. | 1958 թ. | 1965 թ. |
|---|---|---|---|---|
| Ոչ արտադրական ոլորտի աշխատողների թվաքանակը (հազարներով) | 59,2 | 88 | 115 | 140 |
| Պետական կառավարման ապարատում և հիմնարկներում | 14 | 14 | 12 | 10 |
| Սոց. կուլտ. ճյուղերում | 45,2 | 74 | 103 | 130 |

Ավելի երկար ժամանակաշրջանի համար աշխատանքային սիստեմների բաշխման պրոպորցիաները որոշելու նկատառումով չափազանց հետաքրքիր է հետևել նյութական արտադրության ճյուղերում զբաղվածների աճի և սոցիալ-կուլտուրական ճյուղերի աճի տեմպերի ընթացքին. (1940 թվականը հավասար է 100-ի)։

| | 1940 թ. | 1950 թ. | 1958 թ. | 1965 թ. |
|---|---|---|---|---|
| Նյութական արտադրության ոլորտը | 100 | 175 | 300 | 455 |
| Սոց. կուլտ. ճյուղեր | 100 | 163,7 | 230 | 290 |

Այստեղից հետևում է, որ նյութական արտադրության ոլորտում աշխատողների աճի տեմպերը սոցիալ-կուլտուրական ճյուղերի աշխատողների աճի տեմպերից բարձր է 1,5 անգամ։ Աճի տեմպերի միջև եղած այդ տարբերությունները կշարունակվեն նաև յոթնամյակից հետո։

Հայաստանի աշխատանքային ռեսուրսների օգտագործման բալանսից բխող մյուս հետևությունը աշխատանքային ռեսուրսներն ըստ քաղաքի և գյուղի բաշխելու հարցն է։ 1965 թվականին գյուղի տեսակարար կշիռը, 1958 թվականի համեմատությամբ իջնում է։ Եթե 1958 թվականին այն կազմում էր մոտավորապես 51 տոկոս, ապա 1965 թվականին իջնելու է մինչև 45 տոկոսի։

Ի՞նչ փոփոխության կենթարկվեն մի շարք պրոպորցիաներ այս յոթնամյակից հետո, ասենք մի տասնամյակի կամ յոթնամյակի ընթացքում։ Զարգացման ընդհանուր տենդենցն այն է, որ աշխատանքային ռեսուրսների ընդհանուր քանակի մեջ գյուղի տեսակարար կշիռը հետզհետե իջնելու է։ Դա ավելի շեշտված ձևով կարտահայտվի Հայաստանում և պայմանավորված է հետևյալ հանգամանքներով։ Առաջինը տնտեսական շրջանառության մեջ նոր հողեր ներգրավելու հնարավորությունների սահմանափակությունն է։ Այս յոթնամյակի տարիներին ծավալվող շինարարական աշխատանքների հաշվին յուրացվող հողերը կկազմեն մոտավորապես 50 տոկոսը այն հողերի, որոնք պետք է յուրացվեն հետևյալ յոթնամյակում կամ տասնամյակում։

Բացարձակ մեծությամբ այս յոթնամյակից հետո գալիք յոթնամյակում նոր յուրացվող հողերի ընդհանուր տարածությունը կարող է հասնել 50 հազար հեկտարի։ Դրանց մեծ մասի վրա ամենայն հավանականությամբ կկազմակերպվեն սովխոզներ։ Այդ նշանակում է, որ գյուղատնտեսության մեջ աշխատողների ընդհանուր թվի մեջ կիջնի կոլտնտեսականների տեսակարար կշիռը։ Այնուհետև, գյուղատնտեսական աշխատանքների հետագա մեքենայացման բազայի վրա կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը, որը ոչ միայն կփոխհատուցի նոր յուրացվող հողերի հետ կապված լրացուցիչ աշխատուժի պահանջը, այլև կազատի որոշակի թվով աշխատողներ գյուղատնտեսությունից։ Բացի դրանից, այս յոթնամյակի ընթացքում նոր ձևավորվող արդյունաբերական կենտրոնները հետևյալ յոթնամյակում ավելի կմեծանան, կառաջանան նոր քաղաքատիպ վայրեր այժմյան գյուղական վայրերի փոխարեն։ Այս ամենի շնորհիվ կփոխվի Հայաստանի էկոնոմիկայի ճյուղային կառուցվածքը, որը կպայմանավորի քաղաքի ու գյուղի աշխատանքային ռեսուրսների բաշխման պրոպորցիաները հօգուտ քաղաքի։

Ինչպես երևում է աշխատանքային ռեսուրսների բալանսից, յոթնամյակի վերջում որոշակի թվով աշխատողներ դեռևս զբաղված կլինեն տնային և օժանդակ տնտեսության մեջ։ Այս յոթնամյակից հետո աշխատանքային ռեսուրսների բալանսի այդ վերջին հոդվածի տեսակարար կշիռն ամբողջ բալանսի մեջ խիստ կիջնի։

Յոթնամյա պլանի կատարմամբ խոշորագույն քայլ կկատարվի սոցիալիստական էկոնոմիկան կոմունիստական հասարակության բարձր փուլին հատուկ էկոնոմիկայի վերաճման ուղղությամբ։ Ինչպես այս յոթնամյակում, այնպես էլ հետևյալ յոթնամյակում տեղի կունենա արդյունաբերության և, առաջին հերթին, ծանր արդյունաբերության բարձր տեմպերով զարգացում։ Հաշվի առնելով Հայաստանի արդյունաբերության հիմնական ֆոնդերի և արտադրական կարողությունների այն մեծ աճը, որ ձեռք է բերվելու այս յոթնամյակում և ապա այն ներդրումները, որ կկատարվեն արդյունաբերական շինարարության մեջ հետևյալ յոթնամյակում, արդյունաբերության արտադրանք ավելացնելու համար կստեղծվեն նյութական լայն հնարավորություններ։



Տեխնիկական առաջադիմությունը կշարունակվի ավելի մեծ մասշտաբներով, որը և կապահովի աշխատանքի արտադրողականության հետագա անշեղ բարձրացումը։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ 1972 թվականին Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի բացարձակ ծավալը, հաշված այժմյան գներով, կհասնի մինչև 39—40 միլիարդ ռուբլու։ Արդյունաբերության արտադրանքի այդպիսի աճը նախ ձեռք կբերվի աշխատանքի արտադրողականության բարձրացման և ապա՝ աշխատողների նոր խմբեր արդյունաբերության մեջ ներգրավելու շնորհիվ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ամենազգույշ հաշվարկումներով նույնիսկ 1966—1972 թվականների ընթացքում կկազմի ոչ պակաս քան 50—52 տոկոս։ Նկատի ունենալով, որ այդ ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում կկիրառվի 35-ժամյա աշխատանքային շաբաթ, ապա աշխատանքի արտադրողականությունը մեկ ժամվա կամ մեկ օրվա հաշվով ավելի բարձր կլինի։ Այսպիսով, 1972 թվականին Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատողների ընդհանուր թվաքանակը կհասնի 321 հազարի՝ 1965 թվականի 199 հազարի դիմաց։ Այլ կերպ ասած՝ աշխատուժի լրացուցիչ պահանջը 1966—1972 թվականներին արդյունաբերության համար կկազմի 122 հազար մարդ։ Եթե նկատի ունենանք, որ այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքային հասակ ունեցող բնակչությունը կավելանա 200 հազարով, ապա աշխատունակ բնակչության ամբողջ աճի 61 տոկոսը կկլանի արդյունաբերությունը։

Գյուղատնտեսության զարգացման բարձր տեմպերը կշարունակվեն ինչպես սովխոզներում, այնպես էլ կոլտնտեսություններում։ Սակայն զարգացման տենդենցն այնպիսին կլինի, որ գյուղատնտեսական ամբողջ արտադրանքի մեջ սովխոզների տեսակարար կշիռը կբարձրանա։ Ներկայումս գոյություն ունեցող կոլտնտեսությունների թիվը որոշ չափով կպակասի այս յոթնամյակի վերջում։ Հետևյալ յոթնամյակում կոլտնտեսություններն անպայման կենթարկվեն խոշորացման։ Նախ այն պատճառով, որ դրանք փոքր են և հնարավորություն չեն տալիս օգտագործելու սոցիալիստական խոշոր տնտեսության բոլոր առավելությունները, ապա նաև այն պատճառով, որ ներկայիս կոլտնտեսություններից յուրաքանչյուրը տերիտորիալ տեսակետից մի գյուղ է ընդգրկում։ Այդ գյուղերից շատերն իրենց մեծությամբ, բնակչության քանակով հնարավորություն չեն տալիս գյուղական ապրելակերպն արմատապես վերափոխելու, անհրաժեշտ հաստատություններ, ինչպես, օրինակ՝ լիարժեք դպրոց, կուլտուրական այլ հիմնարկներ, հիվանդանոց, գյուղատնտեսական հումքը վերամշակող ձեռնարկություններ և այլն ստեղծելու։

1966—1972 թվականներին մեր գյուղերի մեծ մասը իր արտադրական և կենցաղային հատկանիշներով հետզհետե պետք է մոտենա քաղաքին, սակայն տնտեսապես ձեռնտու չէ, տեխնիկապես էլ անհնարին է կոմունալ և այլ հարմարանքների ստեղծումը այնպիսի գյուղերում, որոնք ունեն 200—500 բնակիչ։ Այս ամենը ցույց են տալիս, որ կոլտնտեսությունների ներկա քանակությունը պետք է որ պակասի ի հաշիվ նրանց խոշորացման։ Այս յոթնամյակում արդեն միջկոլտնտեսային տնտեսական կապերի ուժեղացումն անհրաժեշտ նախադրյալներ կնախապատրաստի կոլտնտեսությունների հետագա խոշորացման համար։

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ գյուղատնտեսական մշակույթների համար պիտանի հողերի աննշան լայնացման հետ զուգընթաց գյուղի աշխատունակ բնակչության որոշ մասը կանցնի քաղաք։ Դրա հետևանքով 1966—1972 թվականներին կոլտնտեսային արտադրության մեջ աշխատողների քանակությունը թե՛ բացարձակորեն և թե հարաբերականորեն կպակասի։ 1972 թվականին կոլտնտեսային արտադրության կողմից աշխատուժի պահանջը կկազմի 210 հազար մարդ, 1965 թվականի՝ 224 հազարի դիմաց։ Պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում աշխատուժի պահանջը կաճի մեծ չափով և 1972 թվականին կհասնի մինչև 74 հազարի։

Շատ մեծ ծավալ կստանա ինչպես արտադրական, այնպես էլ ոչ արտադրական բնույթի շինարարությունը և այդ հիման վրա նրա մեջ զբաղվածների թիվը 1972 թվականին կհասնի մինչև 55 հազար մարդու։ Նյութական արտադրության ճյուղերից նշանակալի զարգացում կստանան տրանսպորտը և կապը, նրանցում զբաղվածների տեսակարար կշիռը աշխատողների ընդհանուր թվաքանակի մեջ կկրկնապատկվի։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներին համապատասխան շատ լայն ծավալ կստանա հասարակական սնունդը և նրանում աշխատողների թիվը առևտրի աշխատողների հետ միասին կհասնի մինչև 60 հազար մարդու։

Անցումը սոցիալիզմից դեպի կոմունիզմ ո՛չ միայն նշանակում է ապահովել հասարակության բոլոր անդամների նյութական պահանջմունքների բավարարումը, այլև վերափոխել նրանց հոգևոր կերպարը, բարձրացնել նրանց կուլտուրական մակարդակը։ Այդ խնդրին է ենթարկված կրթության ամբողջ սիստեմի վերափոխումը, որին այժմ ձեռնամուխ է եղել մեր երկիրը։ Դրան համապատասխան կուլտուրայի, գիտության և արվեստի աշխատողների թվաքանակը 1972 թվականին կհասնի մինչև 100 հազար մարդու (1965 թվականին 60 հազար)։ Նույնպիսի բարձր աճ կունենա նաև ժողովրդական առողջապահության աշխատողների թվաքանակը, որը 1972 թվականին կհասնի մինչև 55 հազար մարդու։ Հայկական ՍՍՌ բնակչության ընդհանուր թվաքանակը կհասնի 2450 հազար մարդու։ Աշխատանքային ռեսուրսները կհասնեն մեկ միլիոն 200 հազար մարդու, այսինքն՝ այնքան, որքան կազմում էր Հայաստանի ամբողջ բնակչությունը 1940 թվականին։ Եվ դա հասկանալի է։ «Մարդկանց պատմական ստեղծագործության ընդլայնմանն ու խորացմանը զուգընթաց պետք է աճի նաև բնակչության այն մասսայի չափը, որը պատմական գիտակից գործիչ է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 670)։ Իսկ որքան շատ են այն մարդիկ, որոնք ակտիվորեն մասնակցում են աշխարհի վերափոխմանը, այնքան ավելի արագ կընթանա զարգացումը դեպի կոմունիզմ։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՄԱՆ ՄԱՍԻՆ

**Վ. ՋԱՔԱՐՅԱՆ**

Մեր պարտիայի XXI արտակարգ համագումարը մշակեց Կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության պատմական պլանը և մեծագույն խորաթափանցությամբ ընդգծեց մեր երկրի պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների, յուրաքանչյուր աշխատողի կոնկրետ անելիքները այդ պլանի կատարման գործում։

Այժմ բոլոր պարտիական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների գործունեության առանցքը կազմում են ՍՄԿՊ XXI արտակարգ համագումարի որոշումները։ Վերակառուցելով աշխատանքը համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործման նշանաբանով, մեր լայնարձակ երկրով մեկ ծավալվել է սոցիալիստական հզոր մրցություն յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Հանդես են եկել հայրենանվեր աշխատանքի նոր մեթոդներ, լայն ծավալ է ստացել կոմունիստական աշխատանքի բրիգադաների շարժումը մեր երկրում, որը բացառիկ նշանակություն ունի ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, այնպես էլ աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում։ ՍՄԿՊ XXI համագումարից հետո անցած ժամանակամիջոցում մեր երկրում ձեռք են բերվել խոշոր նվաճումներ, որոնք արդյունք են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քաղաքական ու կազմակերպական վիթխարի գործունեության, աշխատավորական լայն մասսաների մոբիլիզացման ու է՛լ ավելի սերտ համախմբման մեր պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն պարտիական բոլոր կազմակերպությունների ուշադրությունը բևեռում է պարտիական կազմակերպությունների ինքնագործունեության զարգացման և կազմակերպական աշխատանքի մեթոդների կատարելագործման վրա։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշման մեջ նշված է. «Յոթնամյա պլանի կատարումը կպահանջի պարտիայի գաղափարական-քաղաքական և կազմակերպական ամբողջ աշխատանքի մակարդակի հետագա բարձրացում, սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերի ակտիվ մոբիլիզացում։ Անհրաժեշտ է բոլոր աշխատավորների գիտակցությանը հասցնել պլանի առաջադրանքները, յուրաքանչյուր կոլեկտիվի ջանքերը կազմակերպել և ուղղել դրանց կատարման նպատակին, վճռականորեն արմատախիլ անել թերությունները, հաղթահարել աշխատանքում հանդիպող դժվարությունները»։

Մեր պարտիայի գործունեության ոճի բնորոշ գիծն է խոսքի և գործի, որոշման և կատարման միասնությունը. ահա թե ինչու որոշումն ընդունվե-

*լուց հետո մոբիլիզացվում են ամբողջ ուժերը և գործադրվում բոլոր ջանքերը, ընդունված որոշումները կենսագործելու համար։ Այս գործում որոշող դերը պատկանում է պարտիական վերահսկողությանն ու կատարման ստուգմանը։*

***

*Պարտիան սովորեցնում է, որ որոշումների ընդունումը դա գործի սկիզբն է, իսկ նրանց կատարումը մեր կենտրոնական խնդիրը։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր՝ ստուգել որոշումների կատարումը, ստուգել աշխատողներին աշխատանքի փաստական արդյունքներով. սա է գլխավորը կազմակերպական աշխատանքում։ Դեռևս 1922 թվականի հունվարի 24-ին Ա. Դ. Ցյուրուպային գրած «Ժողկոմսովետի և ԱՊԽ աշխատանքի նոր դրվածքի մասին» նամակում Վ. Ի. Լենինն ընդգծում էր.*

*«Կատարման ստուգում, այն բանի ստուգումը, ինչ որ ստացվում է իրականում — ահա Ձեր հիմնական ու գլխավոր խնդիրը... կենտրոնացեք կատարման ստուգման վրա» (Երկեր, հատ. 35, էջ 578—579)։*

*Կատարման ստուգումը Վ. Ի. Լենինը համարում էր աշխատողներին օգնելու, աճեցնելու և ուսումնասիրության կարևորագույն մեթոդ։ 1922 թվականին կրկին անդրադառնալով այդ հարցին, Լենինը ցուցում էր տալիս. «Ստուգեցեք աշխատանքը, խորացեք էության մեջ, լրջորեն կրթեցեք, սովորեցրեք, խարազանեք։ Ուսումնասիրել մարդկանց, որոնել ձեռնհաս աշխատողներ։ Այժմ էականն այդ է...» (Երկեր, հատ. 35, էջ 582)։ Զանցած մեկ ամիս, մեր պարտիայի XI համագումարում Վ. Ի. Լենինը նորից անդրադառնում է կատարման ստուգմանը, նշելով, որ պետք է «...հասնել այն բանին, ինչ որ, իմ կարծիքով կազմում է այժմյան քաղաքական մոմենտի ամբողջ միխը, ամբողջ էությունը, ծանրության կենտրոնը տեղափոխել մարդկանց ընտրության, փաստական կատարումն ստուգելու վրա» (Երկեր, հատ. 33, էջ 365)։*

*Լենինյան դրույթները կատարման ստուգման մասին հանդիսանում են մեր պարտիայի կազմակերպական գործունեության հիմքն ու էությունը։ Ելնելով դրանից և կազմակերպելով աշխատանքն այդ հիմքի վրա, մեր պարտիան ու նրա Կենտրոնական Կոմիտեն ապահովում են ամենօրյա վերահսկողությունն ընդունված որոշումների կատարման վրա։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը դրեց կատարման ստուգման արմատական բարելավման հարցը որպես կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման և պարտիական օրգանների ղեկավար գործունեության բարելավման որոշող պայման։ Համագումարի բանաձևի մեջ ասված է.*

*«Կազմակերպական աշխատանքի մակարդակը վճռական չափով կախված է կատարման ստուգման, կադրերի ընտրության ու դաստիարակության և տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր բնագավառներում կոմունիստների տեղաբաշխման գործի դրվածքից» (ՍՄԿՊ XX համագումարի բանաձև, էջ 30, Հայպետհրատ, 1956 թ.)։*

*Ահա թե ինչու կատարման ստուգման և որոշումների իրականացման գործում վերահսկողության հետևողական կիրառման հետ միասին պարտիան սիստեմատիկ կերպով կատարելագործում է ողջ կազմակերպական աշխատանքի, վերահսկողության և կատարման ստուգման մեթոդներն ու ձևերը։ Այս բանի կոնկրետ դրսևորումներից մեկը սկզբնական պարտիական կազմակերպու-*



*թյան վերահսկողության ֆունկցիայի կատարելագործումն է, որն ըստ էության նշանակում է՝ պարտիական վերահսկողության նոր կազմակերպական ձև։*

*Համաձայն այդ նոր ձևի՝ արտադրական ու առևտրական ձեռնարկությունների, տրանսպորտի, շինարարության և արտադրության պատվերները կատարող նախագծային կազմակերպությունների կոնստրուկտորական բյուրոներում, գիտա-հետազոտական ինստիտուտների սկզբնական պարտկազմակերպություններում ստեղծվում են վերահսկողության հանձնաժողովներ՝ կազմված ՍՄԿՊ անդամներից և անդամության թեկնածուներից։ Այս հանձնաժողովների միջոցով սկզբնական պարտիական կազմակերպությունն ապահովում է վերահսկողությունը ձեռնարկության գործունեության նկատմամբ։*

*Այժմ Հայաստանի պարտկազմակերպություններում ստեղծված են 1078 հանձնաժողովներ։ Երևանի կոնսերվի գործարանի սկզբնական պարտկազմակերպությունում ստեղծված են վերահսկողության երեք հանձնաժողովներ՝ արտադրական պլանների կատարման և նոր տեխնիկայի արմատավորման, թողարկվող արտադրանքի որակի և գործարանի կողմից պետական պարտավորությունների կատարման և վերահսկող այլ հանձնաժողովներ։ Հանձնաժողովները թվով տարբեր կարող են լինել, նայած բնագավառների տարբերության։ Այս հարցը որոշվում է պարտիական կազմակերպության հայեցողությամբ, ելնելով արտադրության բնույթից և այն հարցերի կարևորությունից, որոնց գծով կազմակերպությունը անհրաժեշտ է համարում վերահսկողության հանձնաժողովներ ստեղծել։*

*Վերահսկողության հանձնաժողովների սկզբնական քայլերը զգալի չափով ուժեղացրել են պարտիական կազմակերպական աշխատանքը ձեռնարկություններում։ Մնում է, որ քաղկոմներն ու շրջկոմներն ապահովեն ամենօրյա օգնությունն սկզբնական պարտկազմակերպություններին՝ պարտիական վերահսկողության նոր ձևը հաջողությամբ իրականացնելու համար։*

*Գլխավորն այժմ այն է, որ պարտիական կազմակերպություններն ապահովեն ամենօրյա խիստ վերահսկողություն ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների և այդ կապակցությամբ վերցրված պարտավորությունների կատարման նկատմամբ, միշտ հիշելով համագումարի պատմական պահանջն այն մասին, որ՝ «Այժմ Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր խնդիրն է ապահովել ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի անվերապահ կատարումը»։*

*Պարտիայի դիրեկտիվներն ու որոշումներն անխախտ օրենք են մեզ համար, իսկ նրանց անթերի կատարումը մեր գործունեության գերագույն նպատակը։ Ահա թե ինչու յուրաքանչյուր աշխատող պետք է արդյունավետ կերպով օգտագործի իր ուժերն ու ընդունակությունները պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրները ժամանակին կատարելու համար։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը քննության առավ պարտիայի դիրեկտիվների ու որոշումների կատարման ընթացքը երկրի մի շարք տնտեսական շրջաններում և տվեց ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում տեխնիկական պրոգրեսի ծավալուն ծրագիրը։ Պլենումի որոշումներն է՛լ ավելի բարձրացրին պարտիական ու տնտեսական աշխատողների պատասխանատվությունը և մոբիլիզացրին ողջ աշխատավորությանը առաջադրված խնդիրների կատարման համար։ Սրա հետ մեկտեղ պլենումը նշեց, որ «Ներկա պայմաններում վերահսկումն ու կատարման ստուգումը*

ձեռք են բերում առաջնակարգ նշանակություն և պետք է լինեն բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում»: Հետևապես պարտիական կազմակերպությունն իր ամենօրյա գործունեության օրգանական մասը պետք է դարձնի կատարման ստուգումը, լավ հասկանալով, որ ղեկավարել՝ նշանակում է կազմակերպել մասսաներին որոշումների կատարման համար և ստուգել նրանց փաստական կատարումը:

Այսպիսով, որոշումների կատարման ստուգումը կազմակերպական աշխատանքի կարևորագույն մասն է, նրա լավագույն դրվածքն ապահովում է որոշման և կատարման միասնությունը, խոսքի ու գործի միասնությունը: Սիստեմատիկ կերպով ստուգել կատարումը և ցույց տալ կոնկրետ ու գործնական օգնություն որոշումների կատարման գործում, մեր կենտրոնական խնդիրն է:

Կատարման ստուգման կարևորագույն դրսևորումներից մեկն է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի առաջիկա պլենումը, որը քննության է առնելու պարտիայի XXI համագումարի և 1958 թվականի Դեկտեմբերյան պլենումի որոշումների կենսագործման ընթացքը՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության զարգացման բնագավառում:

Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի այդ ոճը իր կոնկրետ արտահայտությունն է գտնում նաև միութենական, երկրամասային և մարզային պարտիական ղեկավար օրգանների գործունեության մեջ: Այսպես, օրինակ, վերջերս Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պլենումը քննության առավ գյուղատնտեսության բնագավառում կոլտնտեսությունների, սովխոզների վերցրած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը Արտաշատի, Մարտունու և Իջևանի շրջաններում: Բնական է, որ այդ միջոցառման մեջ մարմնավորված են պարտիական վերահսկողությունն ու կատարման ստուգումը:

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՕՊԵՐԱՏԻՎ ՈՒ ԳՈՐԾՈՆ ՄԵԹՈԴՆ Է

Կատարման ստուգման լավագույն դրվածքը հնարավորություն է տալիս օպերատիվ կերպով հետևելու որոշումների կատարման ընթացքին, ժամանակին անհրաժեշտ օգնություն ցույց տալու կատարողներին: Որոշումների կատարման ստուգման բազմազան մեթոդներից առաջինն այն է, որ անմիջապես այն օղակում, որտեղ պայքար է տարվում որոշումների իրականացման համար, պետք է ծավալել կազմակերպական աշխատանք և սիստեմատիկորեն հսկել որոշումների կատարմանը:

«Պարտիական-կազմակերպական աշխատանքում գլխավորը մասսաների մեջ կատարվող աշխատանքն է, ներգործությունը մասսաների վրա, մասսաների կազմակերպումը՝ պայքարելու պարտիայի առաջադրած տնտեսական-քաղաքական խնդիրների կենսագործման համար» (Ն. Ս. Խրուշչով, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956):

Կատարման ստուգումը ամենօրյա կենդանի կազմակերպական աշխատանք է մարդկանց հետ: Այսպիսի գործունեությունը բացառում է աշխատողների լճացումը և որոշումների կատարման ձգձգումը: Այլ կերպ ինչի՞ նման է, երբ այս կամ այն կազմակերպության ղեկավարներ որոշում ընդունելուց հետո իրենց միսիան ավարտված են համարում և այլևս հոգ չեն տանում դրանց



կատարման համար: Ամենալավ որոշումը կկորցնի իր նշանակությունը, եթե ընդունվելուց անմիջապես հետո չկազմակերպվի կատարումը: Կյանքում ոչ մի որոշում ինքն իրեն չի կատարվում, այն կենսագործվում է կոնկրետ աշխատանքով:

Անհրաժեշտ ենք համարում երկու խոսք ասել օպերատիվ աշխատանքի ոչ ճիշտ ըմբռնման մասին: Որոշ աշխատողներ օպերատիվություն են համարում այն, երբ այցելում են գործարան, կոլտնտեսություն, հիմնարկություն, վերցնում իրենց համար անհրաժեշտ որոշ տվյալներ, գուցե և որոշ հարցուփորձ անում: Սակայն թերությունները տվյալ օղակում մնում են չբացահայտված և առաջադրանքներն անկատար. այստեղ ի՞նչ խոսք կարող է լինել օպերատիվության մասին: Սա օպերատիվություն չէ: Օպերատիվ, կազմակերպական աշխատանքը չի կարելի փոխարինել էպիզոդիկ, մակերեսային այցելություններով: Կատարման ստուգումը կազմակերպական աշխատանքի բաղկացուցիչ մասն է, հետևապես այն չի կարող էպիզոդիկ բնույթ կրել, այն արվում է մեր ամենօրյա կազմակերպական գործունեության հետ և ժամանակին: Սխալ է և այն պրակտիկան, երբ որոշումների կատարման ստուգման մասին հիշում են միայն այն ժամանակ, երբ դրանք չեն կատարվել, կամ չկատարվելու վտանգին են ենթարկված: Իհարկե, այդպիսի ստուգումը հիմնականում հանգում է մարդկանց տույժի ենթարկելուն կամ աշխատանքից հանելուն:

Որ որոշում չկատարողը պետք է պատասխանատվության ենթարկվի, դա կասկած չի հարուցում. սակայն որոշումները հանվում են ոչ թե այդ, այլ աշխատանքում տեղաշարժ կատարելու նպատակով: Հետևապես կատարման ստուգումը պետք է լինի ժամանակին, օպերատիվ: Մասսաներին բացատրել որոշումները և նրանց կազմակերպել ու մոբիլիզացնել դրանց կատարման համար՝ սա է գլխավորը: Չի կարելի ընդունված որոշումները կամ առաջադրված խնդիրները թողնել բախտի քմահաճույքին:

Օպերատիվությունը պահանջում է՝ ո՛չ միայն լինել տեղում, այլև խոր ու բազմակողմանիորեն թափանցել գործի էության մեջ, պարզել աշխատանքի վիճակը մեր պարտիայի դիրեկտիվների ու որոշումների լույսի տակ, տեսնել ինչն է կատարված, ինչը չի կատարված. վեր հանել թերությունները, նրանց իրական պատճառները, եղած հնարավորությունների օգտագործումը, աշխատանքի պրոգրեսիվ մեթոդների ներդրումը, ցույց տալով աշխատողներին գործարար օգնություն որոշումների կատարման գործում: Այլ կերպ ասած, օպերատիվությունն աշխատանքում այնպիսի մեթոդ է, որն արագացնում է որոշումների անշեղ կատարումը և դրանով իսկ ապահովում հաղթանակը աշխատանքի այս կամ այն ճակատամասում: Այսպիսով, կատարման ստուգման ճիշտ կազմակերպումն անմիջականորեն տեղում, կատարողների մոտ, օպերատիվ և գործուն մեթոդ է՝ մեր առջև դրված խնդիրները ժամանակին ու անթերի կատարելու համար:

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑ Է

Երբ որոշումների կատարումը թողնվում է ինքնահոսի, չի կազմակերպվում նրանց կատարման ստուգումը, ընկնում է կարգապահությունը, իջնում է պատասխանատվությունն աշխատանքում, իսկ կարգապահություն խախտող-

ները քողարկվում են։ Կատարման ստուգումը հայտաբերում է կարգապահության խախտողներին, արմատավորում բարձր կարգապահություն նրանց մեջ, բարձրացնում աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, մոբիլիզացնում աշխատավորներին՝ ժամանակին կատարելու առաջադրանքները։ Ուրեմն, կատարման սիստեմատիկ ստուգումը բացառում է կարգապահության ամեն մի խախտում և արմատավորում աշխատողի մեջ այն գիտակցությունը, որ պարտիայի և պետության որոշումներն անխախտ օրենք են, պետք է կատարվեն ժամանակին ու ճշգրիտ։ Հետևաբար, որոշումների կատարման ստուգումը կարգապահության արմատավորման միջոց է։

Վերջերս Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոն բացահայտեց պետական կարգապահության խախտման դեպքեր Երևանի կաբելի, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարաններում, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում և պարտիական պատասխանատվության ենթարկեց այդ ձեռնարկությունների ղեկավարներին։

Խնդիրն այն է, որ այդ ձեռնարկությունների պարտկազմակերպությունները չապահովելով ամենօրյա հսկողությունը և առաջադրանքների կատարման ստուգումը, չեն կարողացել ժամանակին կանխել պետական կարգապահության խախտումները տնտեսական ղեկավարների կողմից։ Ահա թե ինչ հետևանքների է հասցնում հսկողության ու կատարման ստուգման անբավարար դրվածքը։

Այժմ վերևում նշված և այլ պարտիական կազմակերպություններում ստեղծված են վերահսկողության հանձնաժողովներ։ Պարտբյուրոները պետք է ապահովեն ամենօրյա գործնական օգնությունը վերահսկողության հանձնաժողովներին՝ իրականացնելու իրենց վերահսկողության ֆունկցիան։ Կատարման ստուգման ընթացքում վերհանված թերությունները պետք է արագ կերպով լիկվիդացվեն։ Հանդուրժել կարգապահության խախտման որևիցե փաստ, այդ նշանակում է հանցանք կատարել պարտիայի հանդեպ։

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄՆ ՈՒ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Կատարման ստուգումը սկզբունքային քննադատության ծավալման մեթոդներից մեկն է։ Այն հնարավորություն է ընձեռում ժամանակին վերհանելու թերությունները և վերացնելու դրանք՝ արագացնելով որոշումների կենսագործումը։ Վերհանված թերությունների քննադատությունը նույնպես աշխատողներին օգնելու, նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի համար բարձրացնելու և ուժերը մոբիլիզացնելու մեթոդներից մեկն է։ Հետևապես, չպետք է հաշտվել թերությունների առկայության հետ, այլ անհաշտ կերպով քննադատել ու վերացնել դրանք։ Կատարման սիստեմատիկ ստուգումը հնարավորություն է տալիս հայտաբերել թերությունները, բացերն ու սխալները իրենց սաղմնային վիճակում, կանխելով դրանց հետագա խորացումը և վնասակար հետևանքները։ Հակառակ դեպքում կատարման ստուգումը կկորցնի իր նշանակությունը։ Կատարման ստուգումը պետք է արմատավորի աշխատողների մեջ անհանդուրժողական վերաբերմունք դեպի թերությունները, դաստիարակի նրանց անհաշտության ոգով դեպի պետական կարգապահության խախտման ամեն մի երևույթ։ Ահա թե ինչու կատարման ստու-





գումը թերությունների վերհանման, նրանց քննադատության և վերացման միջոցներից մեկն է։

Կատարման ստուգումը թերությունների վերացման հետ մեկտեղ աշխատանքում նոր մեթոդների արմատավորման ու տարածման միջոց է։

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐ ՁԵՎԵՐԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄԸ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և կառավարության կողմից մեր առջև դրված խնդիրների, ինչպես նաև պարտիական կազմակերպությունների որոշումների ժամանակին ու ճշգրիտ կատարման համար մղվող պայքարը ստեղծագործական աշխատանքի ծավալման և նախաձեռնության զարգացման պրոցես է։ Ամեն մի կազմակերպություն ձգտում է ժամանակից շուտ կատարել իր առջև դրված խնդիրները։ Այս նպատակին հասնելու համար նա զարգացնում ու կատարելագործում է իր աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Հանդես են գալիս աշխատանքի նոր, ավելի կատարելագործված ձևեր։ Որքան շուտ նրանք տարածվեն մնացած կազմակերպություններում, այնքան արագ կբարձրանա կազմակերպական աշխատանքի մակարդակը։

Կատարման ստուգումը հնարավորություն է տալիս արմատավորելու և տարածելու աշխատանքի նոր մեթոդներն ու ձևերը, դրանք դարձնելով բոլորի սեփականությունը։ Բազմաթիվ օրինակներից բերենք մեկը։ Մեր ողջ երկրում մեկ ծավալվել են ստեղծագործական աշխատանքն ու սոցիալիստական հզոր մրցությունը յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Ամեն մի պարտկազմակերպություն ու յուրաքանչյուր աշխատող ձգտում է անել իրենից կախված ամեն բան XXI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարում առաջավոր տեղ գրավելու համար։ Տոգորված այդ գիտակցությամբ՝ Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի կոլտնտեսության բրիգադաներից մեկը (բրիգադավար Բարսեղյան), որոշում է ընդունել «Հարուստ հեկտար» ստեղծելու մասին, այսինքն՝ հողից ստանալ մաքսիմալ բերք։

Բրիգադան ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարի, գյուղատնտեսական կուլտուրաներից առատ բերք է ստանում։ Վերցնենք այդ կուլտուրաներից միայն մեկը՝ բամբակը. անցյալ տարի հեկտարից ստացավ 43 ցենտներ բամբակի հումք, այս տարի ստանում է 50 ցենտներ։ Գիտության և առաջավոր փորձի նվաճումները հմուտ կերպով օգտագործելու շնորհիվ բրիգադան հասել է լավագույն արդյունքների։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի բյուրոն հավանություն տվեց Շահումյան գյուղի կոլտնտեսության բրիգադայի նախաձեռնությանը և որոշում ընդունեց՝ այն տարածել մյուս կոլտնտեսություններում։

Այսպիսով, գյուղատնտեսության արտադրության զարգացման բնագավառում մեր պարտիայի կողմից առաջադրված խնդիրների կենսագործման ընթացքում ծագում ու զարգանում են հայրենանվեր աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, որոնք պետք է տարածել ու դարձնել բոլորի սեփականությունը։

Աշխատանքի նոր, ավելի կատարելագործված ձևեր են հանդես գալիս մեր գործունեության բոլոր բնագավառներում։ Կատարման ստուգումը հնարավորություն է տալիս ժամանակին տեսնել և արագ տարածել այն նորը, առաջա-

վորը, որը հանդես է գալիս աշխատավորական լայն մասսաների ընդերքում, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԿԱԴՐԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՄԱՆ ՄԵԹՈԴ Է

Կատարման ստուգումն ապահովում է կադրերի դաստիարակությունը սկզբունքայնության, բարձր կարգապահության և համեստության ոգով։ Աշխատանքի փաստական արդյունքներն այն բարոմետրն են, որով չափվում են յուրաքանչյուր աշխատողի նվիրվածությունն ու ընդունակությունները։ Ոչ թե խոսքը, այլ գործն է էականը մեր առջև դրված խնդիրների լուծման իմաստով։ Կատարման ստուգումը հնարավորություն է տալիս մարդկանց՝ տեսնել իրենց աշխատանքի փաստական արդյունքներով, ճանաչել նրանց իրական գործերով։

Մեծ Լենինը մեզ սովորեցրել է՝ ստուգել աշխատողին նրա աշխատանքի փաստական արդյունքներով. սա է գլխավորը։ Ուրեմն, աշխատողներին ճիշտ գնահատելու համար պետք է ելնել նրա աշխատանքի արդյունքներից, որը պարտավորեցնում է սիստեմատիկ կերպով ստուգել դիրեկտիվների ու որոշումների կատարման ընթացքը և բուն աշխատանքի պրոցեսում տեսնել աշխատողին՝ նրա արժանիքներով ու թերություններով։ Սրա հետ մեկտեղ կատարման ստուգումը հնարավորություն է տալիս կոնկրետ ու նպատակասլաց աշխատանք կազմակերպել կադրերի հետ, կոփել նրանց մեջ դժվարությունները հաղթահարելու կամք և նորի, առաջավորի տարածման ու զարգացման ոճ։

«Պարտիական կազմակերպությունների պարտքն է՝ մեր կադրերին, բոլոր կոմունիստներին դաստիարակել բարձր պահանջկոտության ոգով, հանձնարարված աշխատանքի համար պատասխանատվության, ժողովրդին, կոմունիզմի գործին հավատարմորեն ծառայելու ոգով» (ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևից)։

Այսպիսով, որոշումների կատարման ստուգումը աշխատողներին իրենց կոնկրետ գործերով ուսումնասիրելու, գործնական օգնություն ցույց տալու և դաստիարակելու պրոցես է։

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ՎԵՐԵՎԻՑ ԵՎ ՆԵՐՔԵՎԻՑ

Լենինյան դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքից բխում է այն, որ կատարման ստուգումը լինում է երկկողմանի և գտնվում է մեկ միասնության մեջ, կազմելով միևնույն հարցի երկու կողմերը։ Վերևից եկող ստուգումը արտահայտվում է նրանով, երբ վերադաս օրգանները տեղում՝ գործարանում, կոլտնտեսությունում, սովխոզում, պարտկազմակերպությունում ստուգում են պլանների, որոշումների կատարման ընթացքը և օգնում առաջադրված խնդիրները լուծելուն։

Կատարման ստուգումը լինում է նաև ներքևից, երբ աշխատավորական մասսաները, պարտիական կազմակերպությունները հսկում են իրենց անմիջական ղեկավար աշխատողների, ղեկավար օրգանների (պարտկոմ, պարտբյուրո) գործունեությունը առաջադրանքները կատարելու գործում. սա հենց ներպարտիական դեմոկրատիայի դրսևորումն է։ Ներքևից եկող ստուգման մեթոդները հիմնականում դրսևորվում են նրանում, երբ պարտժողովում, ակտիվի նիստում, պլենումում, կոնֆերենցիայում, պարտիական մամուլում քննարկվում ու քննադատվում է այս կամ այն աշխատողի, ինչպես նաև ղեկավար օրգանի գործունեությունը, պահանջվում է հաշիվ տալ կատարված աշխատանքի մասին ու տրվում է համապատասխան գնահատական։



Այժմ ընթանում են սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու ընտրական ժողովները, և առաջիկայում կանցկացվեն քաղաքային ու շրջանային պարտկոնֆերենցիաները։ Ներպարտիական դեմոկրատիայից բխող այս միջոցները լայն հնարավորություն են ընձեռում պարտիական մասսաներին՝ բազմակողմանիորեն ստուգելու ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ընթացքն իրենց կազմակերպություններում, ստուգելու իրենց ղեկավար օրգանների գործունեությունը, տալու համապատասխան գնահատական կատարվածի ու թերությունների մասին, ղեկավար օրգաններում ընտրելու ընդունակ, պարտիայի գիծն անշեղ իրականացնող լավագույն ընկերներին։

Ընթացող հաշվետու ընտրական ժողովները ցույց են տալիս, թե ինչ նշանակություն ունի կատարման ստուգումը։ Այնտեղ, որտեղ լավ է դրված կազմակերպական աշխատանքի և որոշումների կատարման ստուգումը, ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով են կատարվում արտադրական առաջադրանքները, և ընդհակառակը, այնտեղ, որտեղ վատ է դրված այդ աշխատանքը, առկա են զգալի թերություններ։ Կոմունիստների մի զգալի մասի քննադատական արդարացի դիտողությունները պարտբյուրոյի հասցեին, վերաբերում են որոշման կատարման անբավարար կազմակերպմանը։ Հաշվետու ընտրական ժողովները մեծ խթան կհանդիսանան ողջ կազմակերպական աշխատանքին և կատարման ստուգման արմատական բարելավմանը։

Հաշվետու ընտրական ամբողջ աշխատանքի առանցքը կազմում է մեր մեծ պարտիայի XXI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարը։ Հանրագումարի բերելով այդ ուղղությամբ կատարվածը, պետք է մոբիլիզացնել բոլոր ուժերը՝ ժամանակին կատարելու պարտիայի և կառավարության առաջադրած բոլոր խնդիրները, էլ ավելի արագ կատարելու յոթնամյակի հոյակապ պլանները։

# ՆՈԹԵՐ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԻՑ

*Ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, որոնք սկսվել են հոկտեմբերի 1-ից, ընթանում են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ստուգման նշանաբանով։ Ինչպե՞ս է պարտկազմակերպությունը մոբիլիզացրել իր կոլեկտիվի ջանքերը յոթնամյակի առաջին տարվա պլանները կատարելու համար։ Որքա՞ն է բարելավվել տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը։ Ի՞նչ հաջողություններ և թերություններ կան պարտիական քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ասպարեզում։ Ահա հարցեր, որոնք բազմակողմանիորեն քննարկվում և լուծվում են ընթացող պարտիական հաշվետու- ընտրական ժողովներում։*

## ԳՈՐԾԱՐԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՀՈԳՍԵՐԸ

Երևանի էլեկտրասարքավորումների գործարանը պատկանում է ռեսպուբլիկայի արդյունաբերական այն ձեռնարկությունների թվին, որոնք շարք են մտել վերջին 2—3 տարում։ Տարեցտարի գործարանն արագ աճում է, զարգանում. յուրացվում են արտադրական նոր տարածություններ, տեղակայվում բարձր արտադրողական նոր հաստոցներ, ավտոմատ ագրեգատներ և հոսքային գծեր։ 1957 թվականի համեմատությամբ, երբ թողարկվեց առաջին արտադրանքը, ներկայումս ձեռնարկությունը տալիս է յոթ անգամ ավելի շատ էլեկտրասարքավորումներ։ Յոթնամյա պլանով վիթխարի խնդիրներ են կանգնած երիտասարդ գործարանի կոլեկտիվի առջև. Նա պետք է յուրացնի և թողարկի մի շարք բարդ էլեկտրասարքավորումներ (մագնիսային կայան, միջանկյալ և ջերմային ռելյե, ղեկավարման շղթաների տրանսֆորմատորներ և այլն) և 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, 25 անգամ կավելացնի արտադրանքը։

Հաշվարկելով իրենց ունեցած հնարավորություններն ու ներքին ռեզերվները, գործարանի կոլեկտիվը որոշել է յոթնամյա պլանը կատարել վեց տարում։ Դա լուրջ պարտավորություն է, որի հաջող կատարման համար պահանջվում է մոբիլիզացնել ձեռնարկության կոլեկտիվի ողջ ուժերն ու ստեղծագործական եռանդը, վճռականորեն բարելավել և կատարելագործել պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այս նշանաբանով անցավ էլեկտրասարքավորումների գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը, ուր գործարար կերպով ու բազմակողմանիորեն քննարկվեց պարտբյուրոյի հաշվետվությունը։



Պարտբյուրոյի քարտուղար ընկ. Ք. Տեր-Մխիթարյանի զեկուցման մեջ բերված թվերը ցույց են տալիս, որ գործարանը հաջողությամբ է կատարում յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքները։ Հաշվետու շրջանում որոշ աշխատանք է կատարված նոր տեխնիկայի ներդրման, տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ. խոշոր աշխատանքներ են նախատեսվում կատարել առաջիկայում։ Միաժամանակ զեկուցման մեջ վերհանվեցին եղած թերությունները։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ պարտբյուրոյի հաշվետվությունը միակողմանի էր. այնտեղ մեծ մասամբ արձանագրված էին փաստերն ու երևույթները։ Զեկուցողը չվերլուծեց կատարված աշխատանքն ու եղած թերությունների կոնկրետ պատճառները, դրանց հաղթահարման միջոցները։ Չնայած դրան, պարտկազմակերպության անդամները հանդես եկան մտածված ու սկզբունքային ելույթներով։

Կոմունիստները քննադատեցին պարտբյուրոյին այն բանի համար, որ հաշվետու ժամանակաշրջանում նա լրջորեն չի զբաղվել գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կոմունիստական դաստիարակության գործով։

Կոմունիստ Ա. Մնակյանը խոսելով այդ հարցերի մասին, նշեց, որ ցեխերում վատ է կազմակերպված ագիտացիոն աշխատանքը, շատ ագիտատորներ ոչինչ չեն անում, լավագույն դեպքում նրանք բավարարվում են միայն օրվա թերթերի ընթերցանությամբ։ Քիչ գործ է կատարվում զեկուցումների ու դասախոսությունների, ցուցադրական ագիտացիայի կազմակերպման ուղղությամբ, անկանոն են լույս տեսնում պատի թերթերը։ Հաշվի առնելով այն, որ գործարանի կոլեկտիվի մեծամասնությունը երիտասարդներ են, նա անհրաժեշտ է համարում վճռականորեն բարելավել քաղաքական-մասսայական աշխատանքը, այդ գործում ներգրավելով բոլոր կոմունիստներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին։

Երիտասարդ բանվորների դաստիարակության հարցին էր նվիրված Ց. Պետրոսյանի ելույթը. առանձին երիտասարդների մոտ, ասաց նա, նկատվում է աշխատանքի նկատմամբ ոչ կոմունիստական վերաբերմունք, թույլ են տրվում հակահասարակական երևույթներ։ Պարտբյուրոն լավ չի զբաղվել կոմերիտական կազմակերպության աշխատանքներով, նրան ցույց չի տրվել անհրաժեշտ օգնություն ու ղեկավարություն։

— Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում կա ձևականություն,— ասաց Ռ. Կարգանյանը,— ժամանակին չենք ստուգում ու հրապարակում մրցության արդյունքները, քիչ ենք խրախուսում արտադրության առաջավորներին։

Եվ իրավացի էին այն ընկերները, որոնք աշխատանքային կարգապահության ցածր մակարդակը բացատրում էին պարտիական քաղաքական աշխատանքի թուլությամբ և արտադրության կազմակերպման գործում եղած թերություններով։ Բավական է նշել, որ անցած ինն ամսում հոսունության պատճառով փոխվել է ձեռնարկության աշխատողների կազմի մեկ երրորդը, շատ են աշխատանքից ուշացումները և այլն։

Ելույթ ունեցողները նշեցին, որ երբեմն լավ չեն նախապատրաստվում պարտիական ժողովները. պարտբյուրոյի նիստերում և ընդհանուր ժողովներում չեն քննարկվել արտադրության ու պարտիական աշխատանքի մի շարք

կարևոր հարցեր: Պարտբյուրոյի գործունեության ամենալուրջ թերությունը՝ դա ընդունած որոշումների կատարման ստուգման բացակայությունն է: Կոմունիստները բերում էին կոնկրետ օրինակներ, երբ պարտիական շատ որոշումներ մնացել են անկատար: Տարօրինակ է, որ մինչև օրս այստեղ չեն ստեղծվել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող պարտիական հանձնաժողովներ:

Հաշվետու-ընտրական ժողովում բացահայտվեցին նաև արտադրության մեջ տեղ գտած մի շարք լուրջ թերություններ, որոնք խանգարում են գործարանի կոլեկտիվի նորմալ գործունեությանը, ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը: Առանձնապես շատ խոսվեց արտադրության համաչափ աշխատանքի, արտադրանքի որակի և աշխատանքային կարգապահության հարցերի մասին:

— Մեր գործարանը,— ասաց Կ. Ալեքսանյանը,— աշխատում է անհամաչափ, գրոհային ձևով: Դիրեկցիան և պարտբյուրոն, երևի, հաշտվել են նման աննորմալ վիճակի հետ, քաջ գիտենալով, որ վերջիվերջո պլանները կկատարվեն ու կգերակատարվեն: Այդ բանը կարելի է ցույց տալ մեր՝ հավաքման ցեխի օրինակով, ուր ամփոփվում է ամբողջ գործարանի աշխատանքը: Որպես կանոն ամսվա սկզբներին գործ չկա, մարդիկ թափառում են, իսկ վերջերին ցեխում և ամբողջ գործարանում սկսվում է գրոհը. ստեղծվում է ներվային վիճակ, գերլարվածություն, և մեզ օգնության են գալիս մյուս ցեխերի բանվորները: Այսպես է ամբողջ տարին: Մեր ասածը հաստատելու համար բերենք մի օրինակ: Այսպես, մինչև օգոստոսի 14-ը տվյալ ամսվա պլանը կատարված էր 11,2 տոկոսով, 20-ը՝ 35 տոկոսով, իսկ ամսվա վերջին պլանը գերակատարված էր: Նույն վիճակն էր և սեպտեմբերին: Անհամաչափ աշխատանքի հետևանքով խախտվում է տեխնոլոգիական պրոցեսը, ընկնում արտադրանքի որակը և բարենպաստ պայմաններ են ստեղծվում աշխատանքային կարգապահության խախտումների և թափթփվածության համար:

Գործարանի առանձին ցեխեր թողարկում են խոտան արտադրանք, մեծ են գունավոր մետաղների կորուստները: Լավ չեն կազմակերպված հաստոցների, մեքենաների պահպանումն ու խնամքը: Առանձին արտադրական կարողություններ (հոսքային գիծ, ցինկապատման ավտոմատ) ռացիոնալ չեն օգտագործվում: Այդ հարցերին էին նվիրված Գ. Կոստանյանի, Ա. Գալստյանի, Վ. Տեր-Մինասյանի ելույթները:

Էլեկտրասարքերի գործարանի պարտիական կազմակերպության ու նրա բյուրոյի աշխատանքում եղած թերություններն ավելի քիչ կլինեին, եթե ՀԿՊ Ստալինյան շրջկոմն ավելի մոտիկից ու կոնկրետ զբաղվեր տվյալ կազմակերպության գործունեությամբ, ցույց տար նրան անհրաժեշտ օգնություն:

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԴՆԵԼ ՆԵՐՔԻՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Այս հարցը դարձավ Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի հիմնական առանցքը: Հանրագումարի բերելով անցած մեկ տարում իրենց պայքարի արդյունքները, գյուղի կոմունիստները գործարար մթնոլորտում քննարկեցին հանրային տնտեսության հետագա զարգացման հարցերը:

Պարտբյուրոյի քարտուղար ընկ. Ա. Մարտիրոսյանի զեկուցման մեջ բերված թվերը պերճախոս վկայում են, որ կոլտնտեսությունը վերելք է ապրում: Այդ բանում համոզվելու համար բավական է շրջել բամբակենու բերքառատ պլանտացիաներն ու խաղողի այգիները, աչքի անցկացնել բարիքներով լեցուն պահեստները:

Անցյալ տարի կոլտնտեսությունը հողատարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 29,2 ցենտներ ցորեն, 19,7 ցենտներ բամբակի հումք, 62 ցենտներ խաղող, ամեն մի ֆուրաժային կովից ստացավ 1338 կիլոգրամ կաթ և ածան հավից՝ 92 ձու. 1958 թվականին արտադրվեց 830 ցենտներ միս (կենդանի քաշով) և այլն: Դրամական ընդհանուր եկամուտները մեկ տարում ավելացան երկու միլիոն ռուբլով և հասան 6 միլիոն 800 հազար ռուբլու:

Նալբանդյանցիներն այս տարի ստանձնեցին համեմատաբար ավելի բարձր պարտավորություններ, որոնց անթերի կատարմանն ուղղվեց պարտիական կազմակերպության քաղաքական և կազմակերպական ողջ աշխատանքը: Ամենից առաջ ծավալվեց գործարար մրցություն բրիգադաների, ֆերմաների և կոլտնտեսականների միջև. պարտկազմակերպությունը և նրա բյուրոն հետևում են ու պարբերաբար ստուգում մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, հրապարակում մրցության արդյունքները: Սահմանվել են խրախուսանքի մի շարք ձևեր ու մեթոդներ: Աշխատավորների քաղաքական և աշխատանքային ակտիվության բարձրացման գործում քիչ դեր չի խաղում եղբայրական Վրաստանի Մախարաձեի շրջանի Նաթանեբիի կոլտնտեսության հետ տրադիցիոն մրցությունը, որն արդեն շարունակվում է 22 տարի:

Պարտկազմակերպության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը. դաշտավարության մեջ ստեղծվեցին կոմպլեքսային բրիգադաներ, կոմունիստներն սկսեցին ավելի մեծ ուշադրություն դարձնել արտադրության կազմակերպման, ներքին ռեզերվների օգտագործման հարցերին:

Այդ ամենը, անկասկած, պետք է տար և տալիս է իր դրական արդյունքը: Մինչև հոկտեմբերի մեկը յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 29,2 ցենտներ ցորեն, 36,4 ցենտներ եգիպտացորենի հատիկ, 80 ցենտներ խաղող. խաղողի բերքահավաքը շարունակվում է և սպասվում է հեկտարից հավաքել ևս 15 ցենտներ: Այս տարի աճել է բամբակի առատ բերք և այժմ պայքար է ծավալված հեկտարից 25—30 ցենտներ բամբակ ստանալու համար: Ինն ամսում արտադրվել է 927 ցենտներ միս, յուրաքանչյուր ֆուրաժային կովից կթվել է 1495 կիլոգրամ կաթ, ածան հավից ստացվել է 98 ձու և այլն: Բոլոր նշանները կան, որ մինչև տարվա վերջը տնտեսության դրամական եկամուտները կհասնեն 8 միլիոն ռուբլու: ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը դիմավորել ստանձնած պարտավորությունները կատարած՝ այս է ներկայումս գյուղի կոմունիստների կարևոր խնդիրը:

Սակայն ձեռք բերված արդյունքները դեռևս գոհացուցիչ չեն: Նալբանդյանի կոլտնտեսությունն ունի մեծ հնարավորություններ արտադրելու ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ: Եվ պատահական չէ, որ պարտիական ժողովում հատկապես ընդգծվեց, որ 1959 թվականի համար կոլտնտեսության կողմից ստանձնած սոցիալիստական պարտավորությունները մոբիլիզացնող չեն, ավելի ցածր են, քան տնտեսության ունեցած հնարավորությունները:

— Մեր տնտեսությունը,—ասաց Պ. Մանուկյանը,—ունի խոշոր ռեզերվ-

ներ, որոնց խելացի օգտագործման դեպքում կարելի է ստանալ շատ արտադրանք. մենք ունենք լավ հողեր, ջրային մեծ ռեսուրսներ, մեքենայական հարուստ պարկ, ունենք փորձված ու հմուտ հողագործներ: Չնայած այդ ամենին, դեռևս մեր ցուցանիշները ցածր են: Մեր արտելի առաջատար կուլտուրան բամբակն է, որն զբաղեցնում է ցանքատարածությունների մոտ կեսը՝ 450 հեկտար. այս տարի կարող էինք այդ կուլտուրայից սպասվածից ավելի շատ բերք հավաքել, եթե բոլոր հողակտորներում լավ կազմակերպվեր մշակությունը, լրջորեն զբաղվեինք նրա մշակության ու բերքահավաքի կոմպլեքսային մեքենայացման, առաջավոր եղանակների արմատավորման և բամբակենու հումքի որակի բարձրացման հարցերով: Մեր պայմաններում հնարավոր է 29-ի փոխարեն ստանալ 35 ցենտներ ցորեն, եգիպտացորենից՝ 40—45 ցենտներ հատիկ և 500 ցենտներ կանաչ մասսա (ստացվել է 36,4 և 350 ցենտներ): Այգեգործությունից քիչ եկամուտներ ենք ստանում, բարվոք չի մեր այգիների վիճակը: Առաջիկա յոթնամյակում մեծապես ընդարձակվելու է այգիների տարածությունը, ավելանալու է խաղողի ու պտուղների արտադրանքը: Սակայն ընթացիկ տարվա գարնանը այգետնկում չկատարվեց. չպետք է սպասենք, այլ առաջիկա 1—2 տարում կատարենք յոթնամյա պլանով նախատեսված նոր այգետնկումների առաջադրանքը: Մեր պտղատու այգիները լիարժեք չեն, վատ է նրանց մշակությունը. մի՞թե ամոթ չէ, երբ այս տարի հեկտարից ստացանք ընդամենը 15,5 ցենտներ պտուղ: Քիչ եկամուտներ ենք ստանում նաև բանջարա-բոստանային կուլտուրաների մշակությունից:

Իրենց ելույթներում կոմունիստները նշում էին, որ երբեմն ցանքի համար ճիշտ չեն ընտրվում հողատարածությունները, լրիվին ու ժամանակին չեն կատարվում ագրոտեխնիկական կանոնները: Անհրաժեշտ է ստեղծել գյուղատնտեսական կուլտուրաների մշակության լիարժեք հեկտարներ:

Ժողովում շատ խոսվեց գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ու տեխնիկայի պահպանման մասին: Ներկայումս կոլտնտեսությունն ունի բազմաթիվ մեքենաներ, այդ թվում 27 տրակտոր, լավ արհեստանոց, մեխանիզատորական կադրեր: Սակայն պարտկազմակերպությունը և վարչությունը լրջորեն չեն զբաղվում բամբակագործության և անասնաբուծության մեքենայացման հարցով: Խոսելով այդ մասին, Ս. Հարությունյանը, Ս. Պետրոսյանը և Թ. Մկրտչյանը առաջարկում էին կոմպլեքսային մեքենայացման ենթարկել բամբակագործությունը, վերացնել ձեռքի աշխատանքը, ռացիոնալ օգտագործել մեքենաները և կազմակերպել նրանց տեխնիկական խնամքն ու պահպանումը:

Չնայած որոշ տեղաշարժին, այնուամենայնիվ այստեղ ետ է մնում անասնաբուծությունը, դեռևս ցածր է նրա մթերատվությունը: Հաշվետու-ընտրական ժողովում բացահայտվեցին տնտեսության այդ ճյուղի ետ մնալու պատճառները, նշվեցին այն արագ հաղթահարելու միջոցներ: Հանրային հոտում քիչ է կովերի գլխաքանակը, 100 հեկտար հողատարածության հաշվով պահվում է 12 գլուխ կով, թերակատարվել է կովերի, մայր խոզի և ածան հավի գլխաքանակի աճեցման առաջադրանքը: 100 մայր անասունի հաշվով քիչ մատղաշներ են ստացվում, բարձր է նրանց անկումների տոկոսը: Կոլտնտեսությունն ի վիճակի է հրաժարվել կեր գնելուց. անցյալ տարի գնվել է 134.500 ռուբլու, իսկ ընթացիկ տարվա ինն ամսում՝ 74.700 ռուբլու կեր: Գնված կերով է համարյա պահվում խոզաբուծական ֆերման:



Պարտկազմակերպության թույլ հսկողության պատճառով այս տարի լավ չի գործերի վիճակը ոչխարաբուծական ֆերմայում. թերակատարվել է բրդի արտադրանքի պլանը: Անասնաբուծական ֆերմաներում քիչ կոմունիստներ և կոմերիտականներ են աշխատում, պարտբյուրոն քիչ է զբաղվել անասնաբուծության զարգացման արմատական հարցերով: Եվ պատահական չէ, որ այդ ճյուղի զարգացման վրա ավելի շատ աշխատանք ու միջոցներ են ծախսվում, քան նրանից եկամուտ է ստացվում: Բարձր է անասնաբուծական մթերքների արտադրության ինքնարժեքը:

Մտահոգված անասնաբուծության արագ զարգացմամբ, կոմունիստներն անհրաժեշտ համարեցին բարելավել անասունների ցեղը, անասնապահական ֆերմաները միավորել մի կենտրոնական ֆերմայի մեջ, կառուցել անասնապահական նոր շենքեր և մեքենայացնել աշխատատար պրոցեսները: Աշխատանքային ավելի քիչ ծախսումներով տալ ավելի շատ ու էժան անասնաբուծական արտադրանք՝ ահա Նալբանդյանի կոմունիստների կարևոր խնդիրներից մեկը:

Հաշվետու-ընտրական ժողովում լուրջ քննարկման առարկա դարձան կադրերի ընտրության ու դաստիարակության, աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերը: Ինչպես զեկուցման մեջ, այնպես էլ կոմունիստների ելույթներում նշվեց, որ պարտբյուրոն լավ չի զբաղվել կադրերի ընտրության ու տեղաբաշխման, նրանց պատասխանատվության բարձրացման հարցերով. դրանով պետք է բացատրել, որ կոլտնտեսությունում երբեմն ղեկավար աշխատանքի են առաջ քաշվում մարդիկ, որոնց հետագայում՝ գյուղատնտեսական աշխատանքների եռուն շրջանում ստիպված են լինում ազատել զբաղեցրած տեղից (օրինակ, բրիգադավարներ՝ Ա. Կարապետյան, Յ. Քոչարյան, Մ. Մանուկյան և այլն):

Հարկ է նշել, որ պարտիական ժողովում լուրջ ուշադրության չարժանացան կոլտնտեսային արտադրության մի շարք կարևոր հարցեր: Այդ հանգամանքը թերևս պետք է բացատրել պարտբյուրոյի հաշվետու զեկուցմամբ: Աշխատանքի նորմավորման ու վարձատրության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատանքի և միջոցների խնայողաբար ծախսման, հանրային սեփականության հետագա ամրապնդման ու զարգացման հարցերը կոնկրետ կերպով չքննարկվեցին: Իսկ ասելու բան կար: Անհրաժեշտ ուշադրություն չդարձվեց ընդունված որոշումների կատարման, պարտիական շարքերի աճման և աշխատավորների շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի հարցերին: Գյուղի բարեկարգման, կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանն էին նվիրված կոմունիստներ Հ. Հակոբյանի և Վ. Դավթյանի ելույթները: Ինչպես պարզվեց, պարտբյուրոն և կոլտնտեսության վարչությունը ընթացիկ տարում շատ քիչ գործ են կատարել այդ ուղղությամբ:

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովն իր որոշման մեջ նշեց գործնական միջոցառումներ, որոնք, անշուշտ, կնպաստեն սկզբնական պարտիական կազմակերպության գործունեության բարելավմանը, կոլտնտեսային արտադրության հետագա վերելքին:

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

*Լեռնամետալուրգիական գիտա-հետազոտական ինստիտուտի սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը ցույց տվեց, որ ինստիտուտի կոլեկտիվը կանգնած է ճիշտ ճանապարհի վրա։ Գործնական հետևություններ անելով ՍՄԿԿ XXI համագումարի և Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներից, գիտական աշխատողները ջանում են իրենց հետազոտություններով նպաստել ռեսպուբլիկայի լեռնահանքային արդյունաբերության արագաթափ վերելքին, նրա տեխնիկական առաջադիմությանը։*

*Առաջիկա յոթնամյակում մեծ չափով կզարգանա ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը. արտադրական ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման ու ընդլայնման, ժամանակակից տեխնիկայի ներդրման ու տեխնոլոգիական պրոցեսների բարելավման ճանապարհով պետք է եռապատկվի թողարկվող արտադրանքը։ Կարևոր նշանակություն ունի գունավոր մետալուրգիայի հումքի կոմպլեքսային օգտագործման հարցը։ Բավական է նշել, որ միայն Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատն ամեն տարի կորցնում է հազարավոր տոննա ծծումբ, մեծ քանակությամբ հազվագյուտ մետաղներ, որոնք գտնվում են հանքաքարի սկզբնական հումքի մեջ։*

*Ինստիտուտի սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Հ. Քոչինյանի հաշվետու զեկուցման մեջ և մտքերի փոխանակությանը մասնակցած ընկերների ելույթներում արծարծվում էր մի հիմնական հարց՝ ինչ է արված անցած մեկ տարում արտադրության պահանջները բավարարելու ուղղությամբ և ինչ պետք է անել վաղն ավելի լավ աշխատելու համար։ Այս հարցին էին հիմնականում նվիրված կոմունիստների ելույթները, ժողովականների մտորումներն ու խոհերը։*

*Լեռնամետալուրգիական գիտա-հետազոտական ինստիտուտը նոր է կազմակերպվել, ընդամենը երկու տարվա պատմություն ունի։ Սակայն գիտական աշխատանքները հիմնականում ծավալվել են այս տարի։ Ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, որի իրավասության տակ է գտնվում վերոհիշյալ գիտական հիմնարկը, երկար ժամանակ անհրաժեշտ պայմաններ չէր ստեղծում վերջինիս նորմալ գործունեության համար. չկար շենք, փորձա-էքսպերիմենտալ բազա, կոմպլեկտավորված չէին կադրերը և այլն։ Այդ հարցերն այժմ կարծես լուծվել են, հարմարավետ նոր շենքում առաջ են տարվում վերանորոգման-մոնտաժային աշխատանքները։ Եվ պատահական չէ, որ այդ հարցի մասին ժողովում ավելի շատ խոսվեց, քան պետք էր. կոմունիստները ժողտնտխորհից և ինստիտուտի դիրեկցիայից պահանջում էին արագացնել կառուցողական աշխատանքները, կահավորել լաբորատորիաները։*

*Ինստիտուտի կազմավորման հետ մեկտեղ գիտական կադրերը, արտադրության աշխատողների համագործակցությամբ, զգալի աշխատանք են կատարում լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունների արտադրական պրոցեսների կատարելագործման, բարձր արտադրողական տեխնոլոգիա մշակելու ուղղությամբ։ Ինստիտուտի կոլեկտիվն ակտիվ մասնակցություն է ցուցաբերում Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի վերակառուցման ու ընդլայնման աշխատանքներին. կոմբինատում հիմնովին փոփոխվելու է մետալուրգիական և քիմիական ճյուղերի տեխնոլոգիական պրոցեսների սխեման,*



*որի շնորհիվ կաճեն արտադրական կարողությունները, կբարելավվեն արտադրական պրոցեսների տեխնոլոգիական ցուցանիշները։*

*Իր ելույթում Վ. Մելքոնյանն ասաց, որ իրենք այժմ զբաղված են կոմբինատի հումքի կոմպլեքսային օգտագործմամբ, ավարտել են արտադրանքի մեջ հազվագյուտ մետաղների բալանսի կազմումը և այլն։ Գիտա-հետազոտական աշխատանքներն արտադրությանը մոտեցնելու նպատակով պղնձա-քիմիական կոմբինատին կից կազմակերպվել է ինստիտուտի ֆիլիալ։*

*— Ամեն տարի,— ասում է Ա. Աբրահամյանը,— Ալավերդու կոմբինատում թափվում է մոտ 120 հազար տոննա խարամ (շլակ)։ Ներկայումս մենք կատարում ենք ուսումնասիրություններ, նպատակ ունենալով խարամից ստանալու ներկանյութ և մի շարք շինվածքներ։*

*Լեռնահանքային արդյունաբերության համար ակտուալ նշանակություն ունեցող մի շարք այլ թեմաներ են մշակվում գիտական աշխատողների կողմից։ Այսպես, հորիզոնական հորատանցման ժամանակ պայթեցումների նոր պարամետրերով վերջերս փորձարկվեցին Զանգեզուրի «պղնձա-մոլիբդենային կոմբինատի № 5—6 հանքում։ Արդյունքը մեծ է. ավելացան հորատանցման արագությունը և 25 տոկոսով արտադրանքը։ Դա կոնկրետ, գործնական օգնություն էր հանքագործներին։*

*Կոմունիստ Ռ. Սինանյանն իր ելույթում պատմեց, թե ինչպես ռեսպուբլիկայում արտադրվող ամիակային սիլիտրայի բազայի վրա ստացել են նոր նյութեր, որոնց արդյունաբերական փորձարկումները Լենինականի քարհանքերում և Քաջարանում տվել են գոհացուցիչ արդյունքներ. դա զգալի չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում ինքնարժեքը և վերացնում ձեռքի աշխատանքը։*

*Արդյունաբերության աշխատողների կողմից ճանաչում է գտել ինստիտուտի առաջարկած նոր սարքը, որի միջոցով որոշվում է լեռնային ապարների ամրության կատեգորիան հորատման ընթացքում։ Այժմ այդ օրիգինալ սարքը կատարելագործվում է։ Գիտական աշխատողների կողմից արժեքավոր առաջարկություններ են արվել Դաստակերտի և Քաջարանի հարստացուցիչ ֆաբրիկաների աշխատանքը բարելավելու ուղղությամբ, ինչպես և ստեղծված են սարքեր ձեռնարկություններում՝ օդի հանքային փոշոտվածության աստիճանը որոշելու և օդը փոշեզրկելու համար։ Հետազոտական աշխատանքներ են կատարվում բազալտի ձուլվածքից և խարամից զանազան իրեր պատրաստելու ուղղությամբ (խողովակներ, մեկուսիչներ, անվակներ, պլիտաներ և այլն)։*

*Պարտիական ժողովում միաժամանակ բացահայտվեցին աշխատանքում տեղ գտած թերությունները, վրիպումները։*

*— Ճիշտ է, մենք զբաղվում ենք հարստացուցիչ ֆաբրիկաների փոշեզերծման հարցերով, ստեղծել ենք սարքեր,— ասաց իր ելույթում երիտասարդ մասնագետ Ժ. Գասպարյանը,— բայց արդյունքը քիչ է։ Ձնայած հիդրոփոշեառիչը դրված է ժողովրդական տնտեսության ցուցահանդեսում, բայց այն զանազան պատճառներով մինչև օրս չի ներդրված արտադրության մեջ։ Հարկավոր է հետազոտությունները և առաջարկները արագորեն արմատավորել արտադրության մեջ։ Մեր մոտակա խնդիրն է զբաղվել նաև հանքերի փոշեզերծման հարցով։*

*Կոմունիստները նշեցին, որ ինստիտուտը վատ է զբաղվում լեռնային աշ-*

խատանքների մեքենայացման հարցով, դեռևս լավ չի գործում գիտա-տեխնիկական խորհուրդը, լաբորատորիաները հագեցված չեն ժամանակակից սարքավորումներով։ Առանձին դեպքերում թույլ են տրվում նյութերի ու միջոցների ավելորդ ծախսումներ։ Ժողովի ուշադրության կենտրոնում էին գիտական աշխատողների պատրաստման ու նրանց գաղափարական դաստիարակության հարցերը։

— Մեր կոլեկտիվի մեծամասնությունը երիտասարդներ են,— ասաց իր ելույթում ինստիտուտի դիրեկտոր Բ. Վարդապետյանը,— որոնք աշխատում են մեծ խանդավառությամբ։ Բայց նրանք գիտա-հետազոտական աշխատանքներ կատարելու համար չունեն անհրաժեշտ փորձառություն։ Մենք պարտավոր ենք օգնել երիտասարդ գիտնականներին, մասնագետներին՝ բարձրացնելու իրենց գիտական մակարդակը, զարգացնելու հետազոտական աշխատանք կատարելու նրանց ունակությունները։ Լուրջ ուշադրություն պետք է դարձնել մասնավորապես երիտասարդ գիտական աշխատողների գաղափարական դաստիարակության հարցերին։

Կոմունիստներն իրենց ելույթներում մատնանշում էին, որ ինստիտուտում դեռևս քիչ են փորձված լեռնագործ կադրերը, ինչպես և մետալուրգները։ Դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը հարկ եղած չափով չեն զբաղվում կադրերի պատրաստման ու որակավորման, նրանց դաստիարակության գործով։ Նրանք լավ չեն հսկում գիտա-հետազոտական աշխատանքների թեմատիկայի ժամանակին կատարման ու արտադրության մեջ ավարտված հետազոտությունների արագ ներդրման գործին, քննադատաբար չեն մոտենում կատարվող աշխատանքին։

Լեռնամետալուրգիական ինստիտուտը պետք է դառնա գիտական հեղինակավոր հաստատություն, որի վրա կարողանա հենվել Ժողտնտխորհը՝ առաջ մղելու գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության տեխնիկական առաջադիմության գործը։ Այդ նպատակով անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունն ավելի կոնկրետ զբաղվի ինստիտուտի գիտա-հետազոտական աշխատանքների պլանավորման, կադրերի գիտական պատրաստման ու նրանց գաղափարական դաստիարակության, արտադրության ու գիտության ավելի սերտ կապի ամրապնդման հարցերով։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

---



«Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:

ՀԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ՊԱՐՆԻՆ, ԻՆՉՊԵՍ ՈՐ ԿԱ

Այս տարվա մարտի 4-ին լրացավ Մեծ Պարնի գյուղի Ստեփան Շահումյանի անվան կոլտնտեսության հիմնադրման 30 տարին։ Այդ տարիների ընթացքում կոլտնտեսությունն աճել, հզորացել ու հարստացել է, իսկ կոլտնտեսականները ունևոր են դարձել։

Որ Պարնին և պարնեցիները ունևոր են՝ երևում է ոչ միայն կոլտնտեսության հաշվապահական մատյաններից, այլև գյուղի բերքառատ դաշտերից, սիզավետ ու փարթամ մարգագետիններից, նորակառույց բնակարաններից, մինչև տանիքները շռայլորեն լցված շտեմարաններից և պարնեցիների միշտ ուրախ ու զվարթ դեմքերից…

Կոլտնտեսության հացահատիկային կուլտուրաների ցանքերը զբաղեցնում են մոտ 900 հեկտար տարածություն։ Դա 4 անգամով ավելի է այն տարածությունից, որ արտելի հիմնադրման առաջին տարում՝ 1929 թվականին, զբաղեցնում էին հացահատիկի ցանքերը։ Ինչ վերաբերում է բերքատվությանը, ապա այն 5,7 ցենտներից աճելով հասել է ավելի քան 21 ցենտների։ Անցյալ տարի արտելը հավաքեց 13 հազար 654 ցենտներ, իսկ այս տարի՝ 16 հազար ցենտներ հացահատիկ։ Սա իսկական հարստություն է, որը ձեռք է բերվել Պարնիի հմուտ հողագործների քրտնաջան աշխատանքով։

Սպիտակի շրջանում ոչ մի կոլտնտեսություն շաքարի ճակնդեղի այնքան մեծ ցանքատարածություն չունի, որքան Պարնիի կոլտնտեսությունը։ Երեսուն տարվա ընթացքում այդ տարածությունն ընդլայնվել է 18 անգամ, իսկ բերքատվությունը՝ 84 ցենտներից հասել 380 ցենտների։ Տարեցտարի ընդարձակվում են նաև եգիպտացորենի ու բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունները, աճում ու առավել բերքառատ է դառնում պտղատու այգին։

Մեծ հարստություն կա նաև արտելի անասնապահական ֆերմաներում, որտեղ հաշվվում է մոտ 900 գլուխ խոշոր և 5 հազար 250 գլուխ մանր եղջերավոր անասուն, շուրջ 300 խոզ։ Ալպիական փարթամ արոտավայրերն ու մարգագետինները զբաղեցնում են մոտ 2200 հեկտար տարածություն, իսկ 600 հեկտար բնական և ցանովի խոտհարքները լի ու լի բավարարում են անասնաբուծության պահանջը կենսահյութ խոտով։

— Իսկ մեր դրամական եկամուտները ձեզ չե՞ն հետաքրքրում,— կհարցնի կոլտնտեսության հաշվապահ Բարսեղը և չխկացնելով իր հավատարիմ համրիչի հատիկները, ներքին անզուսպ գոհունակությամբ կասի.

— Անցյալ տարի այն կազմեց 3 միլիոն 354 հազար ռուբլի, իսկ այս տարի կանցնի 4,5 միլիոնից։ Հիշեցնում եմ, որ երեսուն տարի առաջ, մեր ամ-

բողջ դրամագլուխը 46 հազար 455 ռուբլի 19 կոպեկ էր։ Հիմա հազարները մեզ ձեռք չեն տալիս, մեր գործը միլիոնների հետ է...

## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ԾՆՎՈՒՄ Է ՄԻԼԻՈՆԸ

Պարնիի գյուղատնտեսության ամենաբարձր եկամտաբեր ճյուղը ճակնդեղագործությունն է։ Ահա թե ինչու ճակնդեղագործները տարեցտարի բարելավում են ցանքերի մշակության որակը, արմատավորում երկրի առաջավոր կոլտնտեսությունների փորձը և տարեցտարի բարձրացնում իրենց դաշտերի բերքատվությունը։

Ճակնդեղի բարձր բերք աճեցնելու համար 1957 թվականին կոլտնտեսության ավելի քան 20 ճակնդեղագործ պարգևատրվեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով։ Սակայն ձեռք բերված հաջողությունները չհանգստացրին պարնեցիներին, և անցյալ տարի նրանք մեկ հեկտարի միջին բերքատվությունը բարձրացրին ևս 30 ցենտներով, որի շնորհիվ պետական պլանից դուրս արդյունաբերությանը հանձնեցին 24 հազար ցենտներ շաքարի հումք։

Հաջողությունները բազմապատկելու և յոթնամյակի առաջին տարին ճակնդեղի է՛լ ավելի բարձր բերքով նշանավորելու ձգտմամբ են աշխատում պարնեցիները նաև այս տարի։ Նրանք աշնանը ցրտահերկի տակ դրված և վաղ գարնանը լավ պարարտացված հողերում ցանեցին 180 հեկտար շաքարի ճակնդեղ։

Գարնանային հորդ և երկարատև անձրևների հետևանքով ցանքերում աճեց մոլախոտը, և թվում էր, թե լուրջ վտանգի տակ դրեց այս տարվա բարձր բերքի ստացումը։ Սակայն անհաջողությունը չընկճեց ճակնդեղագործներին։ Նրանք միաձույլ ուժերով ցանքերը մաքրեցին մոլախոտերից, չծլած, կամ հեղեղների հետևանքով բույսազրկված տարածություններում կատարեցին վերացանք, ինչպես նաև անցկացրին բույսերի լրացում՝ սածիլման եղանակով։ Օգտագործելով Վիննիցայի մարզի կոլտնտեսությունների փորձը, արտելի վարչությունը ցանքերի մակերեսային փխրեցման և բույսերի նոսրացման աշխատանքները առավել սեղմ ժամկետում կատարող օղակների համար սահմանեց լրացուցիչ վարձատրության կարգ, որը մեծապես նպաստեց կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Նոսրացումը կատարվեց այնպես, որ յուրաքանչյուր հեկտարում մնաց 110 — 120 հազար առողջ բույս և ապահովվեց հեկտարների լիարժեքությունը։

Բելգորոդի մարզի Նովո-Օսկոլի շրջանի «Ռոսսիա» գյուղատնտեսական արտելի օրինակով այս տարի ճակնդեղի մշակության բոլոր աշխատանքները կատարվում են մեքենաների միջոցով։ Գյուղատնտեսական գիտության նորագույն նվաճումների հիման վրա, մշակման մի մասը կատարվում է քառակուսի-բնային եղանակով, հետևողականորեն բարելավվում է հանքային ու տեղական պարարտանյութերի օգտագործումը, դաշտերի սնուցումը, ցանքերի ակոսային ոռոգումը։ Ջրի կորուստները կանխելու նպատակով ոռոգումը կատարվում է բացառապես գիշերը։

Այս ամենի շնորհիվ դաշտերում փարթամորեն աճել են ճակնդեղի բույսերը, իսկ հողում ուռճացել նրա առողջ արմատները։ Ճակնդեղագործները լիահույս են, որ այս տարի ամեն մի հեկտարից կհավաքվի ոչ պակաս քան 400 ցենտներ բերք։ Հենց դա էլ արտելի հարստության անսպառ աղբյուրն է, որը



միլիոններ է ծնում։ Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ միայն ճակնդեղագործությունից այս տարի կոլտնտեսությունը կստանա շուրջ երկու միլիոն ռուբլու եկամուտ։ Յոթնամյակի ընթացքում այստեղ ճակնդեղի ցանքատարածության խոշոր աճ չի նախատեսված, բայց շաքարի հումքի համախառն արտադրանքը, մշակության առաջավոր եղանակների արմատավորման շնորհիվ, պետք է աճի շուրջ 40 տոկոսով։

## ՈՐ ԾՈՎ ԴԱՌՆԱ ԿԱԹՆ ԱՆՍԱՐԱՏ

Անցյալ տարի կաթի համախառն արտադրանքը կոլտնտեսությունում կազմել է 389 հազար կիլոգրամ, կամ ամեն մի կովից կթվել է 1700 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսությունն ունի 5000 ոչխար, որոնցից ստացել է 112 ցենտներ նրբագեղմ և կիսանուրբ բուրդ։ Միայն ոչխարաբուծությունից արտելն անցյալ տարի ստացել է մոտ 800 հազար ռուբլի դրամական եկամուտ, որը երկու անգամով գերազանցում է 1953 թվականի կոլտնտեսության ստացած ամբողջ եկամուտը։

Կոլտնտեսության անասնաբույծները պայքարի են ելել յոթնամյակի առաջին տարում յուրաքանչյուր 100 հեկտար տարածության դիմաց 150 ցենտներ կաթ, 40 ցենտներ միս և 300 կիլոգրամ բուրդ արտադրելու համար։ Կկատարվի՞ այդ բարձր պարտավորությունը։ Չե՛նք կասկածում, որովհետև արդեն 9 ամսում ամեն մի կովից նրանք կթել են 1610 կիլոգրամ կաթ և ամեն մի ոչխարից խուզել 4,2 կիլոգրամ բուրդ։ Մինչև տարվա վերջը ամեն մի կովի կաթնատվությունը կհասցնեն 1900 կիլոգրամի։

Արտելի կովաբուծական ֆերմայում փակցված է մի չափածո կոչ.

«Կովի կերը լինի առատ՝<br>
Ծով կդառնա կաթն անսարատ...»

Իսկ Պարնիի կոլտնտեսականներն իրոք որ ջանք ու եռանդ չեն խնայում կովի կերը առատ դարձնելու համար։ Նրանք 1145-ի փոխարեն արդեն կուտակել են 1320 տոննա խոտ։ Բայց կովից շատ կաթ ստանալու համար միայն խոտով «աչք փակել» չես կարող։ Հետևապես հարկավոր է մտածել կերի բազմազանության մասին։ Եվ պարնեցիները լավ են մտածում։ Նրանք ոչ միայն մտածում, այլև գործում են։ Եգիպտացորենի 65 հեկտար ցանքադաշտը, որն ամբողջությամբ գյուղի դպրոցականներն են մշակում, կերային արժեքավոր կուլտուրայի առատ բերք տվեց՝ հեկտարից միջին հաշվով մոտ 312 ցենտներ կանաչ զանգված։ Դրա շնորհիվ միայն եգիպտացորենից կպատրաստվի 1270 տոննա սիլոս, 3000 տոննա էլ կպատրաստվի ճակնդեղի փրերից։ Եթե դրան ավելացնենք, որ աշնան և ձմռան ամիսներին մոտ 3 հազար տոննա էլ մզուք կփոխադրվի շաքարի գործարանից, ապա կարող ենք համոզված լինել, որ այս տարի յուրաքանչյուր կովի համար կպատրաստվի 15 տոննա սիլոս։ Ի դեպ, այստեղ ճակընդեղի փրերը սիլոսացնում են ոչ թե խրամատները լցնելու, այլ կուտակված հարդի մեջ հերթականորեն, շերտ-շերտ փռած դասավորելու միջոցով։ Դրա շնորհիվ ոչ միայն փրերն են առավել համեղ դառնում, այլև անասուններն ազատվում են հարդը «չոր ու ցամաք» ուտելու տհաճ «պարտականությունից»։

Կովերի կաթնատվության բարձրացմանը մեծապես նպաստում է հարուստ արոտավայրերի արդյունավետ օգտագործումը։ Կոլտնտեսության «Թռչկան» կոչվող յայլաղը, որը Հայաստանի գեղատեսիլ, կարելի է ասել, սքանչելի վայրերից մեկն է, հայտնի է բարձունքներից գահավիժող իր որոտաշունչ ջրվեժով,

որի շուրջը չորս ամիս արածում է հանրային նախիրը և սնվում բույսերի ամենաթարմ և կենսահյութ տեսակներով։

## ՎԱՐԴԸ ՊԱՐՏԵԶՆ Է ԶԱՐԴԱՐՈՒՄ, ՄԱՐԴԸ՝ ԱՇԽԱՐՀԸ

Հին ասած է սա, բայց միշտ նոր է մնում իր խոր իմաստությամբ։ Հիրավի, ամեն ինչի ստեղծողը մարդն է, ստեղծագործ աշխատանքի մարդը, որով այնքան հարուստ է նաև Մեծ Պարնի գյուղի կոլտնտեսությունը։ Այստեղ բոլորը, առանց բացառության, աշխատում են հարազատ կոլտնտեսության համար և հենց այդ պատճառով էլ կոլտնտեսային կյանքը բոլորին էլ երջանկություն է բերում։

Պարնին պարծենում է շաքարի ճակնդեղի իր բարձր բերքի վարպետներով, որոնց շարքերը գնալով խտանում են։ Դե, ինչպե՛ս չպարծենան, օրինակ, Ափենիկ Մուղդեսյանի աշխատանքի արդյունքով։ Անցյալ տարի նրա ղեկավարած ճակնդեղագործական օղակը մեկ հեկտարի միջին բերքատվությունը հասցրեց 461 ցենտների, իսկ այս տարի կհասցնի 550-ի։

Այսպիսի աշխատասեր Արփիկներ շատ կան Պարնիում։ Ճակնդեղի բարձր բերքի հմուտ վարպետներ են նաև Գոհար Մուղդեսյանը, Ռիմա Պապանյանը, Ռոզա Իվանյանը, Աղունիկ Պալյանը, Ռոզա Մարգարյանը և ուրիշներ, որոնք անցյալ տարի իրենց օղակներին ամրացված ցանքադաշտերի յուրաքանչյուր հեկտարից 429 — 447 ցենտներ բերք ստացան։

Երևելի մարդիկ են աշխատում նաև ֆերմաներում։ Կթվորուհիներ Խանում Աքուլյանը, Աշխեն Բադալյանը և ուրիշներ կովերին խնամում են աչքի լույսի պես և պետք է խոստովանել, որ կովերն էլ լավ են «վարձահատույց» լինում նրանց։ Առաջավոր կթվորուհիների պայքարը յուրաքանչյուր կովից 2000 կիլոգրամ կաթ ստանալու համար՝ պսակվում է հաջողությամբ։ Ի տարբերություն շրջանի մյուս կոլտնտեսությունների, այստեղ որպես կթվորներ են աշխատում նաև տղամարդիկ։ Հովսեփ Աքուլյանը, Մկրտիչ Բարսեղյանը, Գևորգ Անտոնյանը, Արշալույս Փահլևանյանը և ուրիշներ իրենց խնամքին հանձնված ամեն մի կովից անցած 8 ամսում կթել են 1500—1600 կիլոգրամ կաթ։

Կյանքը հայրենի սարերում անցկացրած մարդ է հովիվ Թադևոս Փիլոյանը, որի համար սովորական բան է 100 ոչխարից 105 — 110 գառ ստանալը։ Իսկ ամեն մի ոչխարից 4 — 5 կիլոգրամ բուրդ խուզելը դարձել է անխախտ օրենք։ Ալեհեր, բայց տակավին ամուր ու առողջ հովիվը երեք անգամ ընտրվել է Սպիտակի շրջանային Սովետի դեպուտատ և պարգևատրվել Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով։ Հմուտ հովիվներ, ինչպես ասում են՝ ոչխարի լեզուն հասկացող մարդիկ են նաև Գրիգոր Ոսկանյանը, Սմբատ Պապանյանը և ուրիշներ։

Արտելի տրակտորային բրիգադայում ընդգրկված են ավելի քան 30 տրակտորիստներ, կոմբայնավարներ, մեխանիկներ, որոնք իրավամբ համարվում են տեխնիկան թամբած մարդիկ։ Շատ հեռու չգնանք։ Այս տարվա բերքահավաքի օրերին կոմբայնավար Արարատ Թադևոսյանը մի քանի օրվա ընթացքում հավաքեց 240 հեկտարի բերք և պահեստ ուղարկեց ավելի քան 5 հազար ցենտներ հացահատիկ։ Նրանից ետ չեն մնացել նաև կոմբայնավարներ Սմբատ Պալյանը և Ժորա Ղոչիկյանը, որոնք սեղմ ժամկետում գերակատարել են բերքահավաքի առաջադրանքը։



Հմուտ, գործիմաց, նորի զգացմամբ տոգորված մարդիկ են նաև կոլտնտեսության ղեկավար կադրերը։ Արտելի վարչության նախագահ Սմբատ Ալավերդյանը, որն ավելի քան 15 տարի է, ինչ անփոփոխ ղեկավարում է այդ մեծ տնտեսությունը, լավ համբավ ունի մեր ռեսպուբլիկայում։ Ղեկավար կադրերի առավելագույն մասը, ինչպես, օրինակ, զոոտեխնիկ Սմբատ Մելքոնյանը, ագրոտեխնիկ Գեղամ Յաղուբյանը, բրիգադավար Գևորգ Բայադյանը, ֆերմայի վարիչ Հմայակ Յաղուբյանը, կովարուծական ֆերմայի վարիչ Սուրեն Քոսյանը ունեն միջնակարգ մասնագիտական կրթություն, իսկ դա նրանց օգնում է խելացիորեն կազմակերպելու և տնօրինելու գործը։

Կոլտնտեսային աշխատավորների ուժերը հաջողությամբ մոբիլիզացնում և նրանց աշխատանքային խանդավառությունը հմտորեն է գլխավորում արտելի պարտիական կազմակերպությունը (բյուրոյի քարտուղար Ենոք Բադալյան), որն իր շարքերում ունի պարտիայի ավելի քան 60 անդամ։ Նրանք բոլորն էլ աշխատում են արտադրության մեջ։ Կոմունիստների հետ կողք-կողքի անձնվիրաբար են աշխատում նաև կոլտնտեսության ավելի քան 160 կոմերիտականներն ու կոմերիտուհիները։ Դրանցից 64-ը հանրային արտադրություն են եկել հասունության ատեստատով։ Եկել են, որովհետև մեր երկրում աշխատանքը պատվի ու արիության գործ է, որովհետև աշխատանքն է ազնվացնում մարդուն։

## ԳՅՈՒՂԻ ՆՈՐ ԴԵՄՔԸ

Պարնիի կոլտնտեսականներն ի վիճակի չէին լինի այդքան հարստություն ամբարել, եթե չունենային համապատասխան տեխնիկա։ Կոլտնտեսության եկամուտների անընդհատ աճը նրանց հնարավորություն տվեց գնելու 8 տրակտոր, 4 կոմբայն, հացահատիկի ու շաքարի ճակնդեղի 6 շարքացան, մի քանի կուլտիվատորներ և այլ մեքենաներ։ Նրա ավտոպարկում հաշվվում է «Պոբեդա» մարկայի մեկ և բեռնատար 11 ավտոմեքենա։ Տարեցտարի ավելանում են կապիտալ ներդրումները, որոնք այս տարի կազմում են ավելի քան մեկ միլիոն ռուբլի։ Այդ ներդրումներով գյուղում ծավալում են տնտեսական և կուլտուրական շինարարություն, փոխում գյուղի դեմքը։ Էլեկտրաէներգիան լայնորեն կիրառվում է հանրային արտադրության մեջ։ Արտելն ունի իր էլեկտրաաղացը, էլեկտրասղոցարանը, մեքենայացված դարբնոցը, փայտամշակման արհեստանոցը, կովարուծական ֆերմայում գործում է ներֆերմային տրանսպորտը։

Վերջին երկու տարում կոլտնտեսությունը կառուցել է նոր ոչխարանոց, թռչնաբուծական ֆերմայի նոր շենք, կառուցում է հազար տոննա տարողությամբ հացահատիկի նոր պահեստ։ Պարնիում կա բուժարան, շուտով շահագործման կհանձնվի նորակառույց տեղամասային հիվանդանոցը։ Գյուղում անց է կացվում նոր, օրինակելի հատակագծում, սկսվում է ակումբի նոր, երկհարկանի շենքի կառուցումը, որի վրա կծախսվի մեկ միլիոն ռուբլի։ Կոլտնտեսականները կառուցել են 150 — 200 նոր բնակարան։

Պարնեցին դարձել է շրջահայաց, ուղղամիտ և աշխատասեր մարդ։ Նա մեծ հակում ունի դեպի ուսումը։ Գյուղի վաղեմի վարժապետ Աղասի Աղասյանն իր «գործունեության» 20 տարվա ընթացքում հազիվ 20 մարդ էր գրաճանաչ դարձրել։ Պարնիի միջնակարգ դպրոցը վերջին 10 տարվա ընթացքում տվել է շուրջ 300 շրջանավարտ։ Դպրոցում ներկայումս դասավանդում են 30 ուսուցիչ, իսկ բարձրագույն կրթություն ունեցող պարնեցիների թիվը հասնում է 70-ի։ Ըստ

րում, Քոսյանների ընտանիքում կան 5, իսկ Զոթյանների և Գասոյանների ընտանիքներում՝ 4 դիպլոմավորներ։

### ՅՈԹԸ ՍԱՐԻՑ ԱՅՆ ԿՈՂՄ

Պարնիի կոլտնտեսությունն սկսել է ավանսի բաշխումը կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց։

Աշխօրի դիմաց, որպես ավանս բաշխվում է 6 կիլոգրամ հացահատիկ. և ահա անասնապահ Էլիբեկ Բայադյանի ընտանիքը ստանում է 7 տոննա ցորեն, 300 կիլոգրամ պանիր, 55 կիլոգրամ յուղ, 7—8 հազար ռուբլու կանխիկ դրամ։ Դե, դրամ եթե չես ուզում հիմա ծախսել, խնայողական դրամարկղում կպահես։ Բայց մթերքի գործը դժվար է...

Պարկերը լցվում են ու լցվում. կոլտնտեսուհիների վարժ ձեռքերում արագորեն գործում են մախաթները, իսկ սայլերը, ցորենի լիառատ բերքով բարձած սայլերը գյուղամիջյան ճանապարհներով շարժվում են դեպի կոլտնտեսականների բնակարանները... Երբ անասնապահ Հովսեփ Աքուլյանն իր բերքը տուն փոխադրեց, հարևաններից մեկը հարցրեց.

— Քեռի Ուսեփ, բո՞լ ցորեն ստացար...

— Բո՜լ,— ծոր տալով պատասխանեց նախրապանը և մի ուրախ երգ ասելով մտավ իր նորակառույց բնակարանը։ Հովսեփը բազմանդամ ընտանիքի հայր է։ Ինքը, կինը՝ Խանումը, որդիները՝ Ստասիկը, Իսրայելը և Խորենը, հարսները՝ Վարդանուշը և Գեղեցիկը, թվով յոթ հոգի աշխատում են հանրային արտադրության տարբեր ճյուղերում և այս տարի վաստակել են 1800 աշխօր։ Իսկ գիտե՞ք, նրանց ստացած միայն հացահատիկը 9 տոննայից ավելի է։

Նստելով սեղանի առաջ, քեռի Հովսեփն ասաց.

— Ասում են՝ յոթը սարից այն կողմ մի չքնաղ աշխարհ կա, մի ոսկի աշխարհ։ Այդ մասին մենք հեքիաթներում ենք լսել։ Հիմա հեքիաթն իրականություն է դառնում։ Յոթը սարերը մեր յոթնամյակի տարիներն են։ Կապրենք, կաշխատենք ու կտեսնենք, որ իրոք յոթ տարի հետո մեր աշխարհը կդառնա ավելի չքնաղ, իսկական ոսկի աշխարհ։ Ուրեմն, այնպես աշխատենք, որ կարճացնենք այդ ճանապարհը։

Եվ ոչ միայն քեռի Հովսեփը, այլև բոլոր պարնեցիները ներկայումս աշխատում են այնպես, որ անպայման կրճատեն յոթնամյակի ճանապարհը։

Ա. ԾՈՎԱԿ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

# ԳԵՈՊՈԼԻՏԻԿԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷՔՍՊԱՆՍԻԱՅԻ ԶԵՆՔ Է

Բուրժուական երկրներում գեոպոլիտիկա են անվանում, այսպես կոչված, գիտության այն ճյուղը, որը հիմնվելով բացառապես աշխարհագրական ֆակտորների վրա՝ ձգտում է ուղղություն տալ տվյալ կապիտալիստական պետության արտաքին քաղաքականությանը։ Գեոպոլիտիկային ծնունդ են տվել առավել ռեակցիոն աշխարհագրագետները, որոնք, ըստ էության, քաղաքական աշխարհագրությունը փոխարինել են իրենց իսկ հնարած գեոպոլիտիկայով։ Այդ կեղծ գիտությունն իր ծննդյան հենց սկզբից դարձել է իմպերիալիստական էքսպանսիոնիզմի զենքը։

Սակայն ո՞րն է այդ կեղծ գիտության էությունը։ Իր դատողությունները կառուցելով միայն աշխարհագրական ֆակտորների վրա՝ գեոպոլիտիկան ժխտում է ամեն մի կապ էկոնոմիկայի և քաղաքականության միջև, ծայր աստիճան նսեմացնում է հասարակության տնտեսական կյանքի դերը։ Եթե մենք քաղաքականությունն ու էկոնոմիկան համարում ենք փոխադարձաբար իրար հետ կապված հասկացություններ, ապա այդ անում ենք նրա համար, որ էկոնոմիկայի ու քաղաքականության այդպիսի ըմբռնումը նրանց փոխադարձ հարաբերությունների միակ ճիշտ ըմբռնումն է, օբյեկտիվորեն գոյություն ունեցող իրողությունը։ Այնինչ գեոպոլիտիկները քաղաքականությունը կտրելով էկոնոմիկայից և քաղաքական երևույթների բնույթը բացատրելով զուտ աշխարհագրական ֆակտորներով՝ սխալ, աղավաղված ձևով են ներկայացնում իրերի իսկական վիճակը։ Մի՞թե այսօր կարելի է լրջորեն պնդել, թե միայն աշխարհագրական կարգի պատճառներն են հիմք ծառայել գերմանական իմպերիալիզմի ագրեսիվության համար։ Չէ՞ որ այսօր շատ բուրժուական գիտնականներ նույնիսկ չեն էլ մտածում լրջորեն պնդել, թե դրանք են եղել գլխավոր պատճառները, որ Գերմանիային դրդել են «տեղ որոնել արևի տակ», համաշխարհային պատերազմներ սկսել։ Եթե բազմաթիվ գիտնականներ ընդունել են, որ դրա պատճառը ամենևին էլ աշխարհագրական ֆակտորները չեն, ապա, ուրեմն, ո՞րն է այն հիմնական պատճառը, որ Գերմանիան իրեն դրսևորեց որպես եվրոպական ամենաագրեսիվ պետություն։ Դրա հիմնական պատճառը եղել են սկսած անցյալ դարի վերջից այդ երկրում բուռն թափով զարգացող կապիտալիստական արտադրական հարաբերությունների պահանջները, որի հետևանքով գերմանական իմպերիալիզմն սկսեց ավելի ու ավելի մեծ չափով դուրս մղել իր մյուս կապիտալիստական մրցակիցներին, որոնք նրանից առաջ ամրապնդել էին իրենց տնտեսական դիրքերը համաշխարհային շուկաներում։ Պատճառը, ուրեմն, եղել է գաղութների սուր պահանջը, որտեղից կարող էր էժան հումք ստացվել։ Կապիտալիստական էկոնոմիկան սկսեց ավելի ու ավելի անդիմադրում ձևով երկրի ամբողջ քաղաքականությունն ուղղել իրեն ձեռնտու հու-

նով, բացահայտ միլիտարիստական բնույթ տալով նրան, որովհետև գերմանական բուրժուազիայի վերոհիշյալ պահանջները բավարարել կարելի էր միմիայն պատերազմների միջոցով։ Այսպիսով, գերմանական պետության քաղաքականությունը հնազանդորեն ընթացավ իր երկրի կապիտալիստական էկոնոմիկայի պահանջների բավարարման ուղիով։ Էլ ինչպե՞ս կարելի է քաղաքականությունն անջատել էկոնոմիկայից։ Չէ՛ որ էկոնոմիկայի և նրանից բխող քաղաքականության միջև նույնպիսի սերտ կապ կարելի է տեսնել ո՛չ միայն Գերմանիայում. դա ընդհանուր երևույթ է, դա օրենք է կապիտալիստական սիստեմի համար։

Այսպիսով, ինչպես դեռ մեծ Լենինն է ընդգծել, քաղաքականությունը էկոնոմիկայի խտացած արտահայտությունն է, նրա ընդհանրացումն ու ավարտումը։ Ինչ վերաբերում է պետությունների քաղաքականության մեջ աշխարհագրական ֆակտորների ունեցած դերին, ապա դրանք, հասկանալի է, գոյություն ունեն, բայց չեն կարող վճռական դեր խաղալ պետությունների քաղաքականությունը որոշելու գործում։ Ուստի և աբսուրդ է այն պնդումը, թե աշխարհագրական ֆակտորները որոշիչ դեր են խաղում քաղաքականությունը մշակելու գործում։ Աշխարհագրական միջավայրի նկատմամբ գեոպոլիտիկների չափազանցրած վերաբերմունքն առաջին հերթին տիրապետող դասակարգի շահերի արտացոլումն է։ Սքողելով շարունակ սրվող դասակարգային հակասությունները կապիտալիստական պետության մեջ՝ իմպերիալիզմի գաղափարախոսները ցանկանում են արտադրության միջոցների մի բուռ տերերի ձըգտումը, որ իրականացվում է բուրժուական պետական մեքենայի միջոցով, ներկայացնել որպես ամբողջ հասարակության, նրա ամեն մի անդամի ձըգտում։ Ահա այն ոգին ու նպատակները, որ պրոպագանդում է գեոպոլիտիկան։

Ամերիկյան շատ աշխարհագրագետներ, որոնք խոսքով ժխտում են գեոպոլիտիկան, գործնականում իրենց աշխատանքները կառուցում են նույն գաղափարական-տնտեսական սկզբունքների վրա, ինչ և գեոպոլիտիկա կեղծ-գիտությունը։

Այսպես, ժամանակակից ամերիկյան աշխարհագրության տեսական արսենալի մեջ կարևորագույն տեղ են գրավում անգլիական բուրժուական աշխարհագրագետ Խ. Մակինդերի գաղափարները, որոնք հայտնի են «կոնտինենտալ միջուկ»-ի թեորիա անունով։ Այդ թեորիան ամբողջությամբ նպատակ ուներ պահպանել Անգլիայի համաշխարհային հզորությունը։ Բայց ո՞րն է նրա էությունը։ Հայտնի է, որ դարերի ընթացքում Անգլիայի տնտեսական հզորությունը մեծ չափով նպաստել է նրա տիրապետությանը ծովերում, իսկ բուրժուական պատմաբաններն ընդհանրապես բացարձակացնելով անգլիական ուժի այդ կողմը՝ նրա բոլոր հաջողությունները վերագրում են միայն ծովային հզորությանը։ Անգլիայի տնտեսական առաջադիմության գործում նրա ծովային ուժը, իհարկե, խիստ կարևոր նշանակություն է ունեցել, բայց նրա այդ տնտեսական բարգավաճումն ապահովող մի շարք պատճառների մեջ ամենևին էլ առաջին տեղը չի գրավել։ Անվիճելի թվացող այն դրույթը, թե բավական է, որ Անգլիան այսուհետև ևս պահպանի իր ծովային հզորությունը աշխարհի բոլոր երկրների հանդեպ, և նրա տնտեսական բարօրությունն ապահովված կլինի հավիտենապես, մեծ չափով խախտվեց, երբ համաշխարհային տնտեսական ասպարեզ իջավ այնպիսի մի ցամաքային տերություն, ինչպիսին էր Գերմանիան։

Այս նախադրյալներից ելնելով՝ Մակինդերն սկսեց պնդել, թե միայն Անգլիայի ծովային հզորության վրա հույս դնելը շատ անհիմն բան է։ Նշելով այն ուղիները, որոնց այժմ Անգլիան պիտի հետևի իր տնտեսական հզորությունը պահպանելու համար, Մակինդերն առաջարկեց աշխարհի մի յուրահատուկ քարտեզ, որի վրա նա աշխարհը կամայականորեն բաժանել է մի քանի մասի և այն հետևությունն է անում, թե աշխարհում տիրապետող կլինի այն երկիրը, որը կտիրապետի Արևելյան Եվրոպայի տերիտորիային։ Ահա բառացիորեն նրա հետևությունը. «Նա, ով տիրապետում է Արևելյան Եվրոպայում, կառավարում է Եվրոպայի միջուկը, ով կառավարում է միջուկը, կառավարում է համաշխարհային կղզին, իսկ ով կառավարում է համաշխարհային կղզին, նա տիրապետում է աշխարհին»։ «Համաշխարհային կղզի» ասելով Մակինդերը նկատի ունի եվրասիական մայր ցամաքը։ Նրա այս թեորիան հայտնի դարձավ «կոնտինենտալ միջուկ» անունով։



Ասելով, թե ով կառավարում է Արևելյան Եվրոպան, նա, վերջին հաշվով, կառավարում է և ամբողջ աշխարհը, դրանով իսկ Մակինդերն իր երկրի ուշադրությունը բևեռում է աշխարհի հենց այդ մասի վրա։

Այս է Մակինդերի «կոնտինենտալ միջուկ» թեորիայի էությունն ու ատաղը։ Դժվար չէ դրա մեջ տեսնել այն գծերը, որոնք հետագայում դարձան գեոպոլիտիկա կեղծ-գիտության դրոշը։ Մակինդերի թեորիան ցնծությամբ ընդունեցին գերմանական ֆաշիզմի իդեոլոգները, իհարկե, այն համապատասխանեցնելով իրենց ձգտումներին։ Այժմ այդ կեղծ թեորիան ժամանակակից ամերիկյան հրատարակություններում ամեն կերպ որոճվում է և քաղաքական-աշխարհագրական հետազոտությունների մեծ մասի հիմքում է դրվում։

Գեոպոլիտիկա կեղծ-գիտությունն ըստ էության սկիզբ է առնում ագրեսիվ երկրներում քաղաքական աշխարհագրության ընդերքից, երբ բուրժուական քաղաքական աշխարհագրության օբյեկտիվության նույնիսկ վաղանցուկ երևույթը չի կարող գոհացնել պատերազմի ֆանատիկոսներին։ Վերջին համարյա 100 տարվա ընթացքում այդպիսի երկիր էր Գերմանիան։ Հասկանալի է, որ՞ այդ ժամանակաշրջանի Միացյալ Նահանգներն էլ աստծո գառը չէին։ Սակայն ագրեսիվության իր թափով նրանք դեռևս զիջում էին գերմանացիներին։ Առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով ԱՄՆ-ը նոր, միայն բուրժուական աշխարհում դուրս եկան առաջին պլան և «կապիտալիզմի միջնաբերդ» անվան իրավունքը նվաճեցին։ Միացյալ Նահանգներին, որպես տիպիկ կապիտալիստական երկրի, հասկանալի է, հենց սկզբից հատուկ էին բուրժուական արտադրական հարաբերությունների բոլոր արատները։ Եվ ոչ մի բարոյական նորմա այդ երկրին չէր զսպում, երբ նա իր դիկտատին էր ենթարկում հարևան երկրներին։ Իր իսկ հռչակած «Ամերիկան ամերիկացիների համար» լոզունգը իրականում, փակագծերը բացելուց հետո այլ կերպ էր հնչում՝ «երկու Ամերիկան էլ Միացյալ Նահանգների համար»։ Իր տնտեսական, ապա և քաղաքական տիրապետությունը հաստատելու համար ԱՄՆ-ը այնպիսի անմարդկային ու դաժան մեթոդների էին դիմում, ինչպես մյուս կապիտալիստական պետությունները։

Եթե Գերմանիայի ագրեսիվությունն ավելի լայն համբավ ուներ աշխարհում, դրանից ամենևին չի հետևում, թե ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական երկրների իմպերիալիստական բարքերն ավելի լավն էին։ Հիմնականում խնդիրն այն էր, թե ինչ բնույթ է կրում կոնկրետ պատմական զարգացումը յուրաքանչյուր առանձին երկրում, ինչ աստիճանի է հասնում նրա զարգացումը»

հզորությունը, և սրանով էլ որոշվում է կապիտալիստական երկրի ագրեսիվության, նրա էքսպանսիոնիստական ձգտումների աստիճանն ամեն մի որոշակի պատմական պահին։ Եթե Գերմանիան նախահարձակ եղավ և միանգամից ձեռք բարձրացրեց Անգլիայի և մյուս կապիտալիստական երկրների գաղութների վրա, ապա ԱՄՆ-ը անցյալ դարի ընթացքում և մինչև առաջին համաշխարհային պատերազմը զբաղված էին իրենց գործերի «կարգավորումով» Մոնրոի դոկտրինայի շրջանակներում, այսինքն՝ ամերիկյան մայր ցամաքների սահմաններում։ Եվ բնական է, որ կայզերական Գերմանիայի ագրեսիվության համբավը շատ ավելի մեծ էր, քան ԱՄՆ-ինը։

Զարմանալի չէ, որ այնպիսի մի «գիտական» սիստեմ, ինչպիսին է գեոպոլիտիկան, ծնունդ է առել Գերմանիայում, թեպետև նրա սկզբնական կոնցեպցիան զուտ թեորիական պլանով Գերմանիա է անցել Շվեդիայից՝ ի դեմս Քյոլլենի աշխատությունների։ Գեոպոլիտիկան իսկականից Գերմանիայում արմատավորվեց սերտորեն միահյուսվելով գերմանական աշխարհագրագետ Ռատցելի առավել ռեակցիոն հայացքների հետ և ամբողջությամբ իր մեջ առնելով մակինդերյան գաղափարները «կոնտինենտալ միջուկի» մասին։

Ելնելով պետական օրգանիզմի բիոլոգիական բնույթի մասին ռատցելյան դրույթից՝ Քյոլլենը և նրա հետ միասին իր ստեղծած և իր իսկ մկրտած «գեոպոլիտիկական» թեորիան է՛լ ավելի են բացարձակ դարձնում այդ թեզը։ Ըստ Քյոլլենի այդ «օրգանիզմի» ամրությունը պայմանավորված է նրա աշխարհագրական դիրքով։ Ինչպես ամեն մի բիոլոգիական օրգանիզմի հատուկ է զարգացումը գոյության պայքարի միջոցով, այնպես էլ, ինչպես պնդում է գեոպոլիտիկան, պետությանը հատուկ է ընդարձակվելու ձգտում՝ ի հաշիվ տերիտորիալ նվաճումների, հարևան և այլ երկրների կլանման։ Ըստ որում բոլորովին որոշակի հասկացվում է, թե որոնք են այն երկրները, որ պիտի կլանեն և որոնք, որ պիտի կլանվեն։ Պատահականություն չէ, որ Քյոլլենի գաղափարները, որոնք արտահայտված են նրա «Մեծ տերություններն այսօր» գրքում, հենց միայն առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Գերմանիայում 19 հրատարակություն է ունեցել. էլ չենք խոսում այն մասին, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում նրա աշխատությունների հրատարակումն ավելի լայն թափ ստացավ։

Գեոպոլիտիկան իր իսկական կիրառումն ունեցավ հիտլերականների տիրապետության տարիներին։ Բնական է, որ այն մարդիկ, ովքեր Գերմանիայում վահանի վրա բարձրացրին գեոպոլիտիկական գաղափարները, հենց նրանք էլ եղան ծնունդ առնող նացիզմի հոգեհայրերը։

Գեոպոլիտիկան դարձավ նացիստների յուրահատուկ աստվածաշունչը։ Հետվերսալյան Գերմանիան ռևանշի ծարավով բռնված՝ գեոպոլիտիկական կեղծ-գիտության կողմը քաշեց, բացի համոզված ռասիստներից և ուրիշ հողերի սիրահարներից, նաև այնպիսի մարդկանց, որոնք անցյալում լուրջ գիտնականներ էին համարվում, իսկ այժմ շովինիստական մոլուցքով բռնված՝ կառչում են ամեն մի շյուղի՝ Գերմանիայի «վեհությունը» վերականգնելու համար։ Հենց ֆաշիստական խավարամոլների տիրապետությունն էր, որ կոչված էր հիմնավորելու գեոպոլիտիկայի մյունխենյան դպրոցը Հաուսհոֆերի գլխավորությամբ։ Թվում էր, թե գերմանական գեոպոլիտիկան ևս, որ նացիզմի կարևորագույն թեորիական հենարաններից մեկն էր, պետք է պատմության դագաղի մեջ դրվեր հիտլերիզմի հետ միասին։ Սակայն այդպես չեղավ։ Գեոպո-



լիտիկայի դրոշը էստաֆետայի պես հանձնվեց ԱՄՆ-ի գիտնականներին։ Ի՞նչ օգուտ, որ ամերիկյան աշխարհագրագետներն անբարյացակամ են վերաբերվում «գեոպոլիտիկա» տերմինին, աջ ու ձախ հայհոյում են այն։ Բայց դրա փոխարեն նրանք խնամքով պահպանում են գեոպոլիտիկական գաղափարները և առատորեն օգտագործում իրենց աշխատություններում։

Գեոպոլիտիկան այժմ հիմնավորվել է ԱՄՆ-ում և, ինչպես մի ժամանակ հաուսհոֆերյան գեոպոլիտիկան էր Ռուրի միլիարդատերերի համար, սկսել է հմտանալ արդեն ԱՄՆ-ի էքսպանսիոնիստական ձգտումներն արդարացնելու և ջերմացնելու գործում։

Բայց այնքան էլ ճիշտ չէր լինի ենթադրել, թե ԱՄՆ-ում գեոպոլիտիկական հայացքներն իրենց համար ճանապարհ են բացել միայն երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Սկսած ընթացիկ դարի սկզբից այդ հայացքներն արդեն սկսել էին արմատավորվել ԱՄՆ-ում։ Ամերիկյան գեոպոլիտիկայի հայր իրավամբ կարելի է համարել ծովակալ Մեհենին։ Նրա հայացքները հետագայում լայնորեն տեղ են գտել հաուսհոֆերյան գեոպոլիտիկայի մեջ։

Ահա նրա ծրագրի հիմնական կետերը։ Նախ՝ նա ԱՄՆ-ին կոչ էր անում արտաքին տնտեսական էքսպանսիայի, որը պետք է արտահայտվեր «անդրծովյան» առևտրի ըստ ամենայնի ընդարձակումով, կապիտալի արտահանումով, արտաքին շուկաների զավթումով, երկրորդ՝ նա իր երկրին կոչ էր անում արտաքին քաղաքական էքսպանսիայի, որը պետք է արտահայտվեր գաղութային ակտիվ քաղաքականությամբ, դեռևս չբաժանված տերիտորիաների զավթումով և ռազմական պայքարով՝ հօգուտ ԱՄՆ-ի Խաղաղ օվկիանոսի ավազանում և Լատինական Ամերիկայում աշխարհի վերաբաժանման համար՝ և երրորդ՝ կոչ էր անում, որ ԱՄՆ-ը ռազմա-ստրատեգիական միջոցներ ձեռք առնեն նվաճված գաղութներն ու ազդեցության շրջաններն ամրապնդելու համար և հետագա պայքարի նախապատրաստվեն համաշխարհային տիրապետության հասնելու նպատակով։

Այդ ժամանակից սկսած ամերիկյան աշխարհագրագետների արտահայտություններում ավելի որոշակի է դարձել իրենց երկրի առանձնահատուկ դերը միջազգային հարաբերություններում և ավելի է ամրապնդվել քաղաքական աշխարհագրության մեջ։ Իսկ պատերազմը վերջանալուց հետո ռազմաշունչ ջատագովների այդ անջատ-անջատ ձայները միաձուլվելով մի խումբ են կազմել։ Տարբերությունը թերևս միայն այն է, որ աշխարհագրագետների մեծ մասը վրդովմունքով ժխտում է հաուսհոֆերյան գեոպոլիտիկայի տխուր հիշողությունը, իսկ փոքր մասը հակված է ընդունելու ամբողջ գերմանական գեոպոլիտիկան այնպես, ինչպես այն եղել է իր վարկաբեկված անվան հետ միասին։ Պարզ է, որ այդպիսի «ստորաբաժանումը» ամերիկյան աշխարհագրագետների հայացքներում ոչ մի սկզբունքային տարբերություն բերել չի կարող։ Ամերիկացի Դ. Ռասելը դրա մասին ուղղակի ասում է. «Գլոբալ պատերազմի ստրատեգիական պլանավորման համար անհրաժեշտ են աշխարհագրական որոշ լայն գիտելիքներ։ Հասարակ լեզվով այդպիսի լայն աշխարհագրական գիտելիքները միավորվում են գեոպոլիտիկա անունով։ Սակայն... պրոֆեսիոնալ աշխարհագրագետները ձգտում են խուսափել այդ տերմինից, որը տարբեր ձևով է հասկացվում» («Ամերիկյան աշխարհագրություն», 1957 թ., Մ., ռուս., էջ 465)։

Ցուցանշական են Վայկենբերգի հայացքները քաղաքական աշխարհագրության և գեոպոլիտիկայի փոխհարաբերությունների վերաբերյալ։ Բնորո-

շելով քաղաքական աշխարհագրության ճյուղը՝ նա գրում է. «Քաղաքական աշխարհագրությունը վերաբերում է ինչպես ազգերի փոխհարաբերությանը, այնպես էլ աշխարհագրական ազդեցությանը նրանց վրա և գնահատում է վիճելի տարածությունները, կամ, այսպես կոչված՝ դժվարին գոտիները»։ Անհայտ է մնում, թե ինչպե՞ս պետք է լինի այդ պրոբլեմների գնահատման բնույթը։ Ինքը Վալկենբերգը այդ գնահատականները տալիս հետևում է ջատագովության սկզբունքներին՝ արդարացնելով ամերիկյան իմպերիալիզմի ամեն մի քայլը, և այդ տեսակետից ծիծաղաշարժ են նրա ցասմնալից արտահայտությունները գերմանական գեոպոլիտիկայի հասցեին, որը նա բնորոշում է հետևյալ կերպ. «Ըստ էության գեոպոլիտիկան քաղաքական աշխարհագրություն է, որն արտացոլում է ազգային տեսակետը, դրա հետևանքով այն պարունակում է շատ տարրեր, որոնք գիտականորեն օբյեկտիվ աշխարհագրագետները չեն կարող հաստատորեն ընկալել»։ Իսկ ինքը՝ Վալկենբերգն ի՞նչ տեսակետից է մոտենում քաղաքական պրոբլեմներին։ Մոռանալով իր իսկ հայտարարությունները, թե՝ գիտության մեջ պետք է անաչառ լինել, հենց նույն գրքում, որից բերվեցին վերոհիշյալ խոսքերը, նա ամերիկյան իմպերիալիզմի առջև ստորաքարշություն անելով ԱՄՆ-ը կոչում է «դեմոկրատիայի միջնաբերդ», որը «համաշխարհային պատասխանատվության լիակատար ծանրությունն է կրում»։ Եվ այդ «պատասխանատվությունը», բանից դուրս է գալիս, օգուտ է բերում ո՛չ միայն ԱՄՆ-ին, այլև, այսպես կոչված, ազատ աշխարհի մյուս ազգերին։ Քեռի Սեմի «բարի դրացիության» մասին արված զեղումների պոռթկումի մեջ Վալկենբերգը շարադրում է իրեն հետաքրքրող կոնկրետ քաղաքական պրոբլեմները։ Եվ, բանից պարզվում է, որ աշխարհի բարեկեցության «հոգսերով» ծանրաբեռնված ամերիկյան քաղաքական լիդերներին հետաքրքրում է ոչ ավելի, ոչ պակաս՝ քան քաղաքական գերիշխանությունն ամբողջ աշխարհի վրա։ Այսպես, նրանց շատ է մտահոգում, որ Ինդոնեզիայում խիստ «ձախ» զգացմունքներն են հաղթանակել։ Նրանց մտահոգում է և այն, թե Նեռուն ընդունա՞կ է դեմոկրատական պետություն ստեղծելու (պետք է հասկանալ ամերիկյան կառավարող շրջանների տեսանկյունով), նրանց խիստ հետաքրքրում են Ճապոնիայի, Կորեայի, Իրանի, Աֆղանստանի և ընդհանրապես ամբողջ Ասիայի գործերը, նրանց անհանգստացնում է արաբական աշխարհում տեղի ունեցող խմորումը և այլն։ Եվ «հոգալով» այդ երկրների բարեկեցության ու նրանց քաղաքական պրոբլեմների արդարացի լուծման մասին, որոնք բացառապես համապատասխան սուվերեն պետությունների ներքին գործն են, իրականում ԱՄՆ-ը հավերժացնում են այնպիսի պետությունների քաղաքական բաժանումը, ինչպիսիք՝ են Կորեան, Վիետնամը և այլն, արյունահեղ ինտերվենցիաներ կազմակերպելով Կորեայում, Լիբանանում, Գվատեմալայում, խռովություններ հրահրելով Բիրմայում, Ինդոնեզիայում, Լատինական Ամերիկայի երկրներում, տենդագին կառչելով գաղութային ռեժիմի պահպանմանը Ասիայում ու Աֆրիկայում։ Ամերիկյան իմպերիալիստների այսպիսի «բարեգործությունների» ցուցակը, իհարկե, սրանով ամենևին չի սպառվում։ Այս բոլորի մասին «օբյեկտիվ» Վալկենբերգը ոչ մի խոսք չի ասում։ Դեռ ավելին, շատ դեպքերում նա հեշտությամբ ամեն բանի մեջ «մեղավոր» է դուրս բերում... կոմունիստներին։ Հի՛ն և վաղո՜ւց արդեն ծամծմված հեքիաթներ։

Վերն ասածներից դժվար չէ հետևություն անել, որ չնայած Վալկենբերգը



խոսքով վրդովվում է գեոպոլիտիկների դեմ, իր սկզբունքներով ու հայացքներով նա ինքն էլ իսկական գեոպոլիտիկ է և ագրեսիան ջատագովելու ու արդարացնելու գործում ոչ մի բանով չի տարբերվում իր գերմանական եղբայրակիցներից։

Եթե վերոհիշյալ «գիտնականները» խոսքով բացասական վերաբերմունք են ցույց տալիս գեոպոլիտիկային, իսկ գործնականում՝ ժամանակակից քաղաքական աշխարհագրությունը կառուցում են նույն թեորիա-մեթոդոլոգիական սկզբունքներով, ինչ գեոպոլիտիկան, ապա այսօր ԱՄՆ-ում կան և այնպիսի աշխարհագրագետներ, որոնք գեոպոլիտիկան ընդունում են ավելի բացահայտորեն։

ԱՄՆ-ի հնագույն գեոպոլիտիկներից մեկը՝ Սպիկմենը, որը դեռ նախապատերազմյան տարիներին շատ բան էր արել իր երկրում գեոպոլիտիկան ամրապնդելու համար, իր կոլեգաների մեջ մեծ հեղինակություն է վայելում։ Եվ իրոք, չէ՞ որ Սպիկմենն էլ, իր «հակառակորդներն» էլ միևնույն թեորիական դիրքերից են ելնում։ Էլ, ուրեմն, ինչո՞ւ հաշտ ու խաղաղ չպետք է ապրեն նրանք։ Սպիկմենն, ինչպես և ամերիկյան աշխարհագրագետների մեծամասնությունը, քաղաքական աշխարհագրության նկատմամբ նույն կարծիքն ունի։ Ըստ նրա «Աշխարհագրությունը պետությունների արտաքին քաղաքականության մեջ ամենահիմնական ֆակտորն է, որովհետև նա առավել մշտական ֆակտոր է»։ Բանն այն է, որ այդպիսի մարդկանց, ինչպիսիք են՝ Հարստհորնը, Վալկենբերգը, Սպենսերը և այլք, դուր չեն գալիս գեոպոլիտիկների չափից դուրս ցինիկ հետևությունները, ինչպիսիք են Սպիկմենի հետևությունները։ Նրանք պայքարում են ավելի շուտ ձևի և ոչ ամենևին գեոպոլիտիկական հայացքների էության դեմ։ Ցույց տանք, թե Սպիկմենն ինչպես է ամերիկյան իրականությանը հարմարեցրել ու «ստեղծագործաբար» զարգացրել մի կողմից Ռատցելի, մյուս կողմից՝ Մակինդերի հայացքները իր «Ամերիկյան ստրատեգիան համաշխարհային քաղաքականության մեջ» (1942) և այլ աշխատություններում։

Ընդունելով ռատցելյան իդեան պետական օրգանիզմի բիոլոգիականության մասին՝ Սպիկմենն առաջին պլանի վրա է քաշում կենդանու ամենագազանային բնազդները, ըստ էության հավասարության նշան դնելով կենդանական աշխարհի և մարդկային հասարակության բնազդների միջև։ Ահա թե ինչ է գրում նա. «Բռնության բոլոր ձևերը, ներառյալ նաև ավերիչ պատերազմները, թույլատրելի են միջազգային ընկերակցության մեջ։ Դա նշանակում է, որ պայքարն ուժի համար, ինչպես պայքարը ապրելու և հարաբերական ուժային դիրքերը բարելավելու համար, դառնում են պետությունների ներքին ու արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը։ Մնացած ամեն ինչ երկրորդական է, որովհետև վերջին հաշվով միայն ուժով կարելի է հասնել արտաքին քաղաքականության նպատակներին։ Ուժը նշանակում է ապրելու ընդունակություն, իր կամքն ուրիշների վզին փաթաթելու ընդունակություն, ուժ չունեցողներին թելադրելու ընդունակություն և պակաս ուժ ունեցողներից զիջումներ կորզելու հնարավորություն... Այնտեղ, որտեղ կոնֆլիկտի վերջնական ձևը պատերազմն է, պայքարը ուժի համար դառնում է պայքար ռազմական ուժի համար, պատերազմի պատրաստության համար»։

Իր այս դրույթը Սպիկմենը կապում է մակինդերյան «կոնտինենտալ միջուկի» կոնցեպցիայի հետ։ Հնացած համարելով Մակինդերի այն պնդումը,

*թե ով տիրապետում է Արևելյան Եվրոպայում, նա վերջին հաշվով տիրապետում է աշխարհին, Սպիկմենը ի հաճույս ամերիկյան իմպերիալիզմի, այսօր աշխարհին տիրապետելու բանալի է համարում «ծովային երկրների գոտին»: Համապատասխանորեն ձևափոխելով Մակինդերի արտահայտությունը՝ նա ասում է. «Ով տիրապետում է ծովամերձ երկրների գոտուն, նա կառավարում է Եվրասիան, ով կառավարում է Եվրասիան, նա վճռում է աշխարհի բախտը»: Դժվար չէ նկատել, որ Մակինդերի ֆորմուլայի մեջ Սպիկմենի մտցրած այս ուղղումը ամբողջովին նպատակ ունի իր հայրենի իմպերիալիստներին ցույց տալու համաշխարհային տիրապետության հասնելու ուղին: Եվ իրոք, ԱՄՆ-ի կառավարությունը Սպիկմենի նման տեսաբանների շնորհիվ ամեն ինչ անում է, որպեսզի իր տիրապետությունն ամրապնդի Եվրոպայի և Ասիայի առափնյա բոլոր երկրներում: Ռազմական ուժերը զանազան բազաներով, ներառյալ նաև ռակետային բազաները, ցրված են Ատլանտյան օվկիանոսից մինչև Խաղաղ օվկիանոսն ընկած բոլոր տերիտորիաներում: Իրենց այդ էքսպանսիոնիստական ձգտումները ԱՄՆ-ը մատուցում են այսպես կոչված, ազատ աշխարհը «կոմունիստական ագրեսիայից» «պաշտպանելու» անվան տակ և այդ պատրվակով իրենց տիրապետությունն են հաստատում այդ նույն տխրահռչակ «ազատ» աշխարհի վրա:*

*Գեոպոլիտիկական գրականությունը հեղեղել է ԱՄՆ-ի գրքի շուկան, ամերիկացիների մեջ պրոպագանդելով ագրեսիվ, մարդատյաց տրամադրություններ: Ամենաաչքի ընկնող հրատարակություններից մեկը եղավ «Գլոբալ աշխարհագրություն» անունով ժողովածուն: Այդ ժողովածուն ըստ էության ակնառու ապացույց է այն բանի, որ ԱՄՆ-ում գիտական քաղաքական աշխարհագրության և գեոպոլիտիկայի միջև սահմանները վերացել են: Դեռ ավելին. գեոպոլիտիկան կլանել է քաղաքական աշխարհագրությունը: Պատահականություն չէ, որ այդ ժողովածուի մեջ քաղաքական աշխարհագրությունն ուղղակի նույնացվում է գեոպոլիտիկայի հետ: Իսկ գեոպոլիտիկայի «հակառակորդները» ոչ մի անգամ թեկուզ և հարևանցիորեն չեն նշել, որ գեոպոլիտիկան ոչ այլ ինչ է, եթե ոչ վտանգավոր հիվանդագին պալար քաղաքական աշխարհագրության մարմնի վրա:*

*Ժողովածուի կազմակերպիչը և մի շարք հոդվածների հեղինակը ամերիկյան առաջատար գեոպոլիտիկներից մեկն է՝ Ջորջ Ռենները: Նրա առաջ քաշած հայացքները ամբողջ ժողովածուի ընդհանուր ֆոնն են կազմում: Այդ հայացքներով նա բոլոր ջանքերը գործադրում է, որպեսզի գեոպոլիտիկական գաղափարները որքան կարելի է «ներդաշնակորեն» կապի ԱՄՆ-ի արդի էքսպանսիոնիստական շրջանների գործնական պահանջների հետ: Ընդունելով գերմանական գեոպոլիտիկների արդեն իսկ մշակած ռատցելյան գաղափարները, նա հատկապես հրապուրվում է մակինդերյան թեորիայով:*

*Ռեններն ընդհանրապես քաղաքական աշխարհագրության և գեոպոլիտիկայի միջև տարբերություն չի տեսնում: Նա ամենևին չի քաշվում արդի ամերիկյան գեոպոլիտիկայի մեջ մտցնել գերմանական հաուսհոֆերյան գեոպոլիտիկայի ո՛չ միայն գաղափարները, այլև բոլոր մեթոդները: Նա ուղղակի առաջարկում է, որ ԱՄՆ-ի ռազմական մինիստրը «գեոպոլիտիկայի ու ստրատեգիայի գծով ունենա մինիստրի օգնական, որը պետք է գլխավորի ռազմական աշխարհագրության և ստրատեգիայի ինստիտուտը»:*

*Բնական է, որ Ռեններն իր գեոպոլիտիկական դատողությունների մոուցքի մեջ դժգոհություն է հայտնում, որ ԱՄՆ-ը, իր կարծիքով, անբավարար են նախապատրաստված պատերազմի և նրանց ներկայացնում է որպես անմեղ գառ, «որ ստիպված է» պատերազմների մեջ «խրվել» և աշխարհի բախտի պատասխանատվությունն իր վրա վերցնել: Ռեններին քիչ է թվում, որ «խաղաղասեր» Միացյալ Նահանգների նախաձեռնությամբ ամբողջ կապիտալիստական աշխարհը բաժանված է զանազան ռազմական բլոկների, ինչպիսիք են՝ ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն, ՍԵՆՏՕ-ն և այլն, որոնց գլխավոր շտաբը գտնվում է Վաշինգտոնում. նրան քիչ է թվում, որ համարյա բոլոր մայր ցամաքներում, որտեղ կարծես թե ամերիկացիները ոչ մի անելիք չունեն, ԱՄՆ-ի ռազմական բազաներ կամ զորքեր կան: Վերջապես, Ռեններին չի գոհացնում մանր պատերազմների քաղաքականությունը, որ իրականացնում են ԱՄՆ-ը ուղղակի կամ, ինչպես իրենք են արտահայտվում, «անուղղակի» ինտերվենցիայի միջոցով սովետական պետությունների դեմ: Այս ամենը քիչ է թվում Ռեններին, նա ինչ-որ ավելին է ուզում:*

*Ռեններն ինքը և «Գլոբալ աշխարհագրության» նրա հեղինակակիցները խիստ շատ են խոսում ազգերի ռասսայական ստորաբաժանումների մասին, տիրապետող ազգերի և ենթակա ազգերի մասին: Ըստ որում այդ բոլոր դատողություններից նույն գարշելի մարդատյացության հոտն է փչում, ինչ բնորոշ էր նաև գեոպոլիտիկայի գերմանական դպրոցի համար:*

*Ներկայումս ԱՄՆ-ում դժվար է գտնել քաղաքական աշխարհագրությանը վերաբերյալ այնպիսի մի գիրք, հոդված կամ պարզապես արտահայտություն, որն այս կամ այն չափով չկրկներ այդ նույն գեոպոլիտիկական գաղափարները: Այսպիսով, ժամանակակից Միացյալ Նահանգներում գեոպոլիտիկան սկսել է տիրապետել քաղաքական աշխարհագրությանը և այն ի սպաս դրել ամերիկյան իմպերիալիզմի առավել ռեակցիոն էքսպանսիոնիստական ուժերին:*

Գ. ԵԳԱՆՈՎ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՆՈՐ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՄՈՅԻ ՄԱՍԻՆ

Ռևոլյուցիայի լեգենդար հերոսի՝ Կամոյի մասին եղած գրականությունը հարստացավ մի շատ կարևոր աշխատությամբ։ Մոսկվայում ռուսերեն լեզվով լույս է տեսել Լ. Ս. Շահումյանի «Կամո» խորագրով գիրքը*, որը գրված է մեծ խնամքով և ջերմությամբ։ Հեղինակը բարեխիղճ կերպով հետազոտել ու օգտագործել է Կամոյի մասին եղած հարուստ գրականությունը, արխիվային նյութերն ու հիշողությունները. դրան օգնել է և այն, որ աշխատության հեղինակն անձամբ ծանոթ է եղել հերոսի հետ։

Մինչև այժմ Կամոյի մասին եղած գրքերից Լ. Շահումյանի գիրքը տարբերվում է նրանով, որ այստեղ հավասար հաջողությամբ ցույց են տրված Կամոյի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության ինչպես հանրահայտ, այնպես էլ դեռևս քիչ լուսաբանված առանձին էջեր։ Կամոն ներկայանում է ընթերցողին ոչ միայն որպես հանդուգն ու անվեհեր մի հերոս, այլ նաև որպես գործիչ, որպես մարդ իր դրական, երբեմն էլ բացասական կողմերով հանդերձ։ Դա հեղինակին հնարավորություն է տվել հաջողությամբ շարադրել հարուստ փաստական նյութը և հեռանալ ֆրագմենտար շարադրության այն ձևից, որից չեն կարողանում ազատվել Կամոյի և ուրիշ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների մասին գրված գրքերի շատ հեղինակներ։

Լ. Շահումյանի աշխատության մեջ Կամոն ավելի ամբողջական է, կենդանի։ Նրա գործունեությունը կապված է պատմական ժամանակաշրջանի և Կոմունիստական պարտիայի առջև ծառացած խնդիրների հետ։ Միաժամանակ Կամոն հանդես է գալիս իր ուրույն գծերով՝ անձնական կյանքում մեղմ ու համեստ, պայքարում՝ անձնազոհ, անվախ, սառնարյուն, երկաթյա կամքի տեր և հաստատակամ՝ նպատակի իրագործման մեջ։ Ահա այսպիսին է տպավորությունը, երբ փակում ես գրքի վերջին էջերը։

Գրախոսվող աշխատությունը ընդգրկում է Կամոյի հարուստ կյանքի ու պայքարի բոլոր կողմերը, քայլ առ քայլ բացահայտելով բոցաշունչ ռևոլյուցիոների գործունեության պանծալի էջերը։ Կարելի է և անհրաժեշտ է շարունակել ուսումնասիրություններն այս ուղղությամբ։ Սակայն թվում է, թե աշխատությունը կհարստանա միայն առանձին փաստերով ու դեպքերով, կպարզվեն որոշ մանրամասներ, բայց ամբողջական կերպարը կմնա այնպես, ինչպես տրված է արդեն այս աշխատության մեջ։

Նկարագրելով Կամոյի մանկական և պատանեկան տարիները, նրա ռևոլյուցիոն աշխատանքի սկիզբը, Լ. Շահումյանը նշում է, որ շնորհիվ քաղաքական կյանքի ու բանվորական շարժումների աշխուժացման, մյուս կողմից՝ ռևոլյուցիոն պրոպագանդայի և գիտակից բանվորների ազդեցության, Կամոն շատ շուտով ազատվեց ազգայնական որոշ տրամադրություններից և դարձավ սոցիալիստ։ 1901 թվականին մտնելով ՌՍԴԲՊ շարքերը, նա դառնում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ և իր ամբողջ կյանքը նվիրաբերում բանվոր դասակարգի մեծ գործին։

Գրականության և հայտնի կինոնկարի օգնությամբ արդեն շատ շատերը «անձամբ ծանոթ են» Կամոյի հետ։ Գիտեն, որ նա եղել է փորձված ռևոլյուցիոներ, կազմակերպական-տեխնիկական աշխատանքների տաղանդավոր կազմակերպիչ։ Նա մասնակցել է տպարանների, այդ թվում Հավլաբարի հայտնի տպարանի կազմակերպմանը, դժվարագույն պայմաններում փոխադրել է գրականություն, զենք, մասնակցել և ղեկավարել է բանվորական շատ ելույթներ։ Բայց քչերին է հայտնի, որ նա եղել է պարտիայի գաղափարները տարածող լավագույն պրոպագանդիստ։

«Կամոն,— գրում է Լ. Շահումյանը,— ծառայում էր պարտիային ոչ միայն որպես տեխնիկ-կոնսպիրատոր։ Նա միշտ եղել է բոցաշունչ ագիտատոր-պրոպագանդիստ, երիտասարդ կադրերի դաստիարակ։ Դեռևս 1903 թվականին Թիֆլիսի կոմիտեն նրան հանձնարարեց ղեկավարել ռևոլյուցիոն աշակերտական երիտասարդության մի խմբակ» (էջ 25)։ Նա երիտասարդ ընկերներին սովորեցնում էր ոչ միայն կոնսպիրացիոն աշխատանքի տեխնիկան, այլև պահանջում ունենալ բոլշևիկյան վերաբերմունք դեպի ամեն մի գործ, լինի այն մեծ, թե փոքր։

Գրքում պատմվում է այն մասին, որ բանվորական հավաքներում, միտինգներում նա հաճախ ելույթներ էր ունենում ցարիզմի և կապիտալիզմի դեմ։ Նա օգտագործում էր նույնիսկ բանտի պայմանները և երիտասարդության մեջ պրոպագանդում սոցիալիզմի գաղափարները։

Իր ամբողջ էությամբ և գործով Կամոն եղել է իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստ, ժողովուրդների եղբայրության, ցարիզմի դեմ նրանց համատեղ պայքարի ջատագով։ Որոշ աշխատություններում այս հանգամանքը ուշադրությունից վրիպել է։ Լ. Շահումյանը հատուկ խնամքով ցույց է տալիս Կամոյի պայքարը աշխատավոր մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ։

Այսպես, Կամոն Ս. Օրջոնիկիձեի և այլ ղեկավար պարտիական աշխատողների հետ միասին, հսկայական ջանքեր է գործադրում որպեսզի կանխի ցարիզմի կողմից կազմակերպված հայ-ադրբեջանական կոտորածը, տարածում է Թիֆլիսի կոմիտեի համապատասխան կոչը, ելույթներ է ունենում վրացի, ադրբեջանցի և հայ աշխատավորների առաջ։ Հանրահայտ է, որ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ջանքերի շնորհիվ այդ պրովոկացիան չտվեց նրա կազմակերպիչների ծրագրած արդյունքները։ «Հայ-թաթարական կոտորածի տագնապալի օրերին,— կարդում ենք գրքում,— Կամոյին հանձնարարված էր կազմակերպել աշխատավոր քաղաքացիներով բնակեցված շրջանների պաշտպանությունը և հրեական թաղամասի պաշտպանությունը՝ կապված սպասվելիք սևհարյուրյակային ջարդի հետ» (էջ 34)։

Իր ամբողջ գործունեության ընթացքում Կամոն ամուր կապերով կապված է եղել ռուս, վրացի, ադրբեջանցի և այլ ազգերի աշխատավորների հետ։ Ի՞նչ ազգի է պատկանում Կամոն՝ ռուս է, հայ, թե վրացի։ Դժվար է պատասխանել այդ հարցին, ասել է Մամիա Օրախելաշվիլին։

Կամոյի մարտական աշխատանքի լուսաբանմանն են նվիրված գրքի հինգ գլուխները։ Կատարելով պարտիայի III համագումարի որոշումներն ու Վ. Ի. Լենինի ցուցումները, Կամոն 1905 թվականին իրեն նվիրում է մարտական ջոկատների կազմակերպման, զինման և նրանց ռազմական ուսուցման գործին։ Նա ստեղծում է անլեգալ զենքի արհեստանոցներ, ղեկավարում նրանց աշխատանքը, զենք է պատրաստում և հայթայթում բանվորական մարտական ջոկատների համար։ Կամոն հանդիսանում է դեկտեմբերյան զինված ապստամբության ղեկավարներից մեկը Թիֆլիսում։

Կատարելով պարտիական ղեկավար օրգանների առաջադրանքը, Կամոն երեք անգամ մեծ հաջողությամբ կազմակերպում և ղեկավարում է փողի էքսպրոպրիացիա և բռնագրավված գումարներն ամբողջությամբ հանձնում պարտիական գանձարանին։ Գրքում ամենայն մանրամասնությամբ պատմվում է 1907 թվականի հունիսի 13-ին տեղի ունեցած 250 հազար ռուբլու հաջող բռնագրավումը։ Այդ անկրկնելի սխրագործությունը Կամոն կատարել է պարտիական ղեկավար ընկերների և մասնավորապես Ստեփան Շահումյանի գիտությամբ և աջակցությամբ։ Գրքում բերված փաստաթղթերը ցույց են տալիս, թե այդ դեպքը ինչպիսի աղմուկ է առաջ բերում կառավարող շրջաններում և ինչպես են ձախողվում պահնորդական օրգանների բոլոր ջանքերը ձերբակալելու Կամոյին և հայտաբերելու բռնագրավված գումարը։

Այնուհետև փաստական հարուստ նյութի հիման վրա ցույց է տրված արտասահմանից ռևոլյուցիոն գրականություն և զենք տեղափոխելու գործում Կամոյի կատարած եռանդուն աշխատանքը։ Նա փաստորեն հանդիսանում էր այդ գործի ղեկավար Մ. Մ. Լիտվինովի անմիջական օգնականը։ Սակայն Կամոյի համար այդ աշխատանքի ամբողջ բարդությունը կարելի է պատկերացնել, եթե նկատի առնվի, որ նա ստիպված էր գործել անծանոթ շրջապատում, չիմանալով եվրոպական լեզուներ։ Բայց դա չէր խանգարում նրան գործել Փարիզում, կապվել Մակեդոնիայում հայտնի ռևոլյուցիոներ Նաում Թյուֆեկչիևի հետ։ Մենք նրան տեսնում ենք Բելգիայում, որտեղ Ա. Ս. Շապովալովի և նրա մերձավոր օգնական աստրախանցի Պետրոս Տուրպայևի օգնությամբ զենք է ձեռք բերում։ Պարտիայի հանձնարարությամբ նա լինում է Շվեյցարիայում, Ավստրիայում, գալիս է Բեռլին, որտեղ և վերջապես ձերբակալվում է 1907 թվականի նոյեմբերի 9-ին։

Օգտագործելով մեծ քանակությամբ արխիվային նյութեր (որոնց զգալի մասը գերմանական արխիվներից են), Լ. Շահումյանին հաջողվել է մանրամասնորեն ցույց տալ Կամոյի ձերբակալության հանգամանքները, նրա հերոսական վարքագիծը գերմանական բանտում և հոգեբուժական հիվանդանոցներում, նրա ազատության համար մղված պայքարում Վ. Ի. Լենինի և Կ. Լիբկնեխտի ակտիվ մասնակցու-



* Л. С. Шаумян — „Камо. Жизнь и деятельность профессионального революционера С. А. Тер-Петросяна", Москва, 1959 г., 03 стр.

թյունը, ինչպես նաև Ռուսաստանի, Գերմանիայի և այլ եվրոպական երկրների ոստիկանության և դատական օրգանների գործադրած մեծ ջանքերը, որոնց նպատակն էր կոտրել Կամոյի երկաթյա կամքը և ինչ գնով ուզում է լինի դատապարտել նրան մահվան։

Կոմունիստական պարտիայի պատմությունն ուսումնասիրողների համար չափազանց հետաքրքրական կլինի ծանոթանալ այն պայմաններին, որոնց մեջ աշխատել են արտասահմանում պարտիայի ականավոր գործիչները։ Լինելով «ազատ», նրանք միշտ զգուշացել են ոստիկանության գործակալների ու պրովոկատորների հետապնդումներից։ Կամոյի մասին եղած գրագրությունը որոշ պատկերացում է տալիս տվյալ պայմաններում կատարվող աշխատանքի բարդությունների մասին։ Կամոն գալով Բեռլին, ստիպված է լինում կապվել Ժիտոմիրսկու հետ, որը, ինչպես հետագայում պարզվեց, պրովոկատոր էր և կապված սկզբում գերմանական ոստիկանության հետ (Բեռլինի համալսարանում սովորելիս), իսկ 1902 թվականից ծառայում էր ցարական գաղտնի ոստիկանության Բեռլինի գործակալության պետ Ա. Գարտինգին։ Վերջինիս գրագրությունը Ռուսաստանի ոստիկանական զանազան գործիչների և օրգանների հետ՝ բացում է շատ դեպքերի վարագույրը։ Այդ գրագրությունը ցույց է տալիս, թե ինչպես Կամոյի կողմից բռնագրավված փողի 500 ռուբլիանոց դրամանիշների մանրելը, որոնց համարները հայտնված էին եվրոպական բոլոր երկրների ոստիկանություններին, առիթ եղավ ձերբակալելու Մ. Լիտվինովին և Ց. Յամպոլսկայային՝ Փարիզում, Ն. Սեմաշկոյին՝ Ժնևում, պարտիական աշխատողներ Ս. Ռավիչին, Տ. Բաղդասարյանին, Մ. Խոջամիրյանին՝ Մյունխենում, ուրիշներին Ստոկհոլմում և այլն։ Ի վերջո ձերբակալում են Կամոյին։ Այս բոլորը Յա. Ժիտոմիրսկու սև գործն է։

Լարված ուշադրությամբ են կարդացվում Կամոյի պայքարին ու կրած տանջանքներին նվիրված էջերը։ Ի տարբերություն Կամոյի մասին եղած այլ աշխատությունների, Լ. Շահումյանի գրքում այդ մասին խոսվում է հանգիստ տոնով, առանց ավելորդ հուզմունքի, զսպված։ Մյուս կողմից հեղինակին հաջողվել է ակնառու կերպով տալ Կամոյի պայքարը, նրա ապրումներն ու տանջանքները և ապա նրա ազատության համար տարված մեծ աշխատանքը գերմանական սոցիալ-դեմոկրատ, Կ. Լիբկնեխտի ընկեր իրավաբան Օսկար Կոնի ակտիվ մասնակցությամբ։

Ինչպես ցույց է տրված գրքում, որպեսզի կատարեն ցարական կառավարության պահանջը, ոստիկանական և դատական օրգանները Եվրոպայի տարբեր երկրներում գործադրում էին ամեն ջանք՝ ներկայացնելու փողի բռնագրավումը որպես քրեական հանցագործություն։ Իսկ Կամոյի ամբողջ պաշտպանությունը գնում էր այն նշանաբանի տակ, որ այդ գործը քաղաքական ակտ է, իսկ քաղաքական գործերով մեղադրվողի դատը, միջազգային իրավունքով, մի երկրից մյուսին չէր կարելի հանձնել։ Սակայն գերմանական «դեմոկրատական» կառավարությունը, Կամոյին երկար տանջելուց հետո, գաղտնի կերպով նրան հանձնեց ցարական ոստիկանությանը։

Կամոն շարունակում է իր պայքարը նաև Թիֆլիսում։ Բայց և ցարական կառավարությունը ամեն միջոց գործադրում է նրան դատապարտելու։ Կամոյի գործերով հետաքրքրվում են ոչ միայն Վորոնցով-Դաշկովն ու Ստոլիպինը, այլ նաև անձամբ Նիկոլայ II-ը, որոնք ջանում էին անաղմուկ ոչնչացնել Կամոյին։

Դեմոկրատական հասարակական կարծիքը ծառանում է այդ փորձերի դեմ, որի մասին վկայում է գրքում լայնորեն օգտագործված ռուսական և արտասահմանյան մամուլը։

Միաժամանակ գրքում ցույց է տրված պարտիական կազմակերպությունների և անձամբ իր՝ Կամոյի ջանքերը ազատվելու համար, որ ի վերջո պսակվում են փայլուն հաջողությամբ։ Աշխատության այդ էջերն ընթերցելիս, չի ստացվում այն տպավորությունը, որ Կամոն առանց դժվարության խաբում է բժիշկներին, ցարական չինովնիկներին և փախչում, ինչպես արկածախնդրական կինոնկարում։ Գրքում ամենայն մանրամասնությամբ նկարագրված են ամբողջ նախապատրաստական աշխատանքը, Կամոյի ապրումները, գործի բոլոր դժվարությունները, որոնք հաղթահարվել են կենաց և մահու պայքարով։

Կամոն նորից ազատության մեջ է։ Ամբողջ դեմոկրատական հասարակական կարծիքը ողջունում է նրան։ Արտասահմանում գրկաբաց ընդունում են նրան Լենինն ու Կրուպսկայան, պարտիական նրա ընկերները։

Մեր կարծիքով նոր և հետաքրքրական են այն էջերը, որոնք նվիրված են Թուրքիայում Կամոյի գտնվելուն, ուր նա գնացել էր Թուրքիայում ու Բալկաններում ռևոլյուցիոն գրականության և զենքի փոխադրման նոր կետեր ստեղծելու, զենք գնելու նպատակով։ Ունենալով համապատասխան հանձնարարություն, նա տեսակցում է «Երիտասարդ թուրքերի» կազմակերպության առանձին ղեկավարների հետ, այցելում մի թուրք զինվորականի և այլն, բայց նրանցից ոչ մի օգնություն չի ստանում։ Իսկ երբ որոշ ժամանակից հետո Կամոն կրկին լինում է Պոլսում և հանգամանքների բերմամբ ընկնում է ոստիկանության ձեռքը, նա ներկայանում է որպես վրացական ֆեդերալիստ։ Նրան հաջողվում է համոզել, որ եկել է Թուրքիա կապեր հաստատելու ղեկավարող պարտիայի՝ «Երիտասարդ թուրքերի» հետ և իր «կազմակերպության» անունից խոստանում է օգնել նրանց Ռուսաստանի հետ պատերազմելու դեպքում։ Վերաբերմունքն անմիջապես փոխվում է և նույնիսկ նա հրավիրվում է ներքին գործոց մինիստրի մոտ, որը նրան ասում է. «Դուք կարող եք հետ վերադառնալ և փոխադրել ինչ ցանկանում եք, միայն զգուշորեն... Եթե դուք և ձեր կազմակերպությունը իրեն դրսևորի որևէ բանով, ապա մենք գաղտնի կերպով ցույց կտանք բազմակողմանի օգնություն, ինչի կարիքը որ դուք կզգաք» (էջ 184)։

Այս էպիզոդը շատ բնորոշ է։ Իրենց «ռևոլյուցիոներ» համարած, բայց սև գործերի մեջ Աբդուլ Համիդին էլ գերազանցած «երիտասարդ թուրքերը» կբանտարկեին Կամոյին, եթե նա ներկայանար որպես ռևոլյուցիոներ, բայց խոստանում են ընդառաջել և օժանդակել, եթե նա ծառայի իրենց ավանտյուրիստական գործերին։

Տալով ռևոլյուցիոն մեծ գործչի վառ պատկերը, Լ. Շահումյանը միևնույն ժամանակ ցույց է տվել Կամոյի ապրումները, նրա առանձին երերումները։ Այսպես, երբ նա 1912 թվականին վերադառնում է Կովկաս, նորից մտածում է կազմակերպել մարտական ջոկատներ, ձեռնարկել նոր բռնագրավումներ և այլն։ Պայքարի այս ձևը ռևոլյուցիոն մասսայական շարժման վերելքի պայմաններում միայն վնաս կբերեր։ Դրա համար պարտիական կազմակերպությունները և առանձին ընկերներ նրան արգելում են, խորհուրդ չեն տալիս դիմել պայքարի այդ ձևին։ Դրա հետ չէր կարողանում համակերպվել Կամոն։ Նա 1912 թվականի սեպտեմբերին բռնագրավման նոր ու անհաջող փորձ է կատարում և արժանանում իր ընկերների հանդիմանությանը։ Հնարավորություն չունենալով սովորելու ոչ ազատության մեջ, ոչ բանտում, Կամոն տեսական որոշ հարցերում չուներ հստակ պատկերացում և երբեմն թույլ էր տալիս սխալներ։ Սակայն այս փոքրիկ սխալները և սայթաքումները բոլորովին չեն խանգարել Կամոյին գերազանց կերպով կատարելու պարտիայի բոլոր հանձնարարությունները։ Պրոլետարական ռևոլյուցիոների նրա ոգին միշտ օգնել է նրան՝ հասկանալու և ճիշտ կողմնորոշվելու շրջադարձային իրադարձությունների ժամանակ։ Գրքում բերված է քույրերին ուղղված նրա մի նամակը, որտեղ նա գնահատելով փետրվարյան ռևոլյուցիան, գրում է. «Հին հասարակարգը փոխարինվեց նորով, բայց ես ոչ մի լավ բան չեմ սպասում, քանի որ այն մարդիկ, որոնք իրենց ձեռքը վերցրին [իշխանությունը], ինչպես ինձ թվում է, անընդունակ են ինչ որ գործնական բան ձեռնարկել» (էջ 207 — 208)։

Այնուհետև, երբ 1917 թվականի աշնանը Անդրկովկասի պարտիական կազմակերկերպությունները ցանկացան ստանալ Սովետական Ռուսաստանի օգնությունը, Կամոն եղավ այն մարդը, որ Ստ. Շահումյանի առաջարկությամբ ուղարկվեց Վ. Ի. Լենինի մոտ և այնտեղից վերադառնալով բերեց Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի որոշումը Կովկասին օգնելու մասին, օգնության համար հատկացված գումարը և Ստ. Շահումյանին Կովկասի ժամանակավոր արտակարգ կոմիսար նշանակելու մասին Վ. Ի. Լենինի ստորագրած վկայականը։

Կամոն հասկացավ այդ տարիներին ռազմական գործին ծառայելու անհրաժեշտությունը և սրբությամբ կատարեց Վ. Ի. Լենինի հանձնարարությունը՝ հատուկ ջոկատներ կազմակերպելու և թշնամու թիկունքում գործելու համար։ Կամոյի գործունեության կարևոր մոմենտներից մեկն է հանդիսանում Ադրբեջանում սովետական կարգերի հաստատման համար նրա կատարած ղեկավար աշխատանքը, որի մասին որոշակի գրում է իր գրքում Լ. Շահումյանը։

Բավական ջերմ են գրված այն էջերը, ուր խոսվում է Իլյիչի կողմից Կամոյին ցուցաբերած վերաբերմունքի, Կ. Լիբկնեխտի, Դ. Բլագոևի և բանվորական շարժման այլ ղեկավարների հետ Կամոյի ունեցած հանդիպումների մասին։ Իսկ երբ կարդում ենք Կամոյի մահվան և թաղման նկարագրությունը, նրա ընկերների ճառերը սգո պահին, հեղինակի հետ հուզվում ենք ամբողջ հոգով։ .

Կամոյի մասին Լ. Շահումյանի այս հետաքրքրական և հաջողված աշխատությունը պետք է լրացվի հետագայում, ըստ մեզ, դեռ լրիվ չլուսաբանված հետևյալ հարցերով. քիչ ավելի մանրամասն տալ Կամոյի պայքարը դաշնակցության դեմ, սուլթանիզմի դեմ արևմտահայերի ազատագրական պայքարի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքը, ավելի կոնկրետ (հնարավորության սահմաններում)՝ նրա կապը Հայաստանի պարտիական կազմակերպությունների ու գործիչների հետ։ Անհրաժեշտ կլինի նաև բեռնաթափել աշխատությունը առանձին դեպքերի մանրամասներից, ինչպես, օրինակ, ֆրանսիական ոստիկանության առանձին գործակալների անունների թվարկումից (էջ 108), երբեմն էլ շատ երկար մեջբերումներից։ Բացի դրանից, հանրահայտ է, որ հայերեն Սիմոն

ընկեր Խրուշչովը ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, որ անհրաժեշտ է «պարզ և մատչելի ձևով բացատրել, թե ինչ է կոմունիզմը, ինչ մեծ բարիքներ է բերում մարդկանց»։

Անկասկած լավ են Հայկական ՍՍՌ կոմունալ-բնակարանային շինարարությանը նվիրված Ն. Թուխիկյանի և գյուղատնտեսության զարգացման հարցերին նվիրված Հ. Հովակիմյանի, Լ. Բիշարյանի և Գ. Բուղայանի «Օգնություն դասախոսին» սերիայով լույս տեսած փոքրիկ գրքույկները, ուր թեզիսների ձևով շարադրված են դասախոսության հիմնական հարցերը։

Մի քանի խոսք թեմատիկայի մասին։ Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակչության գծով մինչև օրս լույս չեն տեսել առանձին գրքույկներ ՍՄԿՊ XXI համագումարում առաջ քաշված մի շարք տեսական պրոբլեմների ու դրույթների մասին։ Ցանկալի է տեսնել սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության և յոթնամյա պլանի կենսագործման բնագավառում սովետական եղբայրական ժողովուրդների ձեռք բերած նվաճումներին նվիրված գրականություն։ Հրատարակչությունը մոռացության է տվել ժամանակակից բուրժուական իդեոլոգիայի հետևողական, մարտական քննադատությունը։ Այս բնագավառում Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակչությունը, ինչպես և մյուս հրատարակչությունները լուրջ անելիքներ ունեն։

Գրախոսվող առանձին գրքույկներում տեղ են գտել անհաջող, վիճելի, երբեմն ուղղակի սխալ ձևակերպումներ, վրիպակներ։ Գրքույկների հեղինակներից ոմանք, ընկնելով մատչելիության հետևից, անտեսել են նրանց ներկայացվող գիտական պահանջները։ Այսպես, օրինակ, եթե «Յոթնամյակը խոշոր քայլ է ՍՍՌՄ տեխնիկական պրոգրեսում» գրքույկի հեղինակը կարողացել է մատչելիությունը զուգակցել գիտականության հետ, ապա այդ լրիվ չի հաջողվել Ստ. Ստեփանյանին, Ստ. Քոչարյանին և Ս. Պետրոսյանին, Ս. Կոստանյանին։ Նշված հեղինակները առանձին հարցերում տուրք են տվել հեշտացված մատուցման։

Փաստական նյութն այն ատաղձն է, որի վրա խարսխվում է այս կամ այն ընդհանրացումը, թեորիական հետևությունը։ Այս տեսակետից էլ գրքույկներում ամեն ինչ հաջող չէ։ Առանձին հեղինակներ փոխանակ խորանալու վիճակագրական տվյալների մեջ, գտնելու էականը, բնորոշը, կաշչում են առաջին իսկ պատահած թվից։ Թվական տվյալը առանձին վերցրած քիչ բան է ասում շարքային ընթերցողին. որպեսզի թվական տվյալները մատչելի լինեն ընթերցողին, դրանք պետք է բացատրել, բերել ավելի ակնառու իլյուստրացիաներ, բայց երբեք չհասարակացնել, ինչպես արված է առանձին գրքույկներում։

Հրատարակված գրքույկներից մի քանիսը խճողված են վիճակագրական տվյալներով, և, քանի որ այդ տվյալները միևնույնն են, ապա դրանք մի քանի գրքույկներում կրկնվում են։ Եթե այդ վիճակագրական տվյալներին ավելացնենք տեղի-անտեղի բերված ցիտատները, ապա կտեսնենք, որ գրքույկը զրկվում է անհատական կնիքից և նպատակասլացությունից։

Մի քանի խոսք գրքույկների վերնագրերի մասին։ Չգիտենք ինչու Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակչության աշխատակիցների մոտ այն կարծիքն է ստեղծվել, որ ՍՍՌՄ յոթնամյակի խնդիրները պրոպագանդող գրքույկների վերնագրերը անպայման պետք է նույնատիպ լինեն։ Այդ շաբլոնից պետք է խուսափել և ավելի դիպուկ վերնագրեր ընտրել հրատարակվող գրքույկների համար։

Բոլոր հնարավորությունները կան, որպեսզի Հայկական ՍՍՌ Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակչությունը կարճ ժամանակամիջոցում հաղթահարի իր աշխատանքներում եղած թերությունները, զարգացնի արդեն ձեռք բերած հաջողությունները և է՛լ ավելի խոր ու բազմակողմանիորեն պրոպագանդի կոմունիզմը, կոմունիստական աշխատանքների հոյակապ պլանը։

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ



## ՀԱՍՈՒՆԱՑԱԾ ՊԱՀԱՆՋ

Կոմունիզմ կառուցող մարդը պետք է լինի բազմակողմանիորեն զարգացած ու կուլտուրական, տիրապետի արդի գիտության ու կուլտուրայի նվաճումներին։ Սովետական հասարակության անդամների կենսամակարդակի բարձրացման հետ մեկտեղ աճում են և նրանց հոգևոր պահանջմունքները։ Հիրավի, մեծ է արվեստի ու գրականության դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Այդ մասին չէ, որ ուզում ենք գրել։

Մեր ռեսպուբլիկայում, մասնավորապես Երևանում, ապրում ու ստեղծագործում են արվեստի շատ վարպետներ, գոյություն ունեն արվեստի ու կուլտուրայի բազմաթիվ օջախներ։ Ով երբևէ եղել է Երևանի պատկերասրահում ու թանգարաններում, դիտել է Գ. Սունդուկյանի անվան դրամատիկական և Օպերայի ու բալետի թատրոնների ներկայացումները, լսել երգիչների համերգները, մեծ բավականություն է ստացել այդ ամենից։ Սակայն այդ ամենը միայն մայրաքաղաքում։ Ցավոք սրտի մեր երգիչներն ու կոմպոզիտորները քիչ են հանդես գալիս կոլտնտեսային դաշտերի աշխատավորների առաջ։ Որքա՜ն լավ կլիներ, որ նրանք հաճախակի լինեին գյուղական, մասնավորապես լեռնային շրջաններում, հանդես գային ինչպես համերգներով, այնպես էլ արվեստի հարցերին վերաբերող զեկուցումներով։ Դրանց պահանջը մեծ է։ Սևանի ավազանում ձմռանը լինում է խստաշունչ, գարնանն ու աշնանը՝ անձրևային, իսկ ամռանը՝ զով եղանակ։ Ահա ամռան ամիսներին է միայն, որ մենք կարող ենք տեսնել Հայֆիլհարմոնիայի առանձին երգչախմբերին։ Ավելին, գյուղատնտեսական աշխատանքների այդ եռուն շրջանում, երբ աշխատավորների մեծ մասը գտնվում է հանդերում ու յայլաղներում, երգչախմբերը գերադասում են համերգներ տալ փակ շենքերում և ոչ թե բացօթյա, այնտեղ, ուր անմիջականորեն ստեղծվում են նյութական բարիքները։

Խրախուսելի է Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր Ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կոմիտեի աշխատանքը երաժշտական կուլտուրայի պրոպագանդման ուղղությամբ։ Հետաքրքրական են ունկնդրվում երաժշտության տարբեր ժանրերին ու երաժշտական գործիքներին նվիրված ռադիոհաղորդումները։ Բայց դա քիչ է։ Մեր կարծիքով, լավ կլինի, եթե գյուղ եկած արվեստագետները, ինչպես և «Սովետական արվեստ», «Հայաստանի կոլտնտեսական», «Հայաստանի աշխատավորուհի» ամսագրերն ու թերթերը հանրամատչելի փոքրիկ զրույցներ կազմակերպեն երաժշտության տարբեր հարցերի մասին։ Երգարվեստի պրոպագանդան ավելի արդյունավետ կլինի, եթե աշխատավորները, մեր դպրոցականները կարողանան լավ հասկանալ, ըմբռնել երաժշտությունը։ Շատ հաճախ ունկնդրում ենք Ռախմանինովի ու Չայկովսկու սիմֆոնիաները, Սկրյաբինի ու Բեթհովենի սոնատները,

*Մոցարտի, Ռոսսինիի, Շուբերտի և շատ ուրիշների սերենադաները, Բախի սյուիտաները: Իսկ ի՞նչ են բովանդակում սիմֆոնիա, կոնցերտ, սյուիտա, սերենադա և նման հասկացությունները: Մեր ամսագրերն ու թերթերը պետք է սիստեմատիկաբար իրենց էջերում պարզաբանեն երաժշտության ժանրերը, տերմինները, պատմեն նշանավոր արվեստագետների կյանքի ու ստեղծագործության մասին:*

*Մեծ է նաև կերպարվեստի ներգործությունը մարդու էսթետիկական դաստիարակության ու ճաշակի զարգացման գործում: Բայց մեր նկարիչների լավագույն գործերը կարելի է տեսնել միայն մայրաքաղաքի թանգարաններում ու պատկերասրահներում: Լավ չէ՞ր լինի շրջիկ ցուցահանդեսների միջոցով գյուղական աշխատավորներին ծանոթացնել մեր նկարիչների ստեղծագործություններին: Ռեսպուբլիկայում հրատարակվող ամսագրերում հանդիպում ենք շատ նկարիչների ու քանդակագործների ստեղծագործություններին: Լավ կլիներ, եթե տպագրվող նկարների ու քանդակների հետ մեկտեղ տրվեին որոշ տեղեկություններ այդ գործերի ու նրանց հեղինակների մասին:*

*Կոլտնտեսային աշխատավորները ցանկանում են ձեռք բերել կերպարվեստի լավագույն գործերը, դրանցով զարդարել իրենց բնակարանները: Որտեղի՞ց կարելի է գտնել դրանք: Դժբախտաբար նկարներ չեն վաճառվում շրջանային ու գյուղական խանութներում:*

*Արդյոք ժամանակը չէ՞, որ մայրաքաղաքում ապրող արվեստագետներն ավելի հաճախ լինեն հեռավոր շրջաններում, հանդես գան գյուղական աշխատավորների առաջ, միաժամանակ օգնելով կուլտուրայի տներին, ակումբներին ու դպրոցներին՝ ավելի լավ կազմակերպելու գեղարվեստական ինքնագործունեությունը և աշխատավորների կուլտուրական սպասարկումը:*

Հռանուշ Մելքոնյան
*Մարտունու շրջանի Ղարանլուղ գյուղի ուսուցչուհի*

Գարսևան Թովմասյան
*Տերիտորիալ պարտկազմակերպության քարտուղար*

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес Редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



*ՎՖ 07831* *Պատվեր 1999* *Տիրաժ 8550*

Տպ. 7 մամուլ, մամուլում 68, 840 նիշ: *Ստորագրված է տպագրության 23/X 1959 թ.:*

Խմբագրությանը ուղարկված ձեռագրերը հեղինակին չեն վերադարձվում:

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխգրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:*

Գինը 2 ռ. 50 կ.

# ԲԱՑՎԱԾ Է

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

## ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

# 1960 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿՊ և ՀԿՊ պատմության, ռևոլյուցիոն շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքին վերաբերող հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է ռեսպուբլիկայում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, արտասահմանյան կոմունիստական շարժման մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակի առթիվ տպագրելու է հոդվածներ, հիշողություններ, ակնարկներ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Տարեկան — 30 ռուբլի

Կես տարին — 15 ռուբլի

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, ՆՏ կայաններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»